## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Պարտիական կյանքի նորմերի և պարտիական ղեկավարության սկզբունքների մասին. Պետքաղհրատ, 1963։

*Վ. Ի. Լենինի այս ժողովածուի մեջ զետեղված են հատվածներ առանձին աշխատություններից, հոդվածներ, նամակներ և այլ փաստաթղթեր, որոնք հիմնավորում են կոմունիստական պարտիայի կյանքի և գործունեության սկզբունքները։ Դրանք արտացոլում են ռևոլյուցիոն պայքարի և սոցիալիստական շինարարության տարբեր էտապներում պարտիական կյանքի նորմերի և պարտիական ղեկավարության սկզբունքների լենինյան ուսմունքի էությունը։*

*Գիրքը հանձնարարելի է պարտիական և սովետական ակտիվին։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Կոմունիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում և գյուղատնտեսության զարգացումը, հ. 4-րդ։ Պետքաղհրատ, Մ. 1963։

*Գիրքն ընդգրկում է 1959 թ. մայիս—1961 թ. փետրվարն ընկած ժամանակաշրջանում Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցումները, նրա ճառերը, ելույթները, զրույցները և զանազան փաստաթղթեր ու նյութեր, որոնք վերաբերվում են սոցիալիստական գյուղատնտեսության հետագա արագ զարգացմանը։*

Ա. Ս. ԿԱԽՈՅԱՆ—Հոդվածներ և հուշեր *(1901—1936), Ե. Հայպետհրատ, 1963։*

*Հին ռևոլյուցիոներ բանվոր Ա. Կախոյանի այս ժողովածուում զետեղված հոդվածներում ու հուշերում պատմվում է Անդրկովկասի խոշոր քաղաքներում (Թիֆլիս, Բաքու, Բաթումի, Երևան) և, հատկապես, Լոռում, Բորչալուում տեղի ունեցած ռևոլյուցիոն շարժումների, բանվորական կազմակերպությունների ստեղծման, բոլշևիկյան բջիջներ կազմակերպելու, բուրժուական-ազգայնական պարտիաների դեմ պայքարելու, սովետական իշխանության հաղթանակի մասին։ Նա պատմում է ՌՍԴԲՊ(բ)Կ V համագումարում Վ. Ի. Լենինի հետ հանդիպելու, ինչպես և ականավոր մարքսիստ-լենինյանների, լեգենդար հերոս Կամոյի և շատ այլ ռևոլյուցիոներների գործունեության մասին։*

Ն. ԻՐԻԲԱՋԱԿՈՎ—Մարքսիզմի ժամանակակից քննադատները, *Մ. 1962։*

*Բուլղարացի մարքսիստ փիլիսոփա, ակտիվ պարտիական գործիչ Ն. Իրիբաջակովի այդ գիրքը, որը թարգմանվել է ռուսերեն, նշանակալի երևույթ է մարքսիստական գրականության մեջ։ Գրքում խիստ քննադատության են ենթարկվում բուրժուական, սոցիալ-դեմոկրատական փիլիսոփայական, սոցիոլոգիական տեսությունները։ Հեղինակը ՍՄԿՊ նոր ծրագրի, կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1957 թ. և 1960 թ. խորհրդակցությունների հայտարարությունների լույսի տակ մերկացնում է սոցիալիստական ինտերնացիոնալի ռևիզիոնիստական տեսությունը։ Գիրքը մերկացնում է ինչպես ռևիզիոնիստներին, այնպես էլ դոգմատիկներին։*

Գ. Ի. ՄՈՐՈԶ—Միավորված ազգերի կազմակերպություն։ *(Միջազգային-իրավական հիմնական տեսակետները, կառուցվածքը և գործունեությունը)։ Մ. 1963։*

*Հեղինակը բազմաքանակ փաստաթղթերի, նյութերի և գրականության ուսումնասիրման հիման վրա շարադրում է Միավորված ազգերի կազմակերպության ստեղծման, կառուցվածքի, միջազգային-իրավական հարցերի և անցած շրջանի գործունեության մասին։ Հեղինակը պատմում է, թե ինչպես Սովետական Միությունը համաշխարհային երկրորդ պատերազմի պայմաններում, համառ պայքար էր մղում խաղաղության, անվտանգության և պետությունների միջև լայն հարաբերություններ պահպանելու միջազգային գործուն կազմակերպություն ստեղծելու համար։ Գրքում զգալի տեղ է հատկացված բուրժուական ռեակցիոն տեսաբանների քննադատությանը, որոնք կեղծում են ՄԱԿ-ի կազմակերպման պատմությունը, ՄԱԿ-ի իրավունքները, կանոնադրությունը և այլն։*

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 6
ՀՈՒՆԻՍ
1963 Թ.



★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
42-ՐԴ
ՏԱՐԻ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ









# ՎՃՌԱԿԱՆՈՐԵՆ ԲԱՐԵԼԱՎԵԼ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՌԵՎՏՈՒՐԸ

Սովետական Միության կոմունիստական պարտիան իր առջև վեհ նպատակ է դրել՝ առաջիկա քսանամյակում մեր երկրում ստեղծել նյութական ու կուլտուրական բարիքների այնպիսի առատություն, որն ապահովի սովետական մարդկանց առավել բարձր, ամեն մի կապիտալիստական երկրին գերազանցող կենսամակարդակ:

Ժողովրդի հարաճուն պահանջմունքները բավարարելու գործում վճռական դեր ունի սովետական առևտուրը: ՍՄԿՊ ծրագրում նշված է, որ առաջիկայում «Երկրի բոլոր շրջաններում ու բնակավայրերում կկարգավորվի կուլտուրական առևտուրը, լայն կիրառում կգտնեն բնակչության սպասարկման առաջադիմական ձևերը: Կընդլայնվի առևտրի նյութատեխնիկական բազան՝ խանութների, պահեստների, սառնարանների և բանջարեղենի շտեմարանների ցանցը»: Շատ բան կարվի հասարակական սննդի զարգացման բնագավառում, որպեսզի մոտակա տարիներին բնակչության բոլոր խավերը կարողանան լայնորեն օգտվել լավ և բարձրորակ սննդից:

Յոթնամյակի կատարման համար մղվող պայքարի ճակատից ամեն օր ուրախալի լուրեր են ստացվում ժողովրդական տնտեսության զարգացման առաջադրանքները հաջողությամբ կատարելու մասին: 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքի թողարկումը ընդհանուր առմամբ ավելացել է 9,5, այդ թվում՝ լայն սպառման ապրանքների արտադրությունը՝ 7 տոկոսով: Անցյալ տարի մոտավորապես ինը միլիարդ ռուբլով ավելացավ ՍՍՌ Միության ազգային եկամուտը: Միայն մեկ տարում նոր բնակարաններ ստացան և իրենց բնակարանային պայմանները բարելավեցին 12 միլիոն մարդ:

Պարտիան և կառավարությունը խոշոր միջոցառումներ իրականացրին գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ուղղությամբ: 1962 թվականին, չնայած երկրի մի շարք շրջանների կլիմայական անբարենպաստ պայմաններին, արտադրվեց ինը միլիարդ փութ հացահատիկ: Այդ և մյուս սխրանքները ապահովում են *«Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության»* պարտիայի վեհ նպատակի իրականացումը:

Արդյունաբերական ապրանքների և գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացումը պայմաններ ստեղծեց աշխատավորների նյութական բարեկեցության հետագա բարձրացման համար: Դրա վառ ապացույցներից են բնակչության գնողունակության աճն ու սովետական առևտրի ծավալումը: Բավական է ասել, որ 1962 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, երկրում մանրածախ ապրանքաշրջանառության ծավալը մեծացավ 6,1 միլիարդ ռուբլով: Զգալի չափով ավելացավ գործվածքների, հագուստեղենի, կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների վաճառքը:

Հայաստանի կոմպարտիայի կենտկոմի՝ վերջերս տեղի ունեցած պլենումը,

քննարկելով ռեսպուբլիկայի առևտրական կազմակերպությունների կադրերի ընտ-
րության, տեղաբաշխման ու դաստիարակության վիճակը, նշեց, որ մեր ռես-
պուբլիկայում ևս որոշակի հաջողություններ են ձեռք բերվել առևտրի կազմակեր-
պումը բարելավելու և բնակչությանը ժողովրդական սպառման անհրաժեշտ ապ-
րանքներով ապահովելու գործում:

Վերջին ժամանակներս որոշ չափով բարելավվել է նաև առևտրի աշխատող-
ների որակական կազմը, բարձրացել նրանց կրթական մակարդակը, առևտրի և հա-
սարակական սննդի ձեռնարկություններում ավելացել է կոմերիտականների ու երի-
տասարդների թիվը: Ռեսպուբլիկայի առևտրական ցանցում աշխատում են ավելի
քան 22 հազար մարդ, այդ թվում մանրածախ առևտրի ցանցում՝ 15 հազար:
Առևտրի աշխատողների ընդհանուր թվից առևտրի մինիստրության և Հայկոոպի
սիստեմներում բարձրագույն կրթություն ունեն 1054, միջնակարգ՝ 7635 և միջնա-
կարգ մասնագիտական կրթություն՝ 1.808 հոգի: Որոշակի գործ է կատարվում
առևտրի աշխատողներ պատրաստելու, նրանց որակավորումը բարձրացնելու,
գնորդների սպասարկումը բարելավելու և առևտրի կուլտուրան բարձրացնելու ուղ-
ղությամբ: Ներկայումս առևտրի ցանցում քիչ չեն այնպիսիները, որոնք սիրում են
իրենց աշխատանքը, բնակչությանն սպասարկում են ուշադիր, գործիմացությամբ,
միշտ պատրաստ են բարեկամական խորհրդով օգնելու գնորդին: Նրանց աշխա-
տանքից գոհ են սովետական մարդիկ՝ կոմունիստական հասարակարգ կառուցող-
ները:

ՀԿՊ Կենտկոմի պլենումն իր որոշման մեջ ընդգծեց, որ, չնայած ձեռք բերված
նշանակալի հաջողություններին, այնուամենայնիվ, ռեսպուբլիկայի առևտրական
կազմակերպությունների աշխատանքի մակարդակը դեռևս ետ է մնում բնակչու-
թյան աճած պահանջներից: Երբեմն խանութների, ճաշարանների և առևտրական
միավորումների աշխատողներից ոմանք թույլ են տալիս չարաշահումներ, գողանում
են ժողովրդական բարիքը, խաբում գնորդներին, թերակշռումներով ու թերաչա-
փումներով արհեստականորեն բարձրացնում գները, որով վարկաբեկում են սո-
վետական առևտուրը, առաջ բերում աշխատավորների արդարացի վրդովմունքը:

Առևտրի շատ ձեռնարկություններ չեն կատարում ապրանքաշրջանառության
պլանները: Այդ հետևանք է այն բանի, որ առևտրական կազմակերպությունների
ղեկավարները վատ են ուսումնասիրում գնորդների պահանջարկը, թույլ են տա-
լիս խափանումներ բնակչությանն առաջին անհրաժեշտության ապրանքներով
ապահովելու գործում, հաշտվում են չարաշահումների ու առևտրի կանոնները խախ-
տելու բազմաթիվ փաստերի հետ:

Առևտրի մինիստրությունն անբավարար է զբաղվում հասարակական սննդի
կարգացման գործով, որի հետևանքով հասարակական սննդի ինը առևտրական
կազմակերպություններից երեքը (ճանապարհային ռեստորանների տրեստ, Հայ-
պետառ, Քաջարանառ) մոտ 600 հազար ռուբլով թերակատարել են իրենց պլա-
նը: Հասարակական սննդի առևտրական կազմակերպություններում տիրող այս վի-
ճակի պատճառը կերակուրների միատեսակությունն է՝ դրանց բազմազանության
բացակայությունը, կիսաֆաբրիկատների պատրաստման և վաճառքի վատ կազ-
մակերպումը և հուճախորդների անբավարար սպասարկումը:

Առևտրի կազմակերպման վիճակը բարվոք չէ նաև Հայկոոպի սիստեմում. 37
շրջսպառկոոպմիություններից ու կազմակերպություններից ութ առևտրական կազ-
մակերպություններ 2.148 հազար ռուբլով թերակատարել են պլանը:

Առևտրի մինիստրության և Հայկոոպի մեղքով անցյալ տարի ռեսպուբլիկա-



յում կարտոֆիլի մթերման և իրացման պլանը թերակատարվեց 6,9 հազար տոն-
նայով, կամ 50 տոկոսով, իսկ պտուղներինը՝ 1,1 հազար տոննայով, կամ 31 տոկո-
սով: Այդ հետևանք է այն բանի, որ վատ են կազմակերպված բանջարեղենի ու
մրգի արտադրությունն ու պետական առևտուրը և, բնակչությունն ստիպված է այդ
մթերքների մեծ մասը գնել շուկայում, հաճախ սպեկուլյանտներից և վերավաճա-
ռողներից: Միանգամայն աններելի է, երբ Երպտուղբանջարառը տարիներ շարու-
նակ չի կատարում գյուղատնտեսական մթերքների մթերումների, պահպանման և
մեծածախ իրացման պլանները, որով խախտվում է գյուղատնտեսական մթերքների
անխափան մատակարարումը բնակչությանը: Ապրանքների կորուստների և փչա-
նալու հետևանքով այդ կազմակերպության օբյեկտները անցած չորս տարում պե-
տությանը պատճառել են 1.229 հազար ռուբլու վնաս:

Որոշ ղեկավար աշխատողներ վատ են կազմակերպում առևտուրը և բնակ-
չության սպասարկումը, թույլ են տալիս անպատասխանատվություն, հանդուրժո-
ղաբար են վերաբերվում առևտրի կանոնների խախտումներին, վատնումներին ու
հափշտակումներին:

Պետական միջոցների յուրացման, վատնումների և հափշտակումների բազ-
մաթիվ օրինակներ կարելի է բերել: Միայն 1961 թվականին ռեսպուբլիկայի
առևտրի մինիստրության և սպառկոոպերացիայի սիստեմում հայտաբերվել է վատ-
նումների և պակասորդների 326 դեպք՝ 422,1 հազար ռուբլի գումարով: Պար-
տիական կոմիտեները երբեմն ներողամիտ են լինում աշխատանքում իրենց չար-
դարացնողների նկատմամբ, որոնք շարունակում են մնալ իրենց պաշտոններում
մինչև աշխատանքն ամբողջովին ձախողելը: Առևտրական կազմակերպություննե-
րում փոխանակ աճեցնելու և առաջ քաշելու նոր, երիտասարդ կադրեր, հաճախ
ձախողված աշխատողներին մի տեղից փոխադրում են մյուսը:

Հայաստանի կոմպարտիայի կենտկոմի պլենումը նշեց, որ ռեսպուբլիկայում
առևտրի բնագավառում գոյություն ունեցող արատները հետևանք են այն բանի,
որ պարտիական օրգաններն անհրաժեշտ չափով խստապահանջ չեն առևտրական
ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների նկատմամբ, պատ-
շաճ ուշադրություն չեն հատկացնում չարաշահումների դեմ պայքարելու գործում
պարտիական կազմակերպությունների դերի բարձրացմանը: Առևտրի բնագավառի
աշխատողների գաղափարական-քաղաքական դաստիարակության աշխատանքը
անհրաժեշտ չափով չի կապվում պարտիայի XXII համագումարի որոշումներից և
ՍՄԿՊ ծրագրից բխող կոնկրետ խնդիրների հետ, այն բավարար չափով ուղղված
չէ չարաշահումների ու գռփողականության դեմ: Չարաշահումների դեմ անբավա-
րար պայքար են մղում կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունները:
Առևտրի ասպարեզում աշխատող որոշ կոմունիստներ թույլ են տալիս վատնումներ
ու հափշտակումներ, խաբում են գնորդներին, իսկ հակահասարակական այդ գոր-
ծողությունները հաճախ քննարկման առարկա չեն դառնում պարտիական ժողով-
ներում և պարտիական կոմիտեների բյուրոներում:

Պարտիայի քաղկոմների և շրջկոմների աշխատողները քիչ են լինում առև-
տըրական ձեռնարկություններում ու կազմակերպություններում, անբավարար են
զբաղվում առևտրի հարցերով, հազվադեպ են լսում տնտեսական ղեկավարների
և պարտիական կազմակերպությունների հաշվետվությունները՝ առևտրի վիճակի և
կադրերի հետ կատարվող աշխատանքի մասին:

Մի շարք առևտրական միավորումներում, ճաշարանների տրեստներում և
շրջսպառկոոպմիություններում անբավարար են գործում պարտիական կազմակեր-

պությունները: Պարտիական ժողովներում սակավ են քննարկվում կոլեկտիվների գործունեության հարցերը. պատշաճ բարձրության վրա չեն գտնվում քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Բոլոր կոմունիստները չէ, որ աչքի են ընկնում օրինակելի աշխատանքով, իսկ նրանցից ոմանք էլ թույլ են տալիս սովետական առևտրի կանոնների խախտում:

Պարտիական կազմակերպությունների անբավարար աշխատանքը հետևանք է նաև այն բանի, որ առևտրի բնագավառում աշխատող կոմունիստների մեծամասնությունը գտնվում է առևտրական խոշոր միավորումների պարտկազմակերպությունների մեջ: Այդ այն դեպքում, երբ Երևանում և այլ քաղաքներում կան զգալի քանակությամբ առևտրական ձեռնարկություններ, որտեղ աշխատում են պարտիայի 3—5 և ավելի անդամներ, ուր ինքնուրույն կազմակերպություններ չեն ստեղծված: Այդ պատճառով էլ կոմունիստները զրկված են ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկելու հնարավորությունից:

Այժմ, երբ արտադրանքի որակն առաջնահերթ խնդիր է դարձել, ռեսպուբլիկայի ժողտնտխորհի որոշ ձեռնարկությունների թողարկած ցածրորակ արտադրանքը տագնապ է առաջացնում: Արդյունաբերական ձեռնարկությունների պահեստներում պատրաստի արտադրանքի գերնորմատիվ մնացորդները կազմում են 6,4 միլիոն ռուբլի: Մեծ քանակությամբ պատրաստի արտադրանք իբրև մեռյալ բեռ ընկած է առևտրական ու մատակարարող կազմակերպություններում:

Սպառող կազմակերպությունները արդյունաբերական ձեռնարկությունների պահեստներից հաճախ արտադրանք չեն տանում ոչ թե այն պատճառով, որ այդ ապրանքների պահանջը չունեն, այլ, որովհետև այդ արտադրանքը ցածրորակ է, կոպիտ մշակված, անհրապույր տեսքով ու թանկ: Իսկ մի շարք ձեռնարկությունների ղեկավարներ, համախառն արտադրանքի պլանը կատարելու մարմաջով բռնըված, մոռանում են սպառողի շահերը, չզգալով, որ դրանով մեծ վնաս են հասցընում և՛ ձեռնարկությանը, և՛ պետությանը: Այս հետևանք է նաև մասամբ այն բանի, որ ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության խորհուրդը պատշաճ օպերատիվություն ու հոգատարություն չի ցուցաբերում ժողովրդական սպառման ապրանքների տեսակները բազմացնելու բնագավառում, անբավարար է հաշվի առնում առևտրական կազմակերպությունների պահանջները թողարկվող ապրանքների ասորտիմենտի, դրանց որակը բարձրացնելու և նոր ապրանքների արմատավորման նկատմամբ: Ավելին. մի շարք ապրանքներ, որոնց պահանջն ունի բնակչությունը, ներմուծվում են դրսից, մինչդեռ դրանք կարող են արտադրվել ռեսպուբլիկայում:

Հայաստանի կոմպարտիայի կենտկոմի պլենումը հավանություն տվեց *Հայկական ՍՍՌ առևտրական կազմակերպությունների կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության վիճակի մասին* ՍՄԿՊ Կենտկոմի որոշմանը, ընդգծելով, որ այն մեծ նշանակություն ունի առևտրի ասպարեզում եղած խոշոր թերությունները վերացնելու, առևտրական կադրերի ընտրությունը, տեղաբաշխումն ու դաստիարակությունը բարելավելու, առևտրի բնագավառում վատնումները, հափըշտակումները և մյուս չարաշահումներն արմատախիլ անելու գործում:

ՍՄԿՊ Կենտկոմի որոշումն անթերի կատարելու համար անհրաժեշտ է, որպեսզի քաղաքային, շրջանային և արտադրական պարտիական կոմիտեները, ռեսպուբլիկայի առևտրի մինիստրությունը, Հայկոոպի վարչությունն ու առևտրական ձեռնարկությունները լրջորեն մտահոգվեն կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցով: Այս գործում անհրաժեշտ է առաջնությունը տալ (մանավանդ ղեկավար պաշտոնների համար) մարդկանց քաղաքական ու գործնական



հատկանիշներին, մասնագիտական կրթությանը, ընտրել այնպիսի մարդկանց, ովքեր աշխատանքում ազնիվ են և բնակչության կուլտուրապես սպասարկումը համարում են իրենց նպատակը: ՀԿՊ Կենտկոմի պլենումը պարտավորեցրեց ռեսպուբլիկայի առևտրի մինիստրությանն ու Հայկոոպի վարչությանը՝ մշտական գործող դասընթացների և սեմինարների միջոցով ընդարձակել կադրերի պատրաստման ու վերապատրաստման ցանցը, բարձրացնել մասնագետների որակավորումը: Առևտրի բնագավառի աշխատանքները վճռականորեն բարելավելու համար հարկավոր է այդ գործը վստահել միայն բանիմաց, ազնիվ մարդկանց:

Մեր երկրի տնտեսական ու կուլտուրական բուռն վարգացման համապատասխան բարձրացել է սովետական մարդկանց ճաշակը: Նրանք ցանկանում են խանութներից գնել ճաշակով ու բարձր որակով վանազան տեսակի ապրանքներ, համեղ ու թարմ մթերքներ, հագնել ավելի լավ, ավելի նորաձև ու գեղեցիկ, իրենց բնակարանները կահավորել ժամանակակից կահույքով: Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները պետք է ջանան բավարարել բնակչության աճող պահանջմունքները: Կենտկոմի պլենումը հանձնարարեց ռեսպուբլիկայի պետպլանին և ժողտնտխորհին առաջիկա ամիսներին գործնական միջոցառումներ մշակել՝ ընդարձակելու ժողովրդական լայն սպառման ապրանքների արտադրությունը. պատշաճ ուշադրություն և պատասխանատվություն ցուցաբերել սպառողի նկատմամբ հարգալիր վերաբերվելու գործում:

Կոմունիստական պարտիան մեծ ուշադրություն է նվիրում խոշոր քաղաքների և արդյունաբերական կենտրոնների բնակչությանը թարմ բանջարեղեն ու միրգ մատակարարելու գործին: Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները լայն հնարավորություն ունեն քաղաքային բնակչությանը կանոնավոր կերպով թարմ միրգ ու բանջարեղեն վաճառելու: Գյուղատնտեսական մթերքների արտադրության և մթերումների մինիստրությունը և առևտրական կազմակերպությունները պարտավոր են օրինակելի կազմակերպել մրգի և բանջարեղենի վաճառքը:

Կոմունիզմի կառուցման ներկա շրջանում, երբ հասարակության մեծ մասը ընդգրկված է հանրային արտադրության մեջ, խիստ կարևոր է հասարակական սննդի բարձր կազմակերպումը: Այդ բնագավառի աշխատողների առջև պարտիան կարևորագույն խնդիր է դրել՝ աշխատավորությանը մատուցել համեղ, սննդարար, էժան կերակուրներ, միաժամանակ ծավալել կիսաֆաբրիկատների վաճառքը: Ժամանակն է, որպեսզի ռեսպուբլիկայի մայրաքաղաքի և արդյունաբերական մյուս քաղաքների շրջանում ստեղծվեն ջերմոցային տնտեսություններ՝ հասարակական սննդի օբյեկտները ձմռանը թարմ բանջարեղենով ապահովելու համար:

Սովետական մարդկանց ազնիվ աշխատանքով մեր երկրում ստեղծվում են հասարակական շատ բարիքներ: Սակայն այդ բարիքների մի մասը խժռում են գողերն ու պորտաբույծները: Դժբախտաբար այդպիսի մարդիկ խցկված են նաև առևտրի ցանցում. թերակշռումներով ու թերաչափումներով նրանք կողոպտում են գնորդներին, պահեստներից գողանում հասարակական ունեցվածքը: Կենտկոմի պլենումը հանձնարարեց ռեսպուբլիկայի դատա-քննչական օրգաններին՝ ուժեղացնել պայքարը գողերի, գնորդներին խաբողների դեմ. այդպիսիներին պատժել օրենքի ամենայն խստությամբ: «Պորտաբույծների դեմ պետք է պայքարել ոչ միայն այն դեպքում,— ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը,—երբ նրանց բռնում են ձեռքը ուրիշի գրպանում, կամ շտեմարանում, կամ որևէ այլ տեղ: Ո՛չ, այդ բանը պետք է ավելի լայն հասկանալ... Եթե մարդն ինքը չի աշխատում, ոչ մի արժեք չի ստեղծում, բայց ապրում է լիուբոլ, ապա դա նշանակում է, որ նա ապրում է ուրիշների աշ-

խատանքի հաշվին», նա կողոպտում է արդար վաստակով ապրողներին: Իսկ այն, որ նրան չեն բռնել, արդեն գողի ճարպկության հետևանք է:

Հակահասարակական տարրերի դեմ պետք է պայքարեն թե դատա-քննչական օրգանները, թե պարտիական ու կոմերիտական կազմակերպություններն ու արհմիությունները, և թե ողջ հասարակայնությունը:

ՀԿԿ Կենտկոմի պլենումը Հայաստանի կոմպարտիայի քաղաքային, շրջանային ու արտադրական կոմիտեներին, Հայկական ՍՍՌ առևտրի մինիստրությանը, Հայկոոպի վարչությանը, աշխատավորների դեպուտատների քաղաքային ու շրջանային սովետների գործկոմներին պարտավորեցրեց՝ բոլոր միջոցները ձեռք առնել կարճ ժամանակամիջոցում վերացնելու առևտրական կազմակերպությունների աշխատանքում եղած լուրջ թերությունները և արմատապես բարելավելու նրանց գործունեությունը, բարձրացնելու առևտրի մակարդակը ռեսպուբլիկայում:

Առևտրի բնագավառում եղած թերությունների վերացման նպատակով Հայաստանի կոմպարտիայի քաղաքային, շրջանային և արտադրական կոմիտեները, առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները պետք է հանգամանորեն զբաղվեն առևտրի կազմակերպման հարցով, ավելի հաճախ լսեն առևտրական կազմակերպությունների ղեկավարների հաշվետվությունները առևտրի վիճակի և կադրերի հետ կատարվող աշխատանքի մասին:

Անհրաժեշտ է ուժեղացնել գաղափարական-քաղաքական աշխատանքը առևտրի աշխատողների շրջանում, այն շաղկապել պարտիայի XXII համագումարի որոշումներից և ՍՄԿՊ ծրագրից բխող կոնկրետ խնդիրների հետ: Առևտրի աշխատողներին անհրաժեշտ է դաստիարակել չարաշահումների և գռփողականության նկատմամբ անհաշտվողականության, կոմունիստական բարոյականության ոգով: Սովետական առևտրի կանոնների խախտումների դեմ մղվող պայքարում պետք է մշտապես օգտագործել հասարակայնության ուժերը, պարտիական-պետական վերահսկողության օրգաններին աջակցող խմբերը, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունները:

Յոթնամյակի հինգերորդ տարին է: Ռեսպուբլիկայի աշխատավորները մրցում են յոթնամյակի արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար: Ամեն ինչ անենք, որ առևտրի աշխատողները ևս, զինված ժողովրդի շահերի ամենաբարձր գիտակցությամբ, պատվով կատարեն իրենց խիստ պատասխանատու գործը:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՅՔԱՐԻ ԶԻՆՎԱԾ ԵՎ ԽԱՂԱՂ ՁԵՎԵՐԻ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Վ. ԴԱՐԲԻՆՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՄԱՐՔՍԻ պատկերավոր արտահայտությամբ սոցիալական ռևոլյուցիա-
ները հասարակության պրոգրեսի լոկոմոտիվներն են, որոնք անընդհատ առաջ
են մղում պատմության ընթացքը: Այդ ռևոլյուցիաներից միայն սոցիալիստա-
կանն է, որը հանգեցնում է պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմանը:
Պրոլետարիատի դիկտատուրան ընդհանուր օրինաչափություն է, պատմական
անհրաժեշտություն՝ սոցիալիզմի ուղին թևակոխող բոլոր երկրների համար:
Սակայն ինչպես հասարակության զարգացման բոլոր օրինաչափությունները,
այնպես էլ սոցիալիստական ռևոլյուցիան, տարբեր դարաշրջաններում և պատ-
մական միևնույն դարաշրջանում տարբեր երկրներում դրսևորվում է տար-
բեր ձևերով ու տեմպերով: «Սոցիալիստական ռևոլյուցիայի՝ բոլոր երկրներին
հատուկ գլխավոր օրինաչափությունների ընդհանրության պարագայում պատ-
մականորեն գոյացած ազգային առանձնահատկությունների և տրադիցիաների
բազմազանությունը,—ասված է ՍՄԿՊ Ծրագրում,—առաջացնում է ռևոլյուցիոն
պրոցեսի սպեցիֆիկ պայմաններ, պրոլետարիատի՝ իշխանության գլուխ
անցնելու ձևերի ու տեմպերի բազմազանություն» (ՍՄԿՊ XXII համագումարի
նյութերը, էջ 461—462):*

*Զինված պայքարի միջոցով շահագործող դասակարգերի դիկտատուրան
տապալելու և պրոլետարիատի դիկտատուրային անցնելու ձևը հասարակության
զարգացման գլխավոր տենդենցն է, որն անհրաժեշտություն է դառնում բոլոր
այն երկրներում, որտեղ չափազանց ուժեղ է ռազմա-բյուրոկրատական, ոս-
տիկանական ապարատը, որտեղ բուրժուազիան կատաղի դիմադրություն է
ցույց տալիս պրոլետարիատին: Հասարակության զարգացման այդ ընդհանուր
տենդենցն օբյեկտիվորեն պայմանավորված է նրանով, որ տիրապետող դա-
սակարգերն իշխանությունը հոժարակամ չեն զիջում, ընդ որում շահագործող-
ների դիմադրության ձևերն ու աստիճանը պայմանավորում են ռևոլյուցիոն
հարկադրանքի մեթոդները: Շահագործողների զինված դիմադրությունը ռևո-
լյուցիոն դասակարգին հարկադրում է նրանց նկատմամբ կիրառել ռևոլյուցիոն
բռնություն՝ զինված պայքարի ձևով: Նախորդ բոլոր ռևոլյուցիաների ու պրո-
լետարիատի ռևոլյուցիոն պայքարի փորձի ուսումնասիրության հիման վրա
գիտական կոմունիզմի հիմնադիրներն առեղծեցին զինված ապստամբության*

միջոցով պրոլետարիատի քաղաքական ռևոլյուցիայի իրականացման ուսմուն-
քը։ «Ապստամբությունն արվեստ է ճիշտ այնպես, ինչպես և պատերազմը,
ինչպես և արվեստի մյուս տեսակները։ Նա ենթակա է որոշ կանոնների, որոնց
մոռանալը դեպի կործանում է տանում այն պարտիայի, որը մեղավոր է
դրանք չպահպանելու մեջ» (К. Маркс и Ф. Энгельс, Избранные произве-
дения, т. II, էջ 110)։

Մարքսը և Էնգելսը զինված ապստամբության հաղթանակն ապահովելու
համար գտնում էին, որ՝ ա) ապստամբները պետք է կարողանան հավաքել
թշնամուն գերազանցող ուժեր, հակառակ դեպքում կպարտվեն, որովհետև
հակառակորդի կողմն է կազմակերպվածությունը, կարգապահությունը և տրա-
դիցիոն հեղինակության առավելությունը. բ) եթե ապստամբությունն սկսված
է, պետք է գործել մեծ վճռականությամբ և հարձակման անցնել. պաշտպա-
նությունը զինված ապստամբության մահն է, որովհետև այդ դեպքում ապըս-
տամբներն ավելի շուտ կկործանվեն, քան կկարողանան չափել իրենց ուժերը
թշնամու ուժերի հետ. գ) պետք է հակառակորդին հանկարծակիի բերել, ամեն
օր հասնել նոր, թեկուզ փոքր հաջողությունների և դրանով իսկ պահպանել
ապստամբության առաջին հաջողություններով ձեռք բերված բարոյական գե-
րակշռությունը. դ) պետք է հակառակորդին ստիպել նահանջել, հնարավորու-
թյուն չտալ նրան հավաքելու և համախմբելու իր ուժերը. ե) պետք է կարո-
ղանալ ապստամբության կողմը գրավել տատանվող տարրերին, բոլոր նրանց,
ովքեր միշտ գնում են ուժեղի հետևից, միշտ կանգնում են ավելի հուսալի
կողմը։ Պրոլետարիատի քաղաքական իշխանության համար մղվող պայքարի
հիմնական ձևը կապիտալիստական երկրների մեծ մասում Մարքսը և Էնգելսը
համարում էին զինված ապստամբությունը։

Սակայն որոշ պայմաններում (օրինակ, անցյալ դարի 70-ական թվական-
Սակայն որոշ պայմաններում (օրինակ, անցյալ դարի 70-ական թվական-
ներին Ամերիկայում և Անգլիայում), որպես բացառություն, նրանք պրոլե-
տարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումը հնարավոր էին հա-
մարում առանց զինված ապստամբության։ Նման եզրակացության համար
այդ երկրներում գոյություն ունեին մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ պայ-
մաններ, որոնցից գլխավորները կարելի է հանգեցնել հետևյալին։ Ամերիկան
և Անգլիան այն ժամանակ բուրժուական կատարյալ դեմոկրատիայի երկրներն
էին, բարձր էր աշխատավորների կազմակերպվածության աստիճանը, դեռևս
չկար ուռճացած ռազմա-ոստիկանական պետական ապարատ, ռազմամոլու-
թյուն ու բյուրոկրատիա։ Բացի այս ընդհանուր պայմաններից Անգլիայի հա-
մար բնորոշ էր նաև. ա) բնակչության մեջ քաղաքային և գյուղական բան-
վորների լիակատար գերակշռությունը. բ) պրոլետարիատի գերազանց կազ-
մակերպվածությունն արհեստակցական միություններում. գ) «քաղաքական
ազատության դարավոր զարգացման շնորհիվ կրթված պրոլետարիատի հա-
մեմատաբար բարձր կազմակերպվածությունը». դ) Անգլիայի կապիտալիստ-
ների մոտ քաղաքական ու տնտեսական հարցերը կոմպրոմիսով լուծելու սովո-
րությունը։ Այս ամենը Մարքսին ու Էնգելսին թույլ էին տալիս ենթադրելու,
որ եթե պրոլետարիատը կարողանա օգտագործել բուրժուական դեմոկրատիա-
յի ազատությունները, մասնավորապես ընդհանուր ընտրական իրավունքը,
հնարավոր է, որ այն, «խաղաղության միջոցից» դառնա պրոլետարիատի «ազա-
տագրման գործիք»։ «Ահա թե ինչպիսի հանգամանքների շնորհիվ է,— ասում
է Լենինը,— որ այն ժամանակ կարող էր միտք ծագել Անգլիայի կապիտա-



լիստների՝ խաղաղ կերպով իր բանվորներին ենթարկվելու հնարավորության
մասին» (Երկեր, հ. 32, էջ 431)։

Պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանություն նվաճելու տարբեր
ձևերի օրինաչափության և հնարավորության հարցը գիտական կոմունիզմի
հիմնադիրները քննարկում էին ո՛չ միայն այս կամ այն երկրի զարգացման
առանձնահատկությունների հետ կապված, այլև համաշխարհային մասշտա-
բով հասարակության տնտեսական ու քաղաքական զարգացման ընդհանուր
տենդենցի տեսանկյունից։ Այս առումով չափազանց արժեքավոր են Էնգելսի
դիտողությունները։ Ցույց տալով մոնոպոլիստական կապիտալիզմի առաջին
նշանները՝ կապիտալի կենտրոնացման պրոցեսի ահռելի արագացումը՝ մի
կողմից, և աշխատավորների ծայրահեղ աղքատացումը, բուրժուական պետա-
կան ապարատի բյուրոկրատացումն ու ռազմականացումը մյուս կողմից, Էն-
գելսը նշում էր, որ կապիտալիզմը թևակոխել է զարգացման այնպիսի փուլ,
որն ավելի ու ավելի է նվազեցնում խաղաղ ձևով սոցիալիզմին անցնելու հնա-
րավորությունը։

***

Իմպերիալիզմի գլխավոր երկրներում հասարակական-քաղաքական
ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ գլխավոր երկրներում հասարակական-քաղաքական
կյանքի ռազմականացման, պետական ապարատի ուռճացման ու բյուրոկրա-
տացման այդ պրոցեսն ավելի խորացավ Մարքսի և Էնգելսի մահից հետո։
Իմպերիալիզմի դարաշրջանի տնտեսական ու քաղաքական փաստերի վեր-
լուծության հիման վրա Լենինը ցույց տվեց, որ բուրժուազիան դեմոկրատիա-
յից շրջադարձ է կատարում դեպի քաղաքական ռեակցիա։ Բուրժուական դե-
մոկրատիայի գլխավոր խնդիրն է դառնում ամբողջ պետական ապարատն իր
ձեռքում կենտրոնացրած և իր տեռորիստական դիկտատուրան հաստատած,
ֆինանսական կապիտալի փաստական տիրապետության քողարկումը։ Պետա-
կան ապարատի ուռճացման, ռազմականացման ու բյուրոկրատացման պրո-
ցեսն իմպերիալիզմի դարաշրջանում իր ոլորտի մեջ առավ մայրցամաքի գրե-
թե բոլոր երկրները՝ չբացառելով նաև Անգլիան ու Ամերիկան։ Այստեղից Լե-
նինը հանգեց այն եզրակացության, որ իմպերիալիզմի դարաշրջանում որպես
կանոն պրոլետարիատը քաղաքական իշխանության կարող է հասնել զինված
ապստամբության միջոցով, որ խաղաղ անցման հնարավորությունն այժմ
բացառվում է նաև Անգլիայի ու Ամերիկայի համար։ «Այժմ, 1917 թվակա-
նին,— գրում էր Լենինը,— առաջին մեծ իմպերիալիստական պատերազմի
դարաշրջանում, Մարքսի այդ սահմանափակումը վերանում է։ Թե՛ Անգլիան,
թե՛ Ամերիկան... թավալգլոր ընկան ամեն ինչ իրենց ենթարկող, ամեն բան
ճնշող բյուրոկրատական ռազմական հիմնարկությունների համաեվրոպա-
կան կեղտոտ, արյունոտ ճահիճը։ Այժմ թե՛ Անգլիայում, թե՛ Ամերիկայում
«ամեն մի իսկական ժողովրդական ռևոլյուցիայի նախապայմանն» է «փշրել,
խորտակել «պատրաստի պետական մեքենան»...» (Երկեր, հ. 25, էջ 536—537)։

Բայց այդպիսի հարցադրումն, իհարկե, ամենևին չէր նշանակում, թե
Լենինը ժխտում էր սոցիալական ռևոլյուցիայի այլ ձևերի հնարավորությունն
ու օրինաչափությունն ընդհանրապես։ Ընդհակառակն, ռևոլյուցիայի տարբեր
ձևերի օրինաչափությունը Լենինը հիմնավորում էր իմպերիալիզմի տնտեսա-
կան ու քաղաքական զարգացման անհամաչափությամբ։ Իմպերիալիզմի դա-
րաշրջանում տնտեսապես զարգացած երկրների կողքին գոյություն ունեն թույլ

զարգացած երկրներ։ Տարբեր է կապիտալիստական կարգերի ամրությունն առանձին երկրներում, միատեսակ չեն հարաբերությունները քաղաքի և գյուղի միջև, աշխատավորների դրությունն ու դիրքն արտադրության մեջ, ժողովուրդների կուլտուրական ու ազգային առանձնահատկությունները և այլն։

Այդ առանձնահատկությունները պայմանավորում են ամեն մի երկրի հասարակական-պետական կառուցվածքը, դասակարգային պայքարի պայմանները և ձևերը, սոցիալ-քաղաքական ուժերի գոյություն ունեցող կոնկրետ հարաբերակցությունը։ Իսկ պայմանների այդ ամբողջությունը միահյուսվելով միջազգային կոնկրետ իրադրության հետ՝ յուրաքանչյուր առանձին դեպքում որոշում է պրոլետարիատի քաղաքական ռևոլյուցիայի այս կամ այն ձևի օրինաչափությունը։

Ընդգծելով սոցիալիստական ռևոլյուցիայի տարբեր ձևերի օրինաչափությունը՝ մարքսիզմ-լենինիզմը միևնույն ժամանակ նշում է, որ պրոլետարիատի համար առավել ցանկալի և շահավետ է ռևոլյուցիայի խաղաղ ձևը։ Բայց այդ հնարավորությունն իրականություն դարձնելը կախված է ոչ այնքան պրոլետարիատի կամքից, որքան շահագործող դասակարգերի դիմադրության ձևերից ու աստիճանից։ Այսպես, օրինակ, 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո, երկիշխանության շրջանում, Ռուսաստանում ռեալ հնարավորություն էր ստեղծվել ռևոլյուցիայի հետագա խաղաղ զարգացման համար՝ բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայի խաղաղ ձևով սոցիալիստականի վերաճելու ճանապարհով։ Եվ, ինչպես հայտնի է, բոլշևիկյան պարտիան, իր գլխավոր քաղաքական լոզունգներով հենց այդպես էլ կողմնորոշում էր պրոլետարիատին։ Ռևոլյուցիայի խաղաղ զարգացումն այն ժամանակ հնարավոր էր, որովհետև, ինչպես ասում էր Լենինը, ժամանակավոր կառավարությունը սովետների նկատմամբ «...բռնություն չի գործադրում և չի կարող գործադրել, որովհետև չկա ո՛չ ոստիկանություն, ո՛չ ժողովրդից անջատ բանակ, ո՛չ ժողովրդի գլխին ամենակարող կերպով կանգնած չինովնիկություն» (Երկեր, հ. 24, էջ 34)։

«Լոզունգների մասին» հոդվածում Վ. Ի. Լենինը պարզաբանում էր, որ փետրվարից հետո ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը հնարավոր էր երկու իմաստով։ Առաջին՝ ամբողջ իշխանությունը խաղաղ ձևով սովետներին անցնելու հնարավորության իմաստով, և երկրորդ՝ ռևոլյուցիայի խաղաղ զարգացումն այն ժամանակ հնարավոր կլիներ նաև այն տեսակետից, որ դասակարգերի ու պարտիաների պայքարը «սովետների ներսում» կարող էր ընթանալ խաղաղ, եթե պետական ամբողջ իշխանությունը ժամանակին անցներ սովետներին։ Այդ հանգամանքը անհնարին կդարձներ բուրժուազիայի բացահայտ ռազմական ելույթը և հենց այդ պատճառով էլ ավելորդ կդառնային զինված ապստամբությունն ու քաղաքացիական պատերազմը։ Իշխանության խաղաղ անցումը պրոլետարիատի ձեռքը կարող էր իրականացվել սովետների ներսում մեծամասնություն նվաճելու համար տարբեր պարտիաների մղած պայքարի ճանապարհով, այդ պարտիաների քաղաքական ու տնտեսական ծրագրերի գործնական փորձարկման ճանապարհով, «Ո՛չ մի դասակարգ չի համարձակվի ապստամբություն բարձրացնել սովետների դեմ, և կալվածատերերն ու կապիտալիստները... իշխանությունը խաղաղությամբ կզիջեն սովետների ուլտիմատիվ պահանջի առաջ։ Սովետների ծրագրին կապիտալիստների կողմից ցույց տրվող դիմադրությունը հաղթահարելու համար բավական



կլինի բանվորների և գյուղացիների հսկողությունը շահագործողների նկատմամբ և անհնազանդներին պատժելու այնպիսի միջոցառումներ գործադրելը, որպիսին է ամբողջ գույքի գրավումը՝ միացած ոչ-երկարատև կալանքի հետ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 64)։

Սակայն 1917 թ. հուլիսյան դեպքերից հետո ռևոլյուցիայի խաղաղ զարգացման վերը նշված գլխավոր պայմաններն սկսեցին վերանալ։ Էսեռների և մենշևիկների մանրբուրժուական պարտիաների դավաճանության պատճառով ամբողջ իշխանությունը փաստորեն անցավ բուրժուազիայի ձեռքը, որն սկսեց ռևոլյուցիոն զորքերի ու բանվորների զինաթափումը, նրանց ճնշումն ու հնազանդեցումը։ Կոնտրռևոլյուցիոն բուրժուազիան հաստատեց իր ռազմական դիկտատուրան և ավարտում էր սովետներն ուժով ցրելու վերջին նախապատրաստությունը։ Այդ ամենը, ասում էր Լենինը,— «իշխանությունը պրոլետարներին և կիսապրոլետարներին անցնելու այլ ուղի է պայմանավորում»։ 1917 թ. աշնանը էապես փոխվեցին նաև միջազգային իրադրությունն ու ռուսական ռևոլյուցիայի զարգացման արտաքին պայմանները, որոնք մի կողմից, նպաստավոր էին ռևոլյուցիայի հաղթական ելքի համար, մյուս կողմից՝ հրամայաբար պահանջում էին դիմել ամենավճռական միջոցին՝ Եվրոպայի մի շարք երկրներում սկսված ռևոլյուցիաներին աջակցելու և ռուսական ռևոլյուցիան վերջնական կործանումից փրկելու համար։ Բոլշևիկյան պարտիայի առաջ ամբողջ սրությամբ ու հրատապությամբ ծառացած էին պրոլետարիատի քաղաքական իշխանության համար մղվող պայքարի ձևերի ու մեթոդների թեորիական մշակման ու պրակտիկ կենսագործման հարցերը։

Տեսական այդ հույժ կարևոր աշխատանքը կատարեց Վ. Ի. Լենինը, հուլիսյան դեպքերից հետո գրած աշխատություններում և առանձնապես սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին պարտիայի Կենտրոնական Կոմիտեին հասցեագրած իր բազմաթիվ նամակ-դիրեկտիվներում, մի շարք նոր դրույթներով հարստացնելով զինված ապստամբության միջոցով պրոլետարիատի քաղաքական ռևոլյուցիայի իրականացման մարքսյան ժառանգությունը։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ զինված ապստամբությունը հաջողությամբ պսակելու համար ռևոլյուցիոն պարտիան պետք է անպայման մեծամասնություն ունենա ռևոլյուցիոն դասակարգի առաջավոր ջոկատներում և երկրում, ռևոլյուցիան պետք է հասունացած լինի համազգային մասշտաբով, իշխանության ղեկի մոտ գտնվող կառավարությունը պետք է հասնի բարոյական ու քաղաքական լիակատար կրախի, պետք է մեծ տատանումներ լինեն միջանկյալ տարրերի բանակում, «նրանց բանակում, ովքեր կառավարության կողմն են ոչ լիովին, թեև երեկ լիովին նրա կողմն էին»։ Անդրադառնալով զինված ապստամբության հաղթանակի գլխավոր պայմաններին, Լենինը գրում էր. «Ապստամբությունը, հաջող լինելու համար, պետք է հենվի ո՛չ թե դավադրության, ո՛չ թե պարտիայի, այլ առաջավոր դասակարգի վրա։ Այս առաջին։ Ապստամբությունը պետք է հենվի հասունացող ռևոլյուցիայի պատմության այնպիսի բեկման կետի վրա, երբ ժողովրդի առաջավոր շարքերի ակտիվությունն ամենամեծ չափի է հասել, երբ ամենաուժեղ չափի են հասել տատանումները թշնամիների շարքում և ռևոլյուցիայի թույլ, կիսատ-պռատ անվճռական բարեկամների շարքերում» (Երկեր, հ. 26, էջ 6)։

Ստեղծված պայմաններում քաղաքական իշխանության հասնելու միակ ուղին զինված ապստամբությունն էր և այդ ուղին ընտրելու գործում տատան-

վելը, Լենինի բնութագրությամբ, հավասարազոր էր ոճրագործության, ռևոլյուցիայի շահերին դավաճանելուն։ Ուստի բոլշևիկյան պարտիան նորից առաջադրեց մինչ այդ ժամանակավորապես հանված «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը, որն, «սկսած սեպտեմբերի կեսից, համազոր էր զինված ապստամբության կոչի» (Լենին)։ Վ. Ի. Լենինի առաջարկությամբ բոլշևիկյան պարտիայի Կենտրոնական կոմիտեն որոշում ընդունեց զինված ապստամբության մասին և գլխավորելով աշխատավորների պայքարը, առանց մեծ արյունահեղության, պրոլետարիատին հասցրեց քաղաքական իշխանության։ Այսպիսով, չնայած ռևոլյուցիայի խաղաղ զարգացումն ապահովելու ուղղությամբ բոլշևիկյան պարտիայի գործադրած ջանքերին, բուրժուազիայի զինված դիմադրության և մանրբուրժուական պարտիաների դավաճանության հետևանքով մեր երկրում պրոլետարիատն իր դիկտատուրան հաստատեց զինված ապստամբության միջոցով՝ տապալելով բուրժուազիայի իշխանությունը։



ՊԱՏՄԱԿԱՆ միանգամայն ուրույն պայմաններում, հմտորեն օգտագործելով բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան խաղաղ ձևով սոցիալիստականի վերաճելու լենինյան թեորիան, Եվրոպայի մի շարք երկրներում կոմունիստական պարտիաները գլխավորեցին աշխատավորների ռևոլյուցիոն պայքարը և պրոլետարիատին քաղաքական իշխանության հասցրին պայքարի համեմատաբար խաղաղ մեթոդներով ու ձևերով։ Այդ պայմանների ամբողջությունը համառոտակի կարելի է հանգեցնել հետևյալին։

Երկրորդ համաշխարհային պատերազմի վերջում սովետական բանակի հաղթարշավը, զուգակցվելով ֆաշիստների կողմից օկուպացված երկրների աշխատավորների ազգային-ազատագրական պայքարի հետ, Եվրոպայի մի շարք երկրներում հանգեցրեց ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիաների հաղթանակի։ Պետական իշխանությունը խլվեց օտարերկրյա օկուպանտներից և նրանց հետ դաշնակցած տեղական մոնոպոլիստական բուրժուազիայից ու կալվածատերերից։ Ռեակցիոն պրոֆաշիստական բուրժուազիան և կալվածատերերը տնտեսապես ջախջախվեցին ու քաղաքական ասպարեզից հեռացվեցին, պետության մեջ առաջատար քաղաքական ուժ դարձավ բանվոր դասակարգը։ Սակայն դասակարգային ուժերի գոյություն ունեցող հարաբերակցության պայմաններում դեռևս չէր կարելի անհապաղ առաջադրել պետական իշխանությունն ամբողջովին պրոլետարիատին անցնելու խնդիրը, դրա համար պահանջվում էր ժամանակ, ուժերի համախմբում։ «Մենք միայնակ կառավարել չենք կարող,— 1945 թվականի ապրիլին ասում էր Կ. Գոտվալդը՝ նկատի ունենալով Չեխոսլովակիայի ազատագրված շրջաններում ստեղծված օբյեկտիվ դրությունը,— նրանք (բուրժուական պարտիաները.— Վ. Դ.) նույնպես միայնակ չեն կարող կառավարել։ Նրանք չեն կարող կառավարել առանց մեզ, իսկ մենք՝ առանց նրանց, ընդ որում նրանք ավելի մեծ չափով չեն կարող առանց մեզ, քան մենք՝ առանց նրանց»։ Այսպիսի իրադրությունն ընդհանուր գծերով այն ժամանակ տիպական էր ժողովրդական դեմոկրատիայի գրեթե բոլոր երկրների համար։

Ռևոլյուցիայի առաջին էտապը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում բնորոշ էր հասարակական կյանքի բոլոր բնագավառներում քաղաքական իշ-



խանության համար բանվոր դասակարգի և բուրժուազիայի միջև մղվող ամենասուր դասակարգային պայքարով, որը, սակայն, չընդունեց զինված ապստամբության և քաղաքացիական պատերազմների ձև։ Հանդես գալով որպես ժողովրդա-դեմոկրատական պետության առաջատար ուժ, պրոլետարիատը մոնոպոլիստական բուրժուազիայի և կալվածատերերի հաշվին ռևոլյուցիոն ձևով բավարարում էր աշխատավորների կենսական, արմատական կարիքներն ու շահերը, ամրապնդում էր դաշինքը նրանց հետ և հենվելով այդ դաշինքի վրա ու դրա ամրապնդման համեմատ, ժողովրդա-դեմոկրատական կարգի զարգացումն ուղղում էր սոցիալիզմի հունով։ Այդ ամենի հետևանքով գնալով ուժերի հարաբերակցությունը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում փոխվեց հօգուտ դեմոկրատիայի ու սոցիալիզմի, այս տեսակետից իրադրությունը նպաստավոր դարձավ նաև միջազգային արենայում։

Այդպիսի նպաստավոր պայմաններում կոմունիստական և բանվորական պարտիաները՝ հենվելով պետական ապարատում իրենց գրաված կարևոր պոստերի վրա, ժողովրդի ճնշող մեծամասնությանը համախմբելով բանվոր դասակարգի շուրջը, աստիճանաբար կառավարություններից հեռացրին բուրժուազիայի ներկայացուցիչներին և կառավարման ղեկն ամբողջովին վերցրին իրենց ձեռքը։ Քաղաքական իշխանության հասնելու համար զինված ապստամբության անհրաժեշտությունը չզգացվեց, որովհետև կոնտրռևոլյուցիոն ուժերը կազմակերպչորեն և բարոյապես կազմալուծվել էին և զինված դիմադրություն ցույց տալ չկարողացան, իսկ որտեղ փորձեցին այդ անել՝ անհապաղ ջախջախվեցին։

Իշխանության հասնելու ճանապարհին պրոլետարիատն օգտագործեց պայքարի ամենաբազմազան ձևեր ու մեթոդներ՝ ընդհանուր գործադուլներ, բուրժուական ռեակցիոն պարտիաների արգելում, պայքարի պառլամենտական ձևեր, մասսայական միտինգներ ու ցույցեր, ընդհանուր ընտրություններ, մասսաների զինում, դավադրությունների ու խռովությունների ճնշում և այլն։ Ռեակցիոն ուժերի դիմադրությունը հաղթահարվեց հիմնականում պայքարի խաղաղ մեթոդներով ու ձևերով։ Այսպիսով, պրոլետարիատն այդ երկրներում քաղաքական իշխանության հասավ համեմատաբար խաղաղ ձևով, առանց զինված ապստամբության և քաղաքացիական պատերազմների, որպես կոմունիստների կողմից ղեկավարվող աշխատավորների լայն շարժում՝ ներքևից, պետական ապարատի մի շարք կարևոր օրգանների վճռական աջակցության պայմաններում՝ վերևից։ Այդ իրադարձությունները որոշ նպաստավոր պայմաններում սոցիալիստական ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորության մասին մարքս-լենինյան ուսմունքի թեորիական հետևության գործնական ապացույցն էին։



ՄԵՆՔ ապրում ենք կապիտալիզմի կործանման և համաշխարհային մասշտաբով սոցիալիզմի հաղթանակի դարաշրջանում։

Հասարակության զարգացման արդի էտապում կապիտալիզմի տնտեսական ու քաղաքական սիստեմի առավել բնորոշ գիծը նրա ընդհանուր ճգնաժամի խորացումն է, որն այժմ բուն կապիտալիստական երկրներում ամենից առաջ արտահայտվում է կապիտալի և աշխատանքի հակասության սրման

մեջ, կապիտալի կենտրոնացման ու համակենտրոնացման պրոցեսի ուժեղաց-
ման, միլիոնավոր մանր ու միջին սեփականատերերի մասսայական քայքայ-
ման և աղքատացման մեջ։ Ազգային հարստությունը կենտրոնանում է ֆինան-
սական օլիգարխիայի ձեռքում, որը պետական ապարատն ուղղակի և անուղ-
ղակի ձևով ենթարկելով մոնոպոլիստական հզոր միություններին, իր նեղ
խմբային շահերը հակադրում է ամբողջ ազգի շահերին, սիստեմատիկ բռնու-
թյուն է գործադրում ո՛չ միայն աշխատավորների, այլև սոցիալական մյուս
խավերի նկատմամբ։ Ուստի մոնոպոլիաների ամենակարողության և բռնու-
թյան դեմ մղվող պայքարում զանազան ռևոլյուցիոն պրոցեսներ ու շարժում-
ներ միաձուլվում են մեկ միասնական համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի
մեջ։ Իրերի բերումով պայքարի առաջին պլանի վրա են մղվում մի շարք հա-
մադեմոկրատական խնդիրներ՝ պայքարը մոնոպոլիաների դեմ, ազգային ան-
կախության պաշտպանությունն օտարերկրյա կապիտալի ոտնձգություններից,
դեմոկրատական ազատությունների պահպանման և խորացման համար մըղ-
վող պայքարը, հանուն խաղաղության և խաղաղ գոյակցության մղվող պայ-
քարը և այլն, որոնցում տարբեր չափերով և տարբեր նկատառումներով շահա-
գրգռված է կապիտալիստական երկրների բնակչության ճնշող մեծամասնու-
թյունը։ Այդ ամենի հետևանքով նպաստավոր պայմաններ են ստեղծվում պրո-
լետարիատի շուրջն ազգի բոլոր դեմոկրատական ուժերը համախմբելու հա-
մար, ընդլայնվում է սոցիալիստական ռևոլյուցիայի սոցիալական բազան։

Կապիտալիստական երկրներում տեղի ունեցող այդ պրոցեսին զուգա-
հեռ, մինչև այժմ չտեսնված արագությամբ փլուզվում է իմպերիալիզմի գա-
ղութային սիստեմը, դարերով ճնշված և հարստահարված երկրների ժողո-
վուրդները ձեռք են բերում ազգային անկախություն և բռնում տնտեսական
ու քաղաքական ինքնուրույն զարգացման ուղին։ Միջազգային մոնոպոլիստա-
կան բուրժուազիան զրկվում է նախկին գաղութները գաղանաբար շահագոր-
ծելու և դրա հաշվին մաներելու հնարավորությունից։ Իմպերիալիզմի գաղու-
թային սիստեմի փլուզումը հարյուր միլիոնավոր մարդկանց ընդհուպ մոտեց-
նում է սոցիալական որոշակի խնդիրների լուծման էտապին, բազմապատ-
կում է սոցիալական անարդարության դեմ պայքարող մարտիկների բանակը։

Մյուս կողմից, ներքին հակասություններից բզկտվող և ազգային-ազա-
տագրական պայքարի հարվածներից երերացող կապիտալիզմի համաշխար-
հային սիստեմի կողքին այժմ գոյություն ունի տնտեսապես ու քաղաքական
տեսակետից օրըստօրե հզորացող և ամրապնդվող սոցիալիզմի համաշխար-
հային սիստեմը։ Մեր ժամանակներում համաշխարհային զարգացման պրո-
ցեսին ուղղություն է տալիս, այն որոշում է ոչ թե կապիտալիզմը, այլ սոցիա-
լիզմի համաշխարհային սիստեմը։ Հասարակության զարգացման արդի էտա-
պի ամենաբնորոշ գծերից մեկը դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի աճն
է ամբողջ աշխարհում, սոցիալիզմի հզորացումն ու վերելքը՝ մի կողմից, և
կապիտալիզմի խարխլման ու թուլացման պրոցեսի արագացումը՝ մյուս կող-
մից։ Վիթխարի չափով ուժեղացել է բանվորական ու կոմունիստական շար-
ժումը, նրա կազմակերպվածությունն ու համախմբվածությունը համաշխար-
հային մասշտաբով։

Այսպիսով, համաշխարհային զարգացման արդի էտապն ընդհանրապես
պայմանավորում է դասակարգային ուժերի նոր վերախմբավորում, տեղա-
բաշխում և հարաբերակցություն ինչպես բուն կապիտալիստական երկրներում,



այնպես էլ համաշխարհային ասպարեզում։ Կապիտալիզմի և սոցիալիզմի
ուժերի հարաբերակցությունն էապես փոխվել և փոխվում է հօգուտ դեմո-
կրատիայի ու սոցիալիզմի։ Այդ հանգամանքը նոր հնարավորություններ է
ստեղծում սոցիալիստական ռևոլյուցիան ամենաբազմազան ձևերով իրագոր-
ծելու համար, մասնավորապես ընդլայնվում է սոցիալիզմին համեմատաբար
խաղաղ ձևով անցնելու հնարավորությունը։

ՍՄԿԿ Ծրագրում նշվում է, որ կապիտալիստական մի շարք երկրներում
բանվոր դասակարգը՝ տարբեր պարտիաների և հասարակական, քաղաքական
կազմակերպությունների համաձայնության ու համագործակցության հիման
վրա հնարավորություն ունի միավորելու ժողովրդի ճնշող մեծամասնությունը,
մեծամասնություն նվաճելու պառլամենտում և այն բուրժուազիայի գործիքից
վերափոխելով դարձնելու ժողովրդի կամքի արտահայտիչը։ Պառլամենտի մի-
ջոցով բանվոր դասակարգը կանցկացնի մի շարք հիմնական օրենսդրական
միջոցառումներ, որոնց ամբողջությունը կհանգեցնի շահագործողներին քա-
ղաքական ու տնտեսական իշխանությունից զրկելուն, կամրապնդի բանվոր
դասակարգի սոցիալիստական կառավարությունը և դրանով իսկ ուղի կբացվի
սոցիալիստական ռևոլյուցիան խաղաղ ձևով մինչև վերջ հասցնելու համար։

Պրոլետարիատը պառլամենտը կօգտագործի շահագործողական պետական
մեքենայի հարկադրանքի օրգանները ջարդելու և դրանց փլատակների վրա
միանգամայն նոր սկզբունքներով սոցիալիստական պետական սիստեմ ստեղ-
ծելու համար, մի բան, որը լիովին հաստատվեց Եվրոպայի ժողովրդական
դեմոկրատիայի որոշ երկրների փորձով։ Հետևաբար, բուրժուական պառլա-
մենտը պրոլետարիատի քաղաքական ռևոլյուցիայի համար օգտագործելու
մասին դրույթը չի նշանակում, թե կառավարման բուրժուական պառլամեն-
տական սիստեմը ռևոլյուցիայից հետո կարող է անփոփոխ կերպով պահ-
պանվել։ Մյուս կողմից, չի բացառվում նաև այն հնարավորությունը, որ ա-
ռանձին երկրներում անցման շրջանում դեռևս պահպանվեն կառավարման
պառլամենտական ձևի որոշ տարրեր ու տրադիցիաներ, ինչպես, օրինակ,
բազմապարտիական սիստեմը։ Այդպիսի հնարավորություն նկատի է առնվում
Անգլիայի, ԱՄՆ-ի և պառլամենտական կառավարման մեծ տրադիցիաներ
ունեցող կապիտալիստական մի շարք երկրների կոմպարտիաների ծրագրա-
յին փաստաթղթերում։

Սակայն ինչ ձևով էլ իրականացվի պրոլետարիատի քաղաքական ռևո-
լյուցիան, կոմունիստական պարտիայի ղեկավարությունը նրա հաղթանակի
պարտադիր պայմանն է, իսկ նրա բովանդակությունը՝ պրոլետարիատի դիկ-
տատուրայի հաստատումը, սոցիալիզմի ուղին թևակոխած բոլոր երկրների
համար պատմական անհրաժեշտություն։ Ընդ որում խաղաղ ձևով սոցիա-
լիզմին անցնելու ռեալ հնարավորության մասին դրույթից ամենևին չի բը-
խում, թե այժմ բոլոր երկրներում առաջին պլանի վրա են մղվում պրոլե-
տարիատի դասակարգային պայքարի խաղաղ ձևերը։ Նախ, այսուհետև էլ մի
շարք երկրներում, որտեղ կապիտալիզմը դեռևս ուժեղ է, որտեղ նրա ձեռքում
կենտրոնացված է ռազմա-ոստիկանական վիթխարի ապարատը, պատմության
բեկումնային պահին դասակարգային պայքարի խիստ սրումն անխուսափելի
է։ Այնուհետև, պայքարի խաղաղ, մասնավորապես պառլամենտական ձևը
կարող է նշանակություն ունենալ միայն այն դեպքերում, եթե այն սերտորեն
զուգակցվի պայքարի արտապառլամենտական ձևերի հետ, որովհետև այդ









պայքարի գործոն լինելը, նրա էֆեկտիվությունը որոշվում է արտապառլա-
մենտական պայքարի թափով և ուժով, աշխատավորների կազմակերպվածու-
թյան և քաղաքական հասունության աստիճանով:

Բացի դրանից, ինչպես նշված է ՍՄԿՊ Ծրագրում, տարբեր երկրներում
պատմական և սոցիալ-տնտեսական պայմանների առանձնահատկությունը,
դասակարգային ուժերի կոնկրետ հարաբերակցությունը, շահագործող դասա-
կարգերի դիմադրության աստիճանը պայմանավորում են պրոլետարիատի դիկ-
տատուրայի համար մղվող պայքարի ձևերը, ինչպես նաև զարգացման անցողիկ
աստիճանների հնարավորությունն ու անհրաժեշտությունը մի շարք երկրնե-
րում: Այդպիսի անցողիկ աստիճան կարող է լինել, օրինակ, ազգային դեմո-
կրատիայի պետությունը տնտեսապես թույլ զարգացած երկրներում: Համաշ-
խարհային ասպարեզում ուժերի ներկա հարաբերակցության և սոցիալիզմի
համաշխարհային սիստեմի հզոր աջակցության պայմաններում, գաղութային
լուծը թոթափող ժողովուրդները, ստեղծելով ազգային դեմոկրատիայի պետու-
թյուն, հնարավորություն ունեն ընտրելու զարգացման ոչ կապիտալիստական
ուղին՝ շրջանցելով կապիտալիստական զարգացման տանջալից պրոցեսը:

Նոր հասարակարգի ծագման և համաշխարհային մասշտաբով նրա հաղ-
թանակի դիալեկտիկան այնպիսին է, որ պրոլետարիատի քաղաքական ռևո-
լյուցիայի ձևերը ոչ միայն չեն կարող միատեսակ լինել առանձին երկրներում,
այլև անհրաժեշտորեն կլինեն տարբեր, որովհետև տարբեր երկրներում տար-
բեր են և տարբեր կլինեն պրոլետարիատի դասակարգային պայքարի պայ-
մանները: Սակայն պատմական փորձը ցույց է տալիս, որ տարբեր երկրնե-
րում սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացման կոնկրետ ընթացքի բազ-
մազանությամբ հանդերձ, գոյություն ունի պետական իշխանությունն աշխա-
տավորների ձեռքն անցնելու երկու հիմնական հնարավորություն, պրոլետարի-
ատի դիկտատուրայի հաստատման երկու հիմնական ձև: Առաջինը՝ պրոլե-
տարիատի քաղաքական ռևոլյուցիայի իրականացման բռնի ձևն է, որի հա-
մար բնորոշ է զինված ապստամբությունը, իսկ երբեմն նաև քաղաքացիական
պատերազմը և, երկրորդ, խաղաղ ձևը՝ առանց զինված ապստամբության ու
քաղաքացիական պատերազմի շահագործողների իշխանությունը տապալելու և
պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու ձևը:

Պրոլետարիատի իշխանության համար մղվող պայքարի այդ երկու հիմ-
նական ձևերի տիպականությունն օբյեկտիվորեն պայմանավորված է դասա-
կարգային ուժերի հարաբերակցությամբ՝ տվյալ երկրում և համաշխարհային
մասշտաբով, ինչպես նաև յուրաքանչյուր կոնկրետ դեպքում շահագործող
դասակարգերի դիմադրության աստիճանով ու ձևերով:

Իսկ այստեղից, ընդգծում էր Լենինը, բխում են երկու շատ կարևոր
գործնական հետևություններ, առաջին՝ ռևոլյուցիոն դասակարգը պետք է կա-
րողանա տիրապետել հասարակական գործունեության բոլոր ձևերին կամ
կողմերին, երկրորդ՝ ռևոլյուցիոն դասակարգը պետք է պատրաստ լինի ամե-
նաարագ և ամենաանսպասելի կերպով պայքարի մեկ ձևը փոխարինելու մյու-
սով: Այդ է սովորեցնում աշխատավորների ռևոլյուցիոն պայքարի փորձը,
մարքսիզմ-լենինիզմը:



# ՄԱՐԴԱՍԻՐԱԿԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հ. ԽՏՐՅԱՆ

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

Սովետական Միության կոմունիստական պարտիայի XXII համագումարը
գիտականորեն մշակեց պարտիայի նոր ծրագիր. այնտեղ սահմանված են
առաջիկա տարում իրականացվելիք այն միջոցառումները, որոնք հիմնակա-
նում կապահովեն մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցումը:
Տնտեսական, քաղաքական և գաղափարական մեծագույն խնդիրների լուծ-
ման հետ մեկտեղ պարտիան առանձին ուշադրություն է նվիրում կոմունիզմ
կառուցող նոր մարդու ձևավորմանը, քանի որ սոցիալիստական հասարակու-
թյան զարգացման զուգընթաց, անընդհատ մեծանում են կոմունիստական
բարոյականության դերն ու նշանակությունը: Այդ առումով էլ հենց մեր հասա-
րակարգում տեղի ունեցող բոլոր տեղաշարժերը, մարդկային բոլոր հարաբե-
րություններն իրականացվում են ամենամարդասիրական՝ «Մարդը մարդուն
բարեկամ է, ընկեր, եղբայր» սրբազան նշանաբանով:

Մարդասիրական կամ հումանիստական հարաբերություններ ասելով ա-
ռաջին հերթին նկատի ունենք մարդկանց միջև գոյություն ունեցող այնպիսի
հարաբերություններ, երբ ոչ միայն չեն ոտնահարվում, արհամարհվում, այլ
ամեն կերպ և հասարակական բոլոր միջոցներով պաշտպանվում են
մարդու արժանապատվությունն ու ազատությունը, ապահովվում է նրա բազ-
մակողմանի զարգացումը՝ նպատակ ունենալով մարդուն դարձնել երջանիկ, իր
կյանքի ու աշխատանքի տնօրինողը: Նման հարաբերությունների պայմաննե-
րում մարդը հանդես է գալիս ո՛չ թե որպես օբյեկտ, այլ սուբյեկտ, ո՛չ թե որ-
պես միջոց, այլ որպես հասարակության զարգացման նպատակ:

## 1

«Մարդասիրական հարաբերություններ» հասկացողությունը նոր չէ և գոյու-
թյուն է ունեցել հասարակական զարգացման բոլոր էտապներում: Այն չու-
նի վերացական բնույթ և պատմականորեն պայմանավորված է հասարակու-
թյան տնտեսական զարգացմամբ: Օրինակ, կապիտալիստական հասարակու-
թյան վերընթաց զարգացման ժամանակաշրջանում բուրժուական մարդասիրա-
կան հարաբերությունների տնտեսական հիմքը եղել է արտադրության միջոց-
ների մասնավոր սեփականությունը, բարոյական հիմքը՝ ինդիվիդուալիզմը և
«խելացի էգոիզմը», իդեալը՝ մարդու «բնության» ազատ զարգացումը:

Որպես օրինաչափություն, մարդասիրական հարաբերությունները հասարակության զարգացման բոլոր էտապներում հանդես են գալիս իբրև առաջադիմական հարաբերություններ և նպաստում են հասարակության օբյեկտիվ առաջընթացին։ Միաժամանակ ունենալով բարոյական ուժ և արդարացում, նրանք միշտ համընկնում են բարիք հասկացողության հետ և օգտակար են լինում հասարակության մեծամասնության համար։ Մարդասիրական հարաբերություններում ցայտունորեն դրսևորվում է տվյալ էտապում գոյություն ունեցող մարդկանց հասարակական և անձնական շահերի ռեալ վիճակը, բնական պահանջների և նրանց բավարարման հասարակական ձևի, ինչպես նաև մարդկանց ունեցած իրավունքների ու պարտականությունների փոխհարաբերությունը։ Սակայն դրանք չի կարելի նույնացնել մարդկանց գիտակցության մեջ եղած նրանց արտացոլման հետ, նրանց նկատմամբ եղած հայացքների, թեորիաների, ուսմունքների հետ։

Մարդասիրական հարաբերություններն առաջացել են շատ ավելի վաղ, քան նրանց մասին մարդկանց ստեղծած ուսմունքները։ Անտագոնիստական հասարակարգերում յուրաքանչյուր դասակարգ ունեցել է «մարդասիրական հարաբերությունների» իր ըմբռնումը, որը հանդիսացել է նրա դասակարգային շահերի տեսական ու բարոյական արտահայտությունը։

Մինչմարքսյան հումանիստական ուսմունքների ստեղծողները հիմնականում իդեալիստորեն էին մեկնաբանում մարդասիրական հարաբերությունները, դրանց նկատմամբ ցուցաբերում էին մետաֆիզիկական՝ ոչ պատմական, վերացական մոտեցում։ Պետք է նկատել նաև, որ անտագոնիստական հասարակարգերում բոլոր խավերի մարդկանց ռեալ հարաբերություններն իրենց համարժեք արտացոլումը չեն կարող գտնել իշխող դասակարգերի հումանիստական ուսմունքներում։ Նամանավանդ, որ այդ ուսմունքների և իշխող դասակարգերի գործնական վարվելակերպի միջև միշտ գոյություն ունեն խոր հակասություն, խզում, անհամապատասխանություն։

Այդպիսի կեղծ-հումանիստական ուսմունքներից են ուշ շրջանի քրիստոնեական և մահմեդական բարոյախոսությունները, որոնք անտագոնիստական հասարակարգերում ծառայում են իշխող դասակարգերին և կատարում նրանց սոցիալական պատվերը։ Այդ պատճառով էլ դրանք իրենց դասակարգային հպատակությունն ու իսկական բովանդակությունը քողարկելու նպատակով միշտ աշխատում են պճնվել արտաքին էֆեկտավոր ձևերով և օգտագործել կեղծ, երեսպաշտ մարդասիրական ներբողներ։

Կրոնավորները մարդասիրությունը բխեցնում են կրոնական հավատից, կրոնական գիտակցությունից, աստծուց։ Նրանք գտնում են, որ առանց կրոնական հավատի մարդը չի կարող լինել բարոյական, առաքինի, մարդասեր, որ մարդասիրական հարաբերություններ կարող են գոյություն ունենալ միայն ամենակարող աստծո օգնությամբ։ Անտագոնիստական հասարակության մեջ կրոնական հումանիզմը կոչ է անում. «Ծառաներն ամեն բանի մեջ վախով թող հնազանդ լինեն իրենց տերերին, և ոչ միայն նրանց, որոնք հեզ են ու բարի, այլև նրանց, որոնք բիրտ են ու դաժան» (Ավետարան. Առաջին ընդհանրական թուղթ, գլուխ բ, 18)։ Քրիստոնեական, մահմեդական և հուդայական կրոններն իրենց բարոյական վարդապետություններում սովորեցնում են, որ աստծո կամքով մարդկանց մի մասը պետք է լինի տեր, շահագործող, իսկ մյուս մասը՝ ծառա, շահագործվող։ «Ամեն մարդ իրեն համար, իսկ բոլորի համար աստ-



ված» — այս է կրոնական հումանիզմի հիմնական սկզբունքներից մեկը։

Քրիստոնեական, մահմեդական և հուդայական բարոյախոսությունները կնոջը տղամարդուն հավասար մարդ չեն համարում և արդարացնում են տղամարդկանց կողմից կանանց նկատմամբ գործադրվող բռնությունն ու տմարդի վերաբերմունքը։ Նրանք թշնամանք և ատելություն են սերմանում տարբեր ազգերի ու ժողովուրդների միջև։ Կրոնավորները հայտարարում են, որ եթե իրենց քարոզները, կամ գործերը երբեմն կրում են ոչ մարդասիրական բնույթ, հոգ չէ, կարևորն այն է, որ նրանք լինեն «աստվածահաճո»։ Բրուկլինի (ԱՄՆ) եհովականների կենտրոնից ուղարկված հրահանգներից մեկում գրված է. «Մարդ սպանելն էլ արդար բան է, եթե այդ անում է աստծո կամակատարը...»։

Արդի ժամանակաշրջանում մարդկային հարաբերությունները միստիֆիկացիայի ենթարկելու ամենասուր պահանջն ու քաղաքական անհրաժեշտությունն զգացվում է կապիտալիստական հասարակարգում։ Դա բացատրվում է նրանով, որ բուրժուազիան, հանդիսանալով բոլոր շահագործող դասակարգերից առավել անմարդասիրականը, կապիտալիստական երկրներում անբարոյականությունը հասցրել է իր ծայրագույն աստիճանին։ Կապիտալիստական երկրներում այսօր մարդու շահագործումը մարդու կողմից աննախադեպ չափեր է ընդունում և բոլորովին նոր ձևերով է հանդես գալիս։ Ամեն բան, ինչ մարդկային է ու բարոյական, ոչնչացվում է, ոտնահարվում և արհամարհվում։ Գընվում ու վաճառվում են մարդկանց զգացմունքները, խիղճը, պատիվն ու արժանապատվությունը, մարդկանց ինչպես ֆիզիկականը, այնպես էլ հոգեկանը։

Կապիտալիստական երկրներում անբարոյականությունը քաղցկեղի նման ներսից ուտում է հասարակարգը։ ԱՄՆ-ում երևան է եկել «զվարճությունների բարոյականությունը», որը մեծ տարածում է գտնում Նյու-Յորքի ու Չիկագոյի գիշերային ակումբներում և սերտորեն կապված է ավտոմեքենայի պաշտամունքի, հարբեցողության, ջազի, սեռական սանձարձակության, գանգստերիզմի և նման կարգի այլ երևույթների հետ։ 1959 թ. մայիսին ԱՄՆ-ի արդարադատության մինիստր Ուիլյամ Ռոջերսը հայտարարեց, որ ԱՄՆ-ը հանցագործությունների դեմ պայքարելու համար ամեն տարի ծախսում են 20 միլիարդ դոլար, որ հանցագործությունները երկրում տարվա ընթացքում բնակչության աճից 4 անգամ ավելի են աճում, որ հանցագործությունները հատկապես շատ են երիտասարդության շրջանում։ Իտալիայում առանձին ֆիրմաներ աշխատանքի են ընդունում միայն չամուսնացած աղջիկներին և նրանց, ովքեր բժշկական տեղեկանք են ներկայացնում, որ երեխաներ ունենալու անընդունակ են։ Կապիտալիստական երկրներում գնալով ավելանում են հասարակաց տները և աճում է պոռնկությունը։ Որոշ երկրներում (Ֆրանսիա) նույնիսկ կա պոռնիկների արհմիություն։

Մեր օրերում բուրժուազիան, չկարողանալով դուրս գալ տնտեսական, քաղաքական ու բարոյական ճգնաժամից, ջանք չի խնայում, որպեսզի «բարոյական ռևոլյուցիա» կատարի և իր գաղափարախոսներին տված բոլոր սոցիալական պատվերների մեջ առանձնապես մեծ ուշադրություն է հատկացնում մարդասիրության քարոզին։ Դա էլ հենց ստիպում է իմպերիալիզմի ջատագովներին, որ բուրժուական հասարակության մարդկանց հարաբերությունները մեկնաբանելիս կիրառեն նույնիսկ ամենաանբարոյական ձևերն ու մեթոդները և ստեղծեն նոր, իսկությունն ավելի նրբորեն քողարկող թեորիաներ ու ծրագրեր։ Դրանցից են, օրինակ, «բարոյականության կորվածության» թեո-

րիան, ինչպես նաև «մարդկային հարաբերությունների» ծրագիրն ու թեորիան։

Այդ տեսության ջատագովները՝ Ռոբերտ Ջոնսոնը, Օ. Ա. Օմենը, Ա. Կոլ-
յերը և ուրիշներ գտնում են, որ ժամանակակից պայմաններում պետք է հրա-
ժարվել բացահայտ հակակոմունիստական պրոպագանդայից և բոլոր հնարա-
վոր միջոցներով ուժեղացնել աշխատավորների հոգեկան շահագրգռվածու-
թյունն աշխատանքի նկատմամբ, նրանց մոտ ստեղծել աշխատանքի «բարոյա-
կան խթաններ» և բավարարել նրանց «մարդկային», «բարոյական» պահանջ-
ները։ Ըստ նրանց, բանվորների վրա պետք է ուղղակիորեն ներգործել ոչ այն-
քան բանականության և գաղափարախոսության, որքան զգացմունքների և հո-
գեբանության միջոցով։ Նրանք աշխատում են բանվորի սոցիալական պահանջ-
ների բավարարումը ներկայացնել որպես զուտ հոգեբանական երևույթ, և ապա,
առանց դժվարության, բավարարել դրանք, բանվորների մոտ ստեղծելով բազ-
մաթիվ պատրանքներ ու թյուր պատկերացումներ՝ նրանց իսկական սոցիալա-
կան դրության մասին։ Նրանք իրենց ձեռնարկներում սովորեցնում են, թե ինչ-
պես պետք է վարվել բանվորների հետ, որպեսզի վերջիններս իրենց պետերին
դիտեն ոչ թե իբրև կապիտալիստի կամակատարներ, այլ մեծ գիտելիքներով
ու հարուստ փորձով օժտված արտադրության բարեգործ ղեկավարներ, կազ-
մակերպիչներ ու խորհրդատուներ։ Պահանջվում է պետերի և բանվորների ար-
տաքին անձնական փոխհարաբերություններն այնպես փոխել, որ բանվորնե-
րին թվա, թե իրենք պետերին հավասար սոցիալական վիճակում են, որ պե-
տերը հետաքրքրվում են բանվորների կենցաղային պայմաններով, որ բանվոր-
ները կարող են քննադատել պետերին, որ բանվորները շահագրգռված են և
ակտիվորեն մասնակցում են տեխնիկական պրոգրեսին, արտադրության զար-
գացմանը և այլն։ Այդ պատճառով էլ իրականացվում են մի շարք կենցաղային
և սոցիալական միջոցառումներ, որոնց միջոցով ձեռնարկատերերն աշխատում
են ցույց տալ իրենց «բարեհոգությունն ու մարդկային վերաբերմունքը» բան-
վորների նկատմամբ, իրենց «մարդկային հարաբերությունները» բանվորների
հետ։

«Մարդկային հարաբերությունների» ծրագրի ու թեորիայի նպատակն է.
բանվորների անմիջական ընկալումից դուրս վանել այն փաստերը, որոնցում
առավել ցայտուն են դրսևորվում կապիտալիստական արտադրական հարաբե-
րությունները, քողարկել շահագործման երևույթը և բանվորների ու կապիտա-
լիստների անտագոնիստական հարաբերությունները ներկայացնել որպես ընդ-
հանուր նպատակ հետապնդող աշխատանքային համագործակցություն։

## 2

ԱՌԱՋԻՆ անգամ մարդկության պատմության մեջ, լիակատար մարդասի-
րական հարաբերությունների համար անհրաժեշտ պայմաններ է ստեղծում սո-
ցիալիզմը։ Այդ հարաբերություններն ամենից առաջ պայմանավորվում են ար-
տադրության միջոցների մասնավոր սեփականության ոչնչացմամբ և դրա վրա
հենվող մարդու կողմից մարդու շահագործման բոլոր ձևերի վերացմամբ։ Նր-
րանց հիմքն արտադրության միջոցների հանրային սեփականությունն է և շա-
հագործումից ազատ աշխատավորների սոցիալիստական արտադրական հա-
րաբերությունները։ Կապիտալիզմի պայմաններում մասնավոր սեփականու-
թյունն ու մարդու կողմից մարդու շահագործումը սերտորեն կապված են մար-



դու կողմից մարդու ոչնչացման (պատերազմի) պրոբլեմի հետ։ Սոցիալիզմի
համար բնորոշն աշխատանքի ու խաղաղության օրգանական միասնությունն է,
որտեղ առարկայացած աշխատանքը չի իշխում կենդանի աշխատանքի վրա,
և մարդը չի օտարվում ինչպես կապիտալիզմի ժամանակ։

Սոցիալիզմի պայմաններում մարդասիրական հարաբերությունները բարձ-
րանում են մինչ այդ չտեսնված նոր որակական աստիճանի։ Նրանք դառնում
են լիարյուն, խոր, համակողմանի, մասշտաբներով աննախադեպ և հարատև,
դրանց էությունն արտահայտվում է «ամեն ինչ մարդու բարօրության համար»
սկզբունքում։ Սոցիալիստական մարդասիրական հարաբերություններն իրենց
տնտեսական հիմքով, օբյեկտիվ ռեալականությամբ, գիտական, դասակարգա-
յին ու համամարդկային բնույթով արմատապես տարբերվում են մինչև այդ
եղած բոլոր մարդասիրական հարաբերություններից։

Սոցիալիստական մարդասիրական հարաբերությունների գերագույն սկզբ-
բունքը բոլոր ազգերի և ռասաների աշխատավոր մասսաների լրիվ ազատա-
գրումն է սոցիալական ստրկությունից, մարդու իրական ազատագրումը և
իրավահավասարությունը, անհատի բազմակողմանի զարգացման անհրաժեշտ
պայմանների ստեղծումը։ Այդ հարաբերություններում են միայն, ըստ արժան-
վույն, գնահատվում մարդկային աշխատանքը, ազնվությունը և առաքինու-
թյունը։ Մարդը դիտվում է որպես ամենաթանկ կապիտալ և ազատվում աստ-
ծո և մյուս գերբնական ուժերի ողորմածությունից։

1958 թ. մարտին ֆրանսիական «Ֆիգարո» թերթի թղթակից Գրուսարի
հետ ունեցած իր զրույցում Ն. Ս. Խրուշչովը նշեց. «Հաճախ մեր, կոմունիստ-
ների մասին շատ են դատարկաբանում, ապացուցում են, որ եթե մարդիկ չեն
հավատում աստծուն, որին հավատացյալներն իսկ պարզ չեն պատկերացնում,
ապա նրանք չեն կարող առաջնորդվել հումանիզմի վեհ զգացմունքներով։ Բայց
կոմունիստներն ամենահումանիստ մարդիկն են, որովհետև նրանք պայքարում
են ոչ թե նրա համար, որպեսզի իրենք լավ ապրեն... Մենք գտնում ենք, որ
յուրաքանչյուր մարդ ունի աշխատանքի, լավ կյանքի իրավունք, որը մարդկա-
յին հասարակությունը կարող է ստեղծել բոլորի համար։ Մենք կողմնակից ենք
մարդկանց և ժողովուրդների իսկական իրավահավասարության։ Մի՞թե այդ
հումանիզմի արտահայտություն չէ։ Հոգատարություն կենդանի մարդու, հա-
սարակության նկատմամբ, որի մեջ ապրում ես, հոգատարություն ժողովրդի
կյանքի նկատմամբ՝ ահա մեր իդեալները, ահա մեր համոզմունքը»։

Սոցիալիստական մարդասիրական հարաբերությունները մարդկանց ազա-
տում են նյութական կարիքից, քաղաքական և կրոնական ճնշումից, սոցիալա-
կան ու ազգային անհավասարությունից։ Նրանք ոչնչացնում են դարավոր հա-
կադրությունը գյուղի ու քաղաքի, ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև,
արմատապես փոխում մարդկանց աշխատանքի պայմաններն ու բնույթը։ Սո-
ցիալիստական մարդասիրական հարաբերությունների պայմաններում մարդու
գոյավիճակը, հեղինակությունը, պատիվն ու արժանապատվությունը որոշվում
են ոչ թե նրա սոցիալական ծագմամբ, ունեցվածքով կամ սեռով, այլ աշխա-
տանքով և ընդունակություններով։ Այստեղ աշխատանքը հարստանում է նոր
բովանդակությամբ, մեծանում է նրա հասարակական նշանակությունը, այն
ձեռք է բերում նոր բարոյական շարժառիթներ, դառնում մարդու անհրաժեշտ
բնական պահանջ, անհատի զարգացման ու դաստիարակման միջոց, խղճի,
պատվի ու փառքի գործ, ուրախության ու երջանկության աղբյուր։

Սոցիալիստական մարդասիրական հարաբերությունների բնորոշ առանձնահատկություններից մեկը նրանց համընդհանրությունն է:

Սոցիալիզմի պայմաններում մարդասիրական հարաբերություններն ամենից առաջ դրսևորվում են կոմունիստական պարտիայի և սովետական պետության դեպի ժողովուրդն ունեցած հոգատար վերաբերմունքով՝ նրանց ամբողջ ներքին քաղաքականության մեջ: Այստեղ մարդը հանդես է գալիս որպես արտադրության նպատակ և ամեն ինչ արվում է նրա բազմակողմանի պահանջները բավարարելու համար: Պարտիան ու կառավարությունն իրենց ամբողջ գործունեության ընթացքում առաջնորդվում են ժողովրդի շահերին ծառայելու սրբազան սկզբունքներով և անում են ամեն ինչ՝ աշխատավորների նյութական բարեկեցությունն ու կուլտուրական մակարդակը բարձրացնելու համար: Միայն վերջին 6 տարում նոր բնակարաններ են ստացել և իրենց բնակարանային պայմանները բարելավել են 75 միլիոն սովետական քաղաքացիներ՝ երկրի բնակչության գրեթե մեկ երրորդը: Մեր ռեսպուբլիկայում վերջին մեկ տարում շահագործման հանձնվեց 7 հազար բնակարան, ինչպես նաև 17 010 աշակերտական տեղով դպրոցներ ու գիշերօթիկ դպրոցներ:

Սովետական պետությունը հասարակական ֆոնդերից վճարում է բնակարանների պահպանման բոլոր ծախսերի երկու երրորդը, ժողովրդի ուսման, բուժման, գրադարանների, ակումբների, սանատորիաների և հանգստի տների պահպանման բոլոր ծախսերը, ծերության ու անաշխատունակության թոշակները, մսուրներում և մանկապարտեզներում երեխաներին պահելու ծախսերի 70—90 տոկոսը և այլն: Օրեցօր ավելանում են աշխատավորների ռեալ եկամուտները, բարելավվում նրանց աշխատանքային ու կենցաղային պայմանները, հասարակական սննդի կազմակերպման գործը, կրճատվում է աշխատանքային օրվա տևողությունը, ավելանում արտաաշխատանքային ժամանակը: Հսկայական միջոցներ են ձեռք առնվում արտասահմանից սովետական հայրենիք վերադառնալ ցանկացող մարդկանց նվիրական ցանկությունն իրականացնելու ուղղությամբ:

Սոցիալիստական մարդասիրական հարաբերությունները դրսևորվում են մեր պարտիայի, կառավարության ու սովետական մարդկանց՝ մյուս երկրների, տարբեր ազգերի ու ժողովուրդների նկատմամբ ցուցաբերած վերաբերմունքում: Մարդասիրական են սոցիալիստական երկրների հարաբերությունները միմյանց, կապիտալիստական, գաղութային ու կախյալ երկրների աշխատավորների նկատմամբ: Սոցիալիստական լագերի երկրների եղբայրական ժողովուրդների միջև ստեղծվել են սոցիալական խոր համերաշխության, բազմակողմանի համագործակցության, անշահախնդիր փոխադարձ օգնության ու համախմբվածության վրա հիմնված սկզբունքորեն նոր, մարդասիրական հարաբերություններ: Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորմամբ սովետական մարդկանց հումանիզմը մարմնավորվում է ինչպես իրենց հայրենիքի, այնպես էլ սոցիալիստական երկրների ամբողջ համագործակցության նկատմամբ ունեցած նվիրվածության ու հավատարմության մեջ: Սոցիալիստական մարդասիրությունը պահանջում է՝ հավատարիմ լինել կոմունիզմի գործին, ամրապնդել ու պահպանել սոցիալիստական երկրների ժողովուրդների միասնությունը, բարեկամությունն ու եղբայրությունը, անհանդուրժողականություն դրսևորել ազգային ու ռասայական անիրավահավասարության նկատմամբ: Մարդասիրության վառ արտահայտություն է երկու սիստեմների խաղաղ գոյակցության, ինչպես նաև Սովետական Միության արտաքին քաղաքականության լենինյան սկզբունքների կենսագործումը:

Սոցիալիստական մարդասիրությունն արտահայտվում է պարտիայի, պետության, ժողովրդի և հասարակական ունեցվածքի նկատմամբ սովետական մարդկանց վերաբերմունքում, պարտիայի և կառավարության որոշումները կատարելու ուղղությամբ նրանց հայրենանվեր գործերում, հերոսական աշխատանքում, ծանր փորձությունների ժամին, հայրենիքը պաշտպանելիս... Սոցիալիստական մարդասիրության փայլուն դրսևորումն են Ալեքսանդր Մատրոսովի և Հունան Ավետիսյանի, Վալենտինա Գագանովայի, Նադեժդա Զագլադայի և այլոց սխրանքները: Սովետական մարդկանց օտար է քաղքենու անտարբերությունը հասարակական կյանքի բոլոր երևույթների նկատմամբ, բացի իր անձնական հանգստությունից, որի գոյությունը Վիլյամ Սարոյանն իրավամբ համարում է «աշխարհի մեջ ժամանակի վատնում»: Սովետական մարդու ազատ կամքն արմատապես տարբերվում է մասնավոր սեփականատիրոջ ազատ կամքից, որը Մարքսի խոսքերով ասած, «որպես տաժանակիր գամված է իր մանր ու եսամոլական շահերին»: Այդ մասին է վկայում մեր երկրում տարեցտարի ավելի ու ավելի մասսայական դարձող կոմունիստական աշխատանքի շարժումը, որին այսօր մասնակցում է ավելի քան 23 միլիոն մարդ:

Մարդասիրական են սովետական մարդկանց փոխհարաբերությունները՝ փորձությունների ժամանակ, աշխատանքում, ուսման մեջ, կենցաղում: Այստեղ էլ հենց դրսևորվում է անհատի և հասարակության, անհատի և կոլեկտիվի, անհատի և ընտանիքի մարդասիրական փոխհարաբերությունը: Սովետական մարդկանց հարաբերությունների բնորոշ գիծը կոլեկտիվիզմն է, որն օբյեկտիվորեն բխում է սոցիալիստական սեփականությունից և որին մարդիկ սովորում են ամենավաղ հասակից: Սովետական մարդն իր կյանքի հարուստ փորձով համոզված է, որ առանց մարդասիրության, առանց հասարակության մյուս անդամների երջանկության, չի կարող լինել իսկական անձնական երջանկություն: Դրա համար էլ մեր երկրում հասարակությունը նախատինքի ու պարսավանքի է ենթարկում ինքնահավան սեփականատիրական ինդիվիդուալիզմի և «ստորության հարազատ հայրը հանդիսացող անձնական էգոիզմի» (Մ. Գորկի) ամեն մի արտահայտություն:

Սոցիալիստական մարդասիրական հարաբերություններում մարդկանց անձնական շահը ներարկված է հասարակականին, զգացմունքները՝ բանականությանը, բնական պահանջները՝ բարոյական նորմերին, իսկ իրավունքներն ու պարտականությունները գտնվում են լիակատար համապատասխանության մեջ: Մեր ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի տարբեր բնագավառներում աշխատող մասնագետների մեծ մասը միշտ մտածում է ապրել այնպես, որ հասարակությանը պարտք չմնա, հասարակությանը տա շատ ավելին, քան վերցնում է նրանից:

Սոցիալիստական մարդասիրության ամենաբնորոշ կողմերից մեկը — կանանց նախկին իրավազուրկ և ճնշված վիճակից ազատելն ու տղամարդկանց իրավահավասար դարձնելն է: Դա հասարակության զարգացման և մարդասիրության պատմության մեջ արմատական հեղաշրջում էր, որը հնարավորություն տվեց կանանց՝ ակտիվ մասնակցելու հասարակական աշխատանքներին և բարձրացնելու իրենց արժանապատվությունը, ինքնասիրությունը, պատիվը, հասարակական դերը: Արմատապես փոխվեցին կանանց ու տղամարդկանց հա-

րաբերությունները նաև ընտանիքում, նրանք դարձան լիակատար մարդասիրական: Դրա հիման վրա արմատապես փոխվում է նաև ծնողների դեպի երեխաները և երեխաների՝ դեպի ծնողներն ունեցած վերաբերմունքը:

Գիտակցված ինքնասիրությունն է առաջնորդում մարդուն, երբ նա առողջ բանականությամբ կարողանում է հրաժարվել բնազդային գործողություններից, գերի չի դառնում իր զգացմունքներին, կարողանում է հսկել և չափավորել դրանք: Երբ մարդն անխնա չի վատնում իր առողջությունը, անտեղի և անիմաստ չի շռայլում իր ժամանակը, ֆիզիկական և հոգևոր ուժերը, անձնական կյանքը դարձնում է իմաստավորված, մեծացնում է իր, որպես անհատի, հասարակական և բարոյական նշանակությունը: Բոլոր ժամանակների ամենախոշոր հումանիստը՝ Վ. Ի. Լենինը, բազմիցս նշել է, որ մարդու առողջությունը զուտ անձնական գործ չէ, որ այն միաժամանակ հասարակական է, պետական և դրա նկատմամբ միշտ պետք է ցուցաբերել մեծագույն հոգատարություն: Խոշոր բնագետ Չարլզ Դարվինն ասում էր, որ «եթե մարդ օրվա ընթացքում գեթ կես ժամ աննպատակ է կորցնում, նա դեռ մարդ կոչվելու բարոյական իրավունք չունի»:

Սոցիալիստական մարդասիրական հարաբերությունները նպատակասլաց են, ենթարկված մարդկության ամենավեհ նպատակին՝ կոմունիստական հասարակարգի կառուցմանը: Դրա հետ մեկտեղ մեր մարդասիրությունը ժխտում է «նպատակն արդարացնում է միջոցը» ճիզվիտական սկզբունքը, որը հանդիսանում է ամեն տեսակ ավանտյուրիզմի «թեորիական» հիմնավորումը: Ամենամարդասիրական նպատակի՝ կոմունիզմի իրականացումն անհրաժեշտաբար ենթադրում ու պահանջում է համապատասխան մարդասիրական միջոցների կիրառում: Դրա ամենալավ ապացույցը մեր պարտիայի և կառավարության ներքին ու արտաքին քաղաքականությունն է:

Մարդասիրական ճարաբերությունները սոցիալիզմի պայմաններում անճատի բազմակողմանի զարգացման անճրաժեշտ նախապայմանն են: Սովետական մարդը բարի է ու մեծահոգի, նա սիրող է ու կարեկցող: Բայց դրանք պայքարող մարտիկի զգացմունքներ են (սեր, բարություն ու մեծահոգություն): Իսկական սերը մարդու նկատմամբ միաժամանակ ենթադրում է հասարակական պահանջկոտություն, պատասխանատվություն մարդու և նրա վարքագծի համար: Սոցիալիստական մարդասիրությունն անսկզբունք բարություն չէ բոլորի նկատմամբ և ոչ էլ համընդհանուր ու վերացական սեր քարոզ: Այն ունի իր իմաստն ու նպատակը: Նրա բովանդակությունը դասակարգային է, իսկ էությունը համամարդկային: Սոցիալիստական մարդասիրությունն ուղղված է կոմունիստական հասարակարգի կառուցման վեհ նպատակին: Այդ իսկ պատճառով նրան խորթ են կեղծ, քաղքենիական բարեպաշտությունն ու դասակարգային անտարբերությունը: Նրա հրամայական պահանջն է՝ ատելություն և անհաշտվողականություն կոմունիզմի գործի բոլոր տեսակի դասակարգային թշնամիների նկատմամբ: Այդ ատելությունն ազնիվ է և հանդիսանում է մեր մարդասիրության օրգանական շարունակությունը:

## 3

Մեր երկրում մարդասիրական հարաբերությունների զարգացումը մեծ վնաս կրեց անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում:



ՍՄԿԿ XX և XXII համագումարները բացահայտեցին և դատապարտեցին իր ամբողջ էությամբ հակամարդասիրական անհատի պաշտամունքը և ստեղծեցին պայմաններ սոցիալիստական մարդասիրական հարաբերությունների հետագա կատարելագործման համար: Գնալով ընդլայնվում և խորանում է մեր կյանքի դեմոկրատացումը և ամեն ինչ արվում է սովետական մարդուն անհատի պաշտամունքի ժամանակաշրջանի ազդեցությունից և հետևանքներից ձերբազերծելու համար:

Սոցիալիստական մարդասիրությունն ուղղված է մարդկանց արատներից ամենավատի՝ էգոիզմի դեմ, ինչպես նաև հնից եկող նախապաշարմունքների հետ կապված մարդկանց բարոյական նորմերի և սովորությունների դեմ: Իսկական մարդասիրությունը պահանջում է քննադատական և զգույշ վերաբերմունք մարդկանց, ազգերի ու ժողովուրդների նախկինից մնացած սովորությունների ու բարոյական նորմերի նկատմամբ: Այսպես, օրինակ, մեր օրերում մարդասիրական չեն և, հետևաբար, նաև խանգարում են մեր հասարակության առաջընթացին մի շարք այնպիսի սովորություններ, որոնք կապված են մասնավոր սեփականության, հին կենցաղի, կրոնի, նախապաշարմունքների, հարսանեկան ու թաղման ծեսերի հետ:

Մշակելով նոր ծրագիր՝ պարտիան առանձնահատուկ ուշադրություն նվիրեց կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսին, որն իրենից ներկայացնում է մարդասիրական բարոյական սկզբունքների մի ամբողջություն: Ժողովրդական լայն մասսաների մոտ այդ ինտերնացիոնալ սկզբունքների արմատավորումը միաժամանակ պահանջում է պայքարել հին բարոյական սկզբունքների և մարդկանց կենցաղում եղած նախապաշարմունքների դեմ: Պարտիան ելնում է այն բանից, որ հումանիստ լինելու համար կոմունիստական բարոյականության մարդասիրական սկզբունքները գիտենալը դեռ բավական չէ: Անհրաժեշտ է, որ մարդիկ դաստիարակվեն ու գործեն այդ սկզբունքներով, որ մարդասիրական վարքագիծը դառնա յուրաքանչյուրի ներքին պահանջմունքը, սովորական վարվելակերպը, ներքին համոզմունքը:

Կոմունիստական բարոյականության մարդասիրական սկզբունքները հանդիսանում են ապագայի համամարդկային հարաբերությունների խորհրդանիշը:



## ՌՍԴԲՊ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

# ԼԵՆԻՆԻ ՍՏԵՂԾԱԾԸ

Վ. ՍՏԵՊԱՆՈՎ

Մենք՝ Սովետական Միության կոմունիստական պարտիայի անդամներս ու թեկնածուներս, տասը միլիոն ենք: Երբ պարտիան իշխանության գլուխ անցավ և ձեռնամուխ եղավ սոցիալիստական վերափոխումների, նա իր շարքերում ուներ ընդամենը 300 հազար մարդ: Այդ երկրի ամբողջ բնակչության համեմատ այնքան քիչ էր, որ պարտիայի հիմնադիր Լենինը դա պատկերավոր կերպով անվանեց մի փոքրիկ հատիկ: Հաստատ հավատով լցված դեպի պարտիայի կենսական ուժերը, դեպի ժողովրդի մեծամասնության աջակցությունը, նա ասում էր. «Այդ փոքրիկ հատիկը իրեն խնդիր է դրել վերափոխել ամեն ինչ, և կվերափոխի»:

Գոյություն ունի մի հնադարյան առասպել այն մասին, թե ինչպես մարդիկ սովորեցին հացահատիկ ցանել: Մի անգամ մարդն իր բնակարանի մոտ ձեռքից գցեց իր գտած փոքրիկ հատիկը: Հատիկն ընկավ նպաստավոր հողի մեջ, արմատ արձակեց, ծիլ տվեց, ցողուն ունեցավ և հասկակալեց: Այդ հատիկից ծայր առավ երկրագնդի ոսկեհասկ արտը, մարդկությանը բերելով հաց՝ կյանքի աղբյուրը…

Վլադիմիր Իլյիչ Լենինը, որի ծննդյան 93-րդ տարեդարձը նշեց մարդկությունը, մեծ սերմնացան էր: Նրա ցանած սերմերն ընկան մեր երկրի բարեբեր հողի մեջ, տարածվեցին աշխարհով մեկ: Լենինի հիմնադրած կոմունիստական պարտիան, որին նա սիրով անվանում էր փոքրիկ հատիկ, դարձավ արդիականության այն հզոր ուժը, որը կանգնած է սովետական մեծ պետության գլուխ, ղեկավարում է աշխարհում առաջին կոմունիստական հասարակարգի կառուցումը:

Լենինյան պարտիայի ազդեցության տակ, նրա օրինակով առաջացան բոլոր կոմունիստական ու բանվորական պարտիաները: Այժմ այդպիսի պարտիաներ կան գրեթե 90 երկրներում, որոնք միավորում են ավելի քան 42 միլիոն կոմունիստների, ներկայացնում մարդկության մեծամասնությունը կազմող աշխատավորների շահերը, պայքարում են Մարքսի և Էնգելսի՝ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» փորձված մարտական նշանաբանով:

Մենք ապրում ենք պատմության ամենամեծագույն բեկման ժամանակաշրջանում, երբ կատարվում է անցում կապիտալիզմից սոցիալիզմին: Այդ բեկման գծերն ու հատկանիշները երևում են ամենուրեք և ամեն ինչում: Դրանք երևում են ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հաջողությունների, սոցիալիստական մյուս երկրների նվաճումների, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդման մեջ, ազգային-ազատագրական շարժման վերելքի,



կապիտալի երկրներում դասակարգերի պայքարի սրման, համաշխարհային կապիտալիզմի ուժերի անընդհատ սաստկացող անկման և բուրժուական գաղափարախոսության խրոնիկական ճգնաժամի մեջ:

Պատմությունն անում է և անելու է բարդ, կտրուկ շրջադարձեր, չնախատեսված գալարներ և զիգզագներ: Բայց այդ ամենի մեջ արտահայտվում է մի երկաթյա տենդենց, Վ. Ի. Լենինի կանխագուշակած մի ընդհանուր օրինաչափություն՝ աշխարհն անշեղորեն, քայլ առ քայլ ընթանում է դեպի կոմունիզմ: Սեփական հակասությունները տեղում են կապիտալիզմի վրա, ինչպես «Բիրնամի անտառը»՝ ոճրագործությունների մեջ թաղված Մակբեթի վրա, կանխագուշակելով նրա անխուսափելի կործանման ճակատագրական ժամը:

Ոչինչ և ոչ ոք չի կարող փոխել պատմության հաղթական առաջընթացը: Կոմունիստական պարտիաները գլխավորում են համաշխարհային սոցիալական առաջադիմությունը, նրա համար ճանապարհ են բացում, արագացնում հասարակական զարգացումը, մոտեցնելով մարդկության պայծառ գալիքի՝ կոմունիզմի հաղթանակը:

Քաղաքական պարտիաները նույնքան հին են, որքան դասակարգերը, որքան պետությունները: Լենինիզմը բացահայտեց պարտիաների իսկական բովանդակությունը, պարտիականության իմաստը, ցույց տալով, որ դասակարգային բաժանման վրա հիմնված հասարակարգում թշնամի դասակարգերի պայքարն անխուսափելիորեն դառնում է քաղաքական պայքար, և որ դասակարգերի պայքարի ամենալիակատար արտահայտությունը պարտիաների պայքարն է: Բուրժուական դեմոկրատիան ծնեց պառլամենտարիզմի պայմաններին հարմարեցված քաղաքական պարտիայի տիպ: Այդպիսի պարտիաների ամբողջ գործունեությունը հանգում է ընտրական պայքարին, պառլամենտներում մեծամասնություն նվաճելուն, զանազան կառավարական կոմբինացիաների գոյացմանը, չդիպչելով հասարակարգի հիմքերին:

Լենինյան պարտիայի ծնունդով պատմական թատերաբեմ բարձրացավ նոր տիպի պարտիա: Նա մյուս բոլոր քաղաքական պարտիաներից տարբերվում էր իր նպատակով, գաղափարախոսությամբ, աշխարհայացքով, պայքարի միջոցներով ու մեթոդներով, կազմակերպական կառուցվածքով, դասակարգային պատկանելությամբ: Բանվոր դասակարգը, աշխատավորներն առաջին անգամ ունեցան իրենց սեփական պարտիան, որը պաշտպանում է նրանց արմատական շահերը:

Ինքը՝ պատմությունը, օրակարգի մեջ դրեց այնպիսի պարտիայի ստեղծման անհրաժեշտությունը, որը կազմակերպեր բանվոր դասակարգի ու նրա դաշնակիցների ուժերը, նրանց քաղաքական առաջնորդը լիներ ռևոլյուցիոն պայքարում, կարողանար բուրժուազիայից գրավել և իր ձեռքում պահել պետական իշխանությունը, ժողովրդի աշխատանքն ու եռանդը մոբիլիզացներ նոր հասարակարգի ստեղծման համար, գլխավորեր սոցիալական առաջադիմությունը, հասարակական զարգացումը: Այդպիսի պարտիա դարձավ Լենինի ստեղծած բոլշևիկների պարտիան:

Արտասահմանի ռեակցիոն պրոֆեսորներն այժմ հատկապես եռանդագին մասնագիտանում են ՍՄԿՊ պատմության նենգափոխման, կոմունիզմի գաղափարական հիմունքների խեղաթյուրման մեջ: Հրատարակված են ԱՄՆ-ում Շապիրոյի և Արևմտյան Գերմանիայում Շարնդորֆի կեղտոտ գրքույկները, որոնք լի են մեր պարտիայի հասցեին ուղղված զրպարտիչ հերյուրանքներով,

պատմական հանրահայտ փաստերի խարդախ խեղաթյուրումներով: Այդ կեղծգիտական պատմաբանների նպատակը պարզ է՝ բոլոր միջոցներով խոչընդոտել Սովետական Միության կոմունիստական պարտիայի միջազգային հեղինակության բարձրացմանը, մարդկանց մտքերի վրա մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ուժեղացող ազդեցությանը: Սույն «աշխատությունների» իմաստը հանգում է կոմունիստներին իբրև համաշխարհային տիրապետության ձգտող դավադիրների մի նեղ աղանդ ներկայացնելու պրիմիտիվ, վաղուց մաշված պրիոմին:

Յուրաքանչյուր տողից աչքի զարնող տգիտություն՝ ահա այդ բոլոր շապիրոների, շարնգորֆների և նրանց նմանների խզբզանքների բնորոշ գիծը: Նրանցից յուրաքանչյուրի մասին գերմանական բանաստեղծ Հայնրիխ Հայնեի խոսքերով կարելի էր ասել՝ և իր ամբողջ տգիտությունը նա ձեռք է բերել սեփական ուժերով:

Այդ բոլոր հերյուրանքներից հետք անգամ չի մնում, երբ դիմում ենք ռեալ, իրական փաստերին: Կոմունիստական պարտիաներն ամենամասսայական պարտիաներն են, նրանց ուժը ժողովրդական լայն զանգվածների հետ սերտ ու մշտական կապն է և նրանց վրա հենվելը. Նրանք չունեն և չեն կարող ունենալ աշխատավորների շահերից զատ որևէ շահ: Նրանք ամենաանկեղծ պարտիաներն են, որոնք նողկալի գործ են համարում թաքցնել իրենց հայացքները, նպատակներն ու ձգտումները և որոնք դրանք շարադրում են ամբողջ աշխարհի առջև: Եթե դա չլիներ, կոմունիստական պարտիաներն այդպիսի հաղթանակներ չէին ունենա, և նրանց մարքս-լենինյան ուսմունքը այդպիսի լայն տարածում չէր գտնի բոլոր երկրներում: Կոմունիստական պարտիաների կյանքի և գործունեության կարևորագույն սկզբունքներն են՝ լայն դեմոկրատիզմը, աշխատանքի թերությունների քննադատությունը:

Լենինի հիմնադրած Սովետական Միության կոմունիստական պարտիան հերոսական պայքարի և լարված աշխատանքի անօրինակ ուղի է անցել: Ռևո-

# ՍՄԿՊ-ն թվերով

Սկիզբ առնելով մարքսիստական փոքր խմբակներից, Սովետական Միության կոմունիստական պարտիան անցած վաթսուն տարում դարձել է ավելի քան տասը միլիոնանոց մի հզոր բանակ՝ զինված մարքսիզմ-լենինիզմի գաղափարներով, սերտորեն կապված ժողովրդի հետ:

Ստորև հրապարակվող վիճակագրական նյութերը որոշ պատկերացում են տալիս պարտիայի կազմի քանակական ու որակական փոփոխությունների մասին (ՍՄԿՊ անդամների թիվը ցույց է տրված ըստ պարտիական համագումարների):

ՌՍԴԲ(բ)Պ Համառուսաստանյան VII (Ապրիլյան) կոնֆերանս (1917 թ. մայիս)—80.000 անդամ.

ՌՍԴԲ(բ)Պ VI համագումար (1917 թ. օգոստոս)—մոտ 240.000 անդամ.

ՌԿ(բ)Պ VII համագումար (1918 թ. մարտ)—մոտ 170.000 անդամ: Այդ ժամանակ պարտիայում հաշվվում էր մոտ 300.000 անդամ, սակայն համագումարի շուտափույթ հրավիրման և գերմանական զորքերի կողմից երկրի տերիտորիայի որոշ մասի օկուպացիայի պատճառով, բազմաթիվ պարտկազմակերպություններ չկարողացան համագումարին ուղարկել իրենց պատգամավորներին:

ՌԿ(բ)Պ VIII համագումար (1919 թ. մարտ)—313.766 անդամ.

ՌԿ(բ)Պ IX համագումար (1920 թ. մարտ—ապրիլ)—611.978 անդամ.

ՌԿ(բ)Պ X համագումար (1921 թ. մարտ)—732.521 անդամ.

ՌԿ(բ)Պ XI համագումար (1922 թ. մարտ—ապրիլ)—532.000 անդամ.



լյուցիոն պայքարի, տնտեսական և կուլտուրական շինարարության այդպիսի բազմահարուստ փորձ չունի աշխարհի ոչ մի պարտիա: Դառնալով աշխարհում առաջին սոցիալիստական պետության կառավարող պարտիան, նա աճել, բարձրացել է, զարգացել ամբողջ երկրի, պետության, ժողովրդի հետ միասին:

Մեր պարտիան ստեղծվեց և երկար տարիներ բանվոր դասակարգի պարտիան էր նրա առաջավոր ջոկատը: Այժմ այն դարձել է ամբողջ սովետական ժողովրդի պարտիան, նրա փորձված մարտական ավանգարդը: Պարտիայի դասակարգային էության այդ փոփոխության մեջ իր արտահայտությունն է գտել սոցիալիստական հարաբերությունների զարգացման օբյեկտիվ ընթացքը՝ շահագործող դասակարգերի վերացումը, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի շահերի լիակատար միասնությունը, որոնք միասին նոր կյանք են կառուցում: Մեր ամբողջ ժողովուրդը կանգնեց բանվոր դասակարգի և նրա պարտիայի կողմը, ամբողջովին ընդունեց մարքս-լենինյան գաղափարախոսությունը, պարտիայի գործերն ու նպատակներն սկսեց համարել իր հարազատ գործերն ու նպատակները:

Պարտիայի ստեղծման ժամանակ, բնութագրելով այն հիմունքները, որոնց վրա միավորվում էին համախոհների առաջին խմբերը, որոնք հետո կազմեցին պարտիայի միջուկը, Լենինը արտահայտչականության հատուկ ուժով ընդգծում էր, որ նրանք միացել և ամուր իրար ձեռք են բռնել կամովին, ազատակամ ընդունած որոշմամբ՝ թշնամիների դեմ անհաշտ պայքար մղելու համար: Լենինյան սկզբունքները՝ համախոհությունը, կամավորությունը, թշնամիների նկատմամբ անհաշտությունը միշտ եղել են, և կլինեն պարտիայի սրբազան սկզբունքները: Սովետական Միության կոմունիստական պարտիան կամավոր հիմունքներով միավորում է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ինտելիգենցիայի առաջավոր, առավել գիտակից մասը:

Դժվար է պատկերացնել, որ եղել է ժամանակ, երբ մեր ժողովուրդը չու-

ՌԿ(բ)Պ XII համագումար (1923 թ. ապրիլ)—386.000 անդամ. իրականացնելով X համագումարի որոշումները, 1921 և 1922 թթ. պարտիան անցկացրեց իր շարքերի զտում: Դրանով պետք է բացատրել պարտիայի անդամների թվական կազմի նվազումը:

ՌԿ(բ)Պ XIII համագումար (1924 թ. մայիս)—735.881 անդամ և 127.000 անդամության թեկնածու. XII համագումարից հետո լենինյան կոչով պարտիան համալրվեց գլխավորապես առաջավոր բանվորների հաշվին: Պարտիան աճեց համարյա երկու անգամ:

ՀամԿ(բ)Պ XIV համագումար (1925 թ. դեկտեմբեր)—643.000 անդամ և 445.000 անդամության թեկնածու.

ՀամԿ(բ)Պ XV համագումար (1927 թ. դեկտեմբեր)—887.233 անդամ և 348.957 անդամության թեկնածու.

ՀամԿ(բ)Պ XVI համագումար (1930 թ. հունիս—հուլիս)—1.260.874 անդամ և 711.609 անդամության թեկնածու. պարտիայի կազմի մոտ կեսը կազմում էին հաստոցի բանվորները.

ՀամԿ(բ)Պ XVII համագումար (1934 թ. հունվար—փետրվար)—1.874.488 անդամ և 935.298 անդամության թեկնածու.

ՀամԿ(բ)Պ XVIII համագումար (1939 թ. մարտ)—1.588.852 անդամ և 888.814 անդամության թեկնածու.

ՍՄԿՊ XIX համագումար (1952 թ. հոկտեմբեր)—6.013.259 անդամ և 868.886 անդամության թեկնածու.

ներ պարտիա և նույնիսկ չէր հասկանում այդ բառը, որը ծագում է լատինական
pars (մաս) բառից։ Այժմ «պարտիա» բառը ամենահասկանալի, մոտիկ ու
հարազատ բառն է։ Պարտիան սովետական ժողովրդի ամենաառաջավոր և գի-
տակից մասն է։ Ամեն ոք հասկանում է, որ պարտիան նշանակում է ճշմար-
տություն, ուժ, հաղթանակ, պարտիան նա է, որը միշտ մտածում է քո մասին,
հոգ է տանում, պայքարում է և, Մայակովսկու խոսքերով ասած, միակն է, որը
քեզ չի դավաճանի։ Ինչ ասաց պարտիան, այդպես էլ կլինի։ Նա խոսքերը քա-
մուն չի տալիս։ Պարտիայի հեղինակությունն անառարկելի է։ Պայքարի և
ստեղծարար աշխատանքի երկար տարիների ընթացքում ժողովուրդը մտերմա-
ցավ, հարազատ դարձավ պարտիային, միաձուլվեց նրան։ Լենինյան կոմունիս-
տական պարտիան մեր ժողովրդի ամենամեծ, ամենաթանկարժեք նվաճումն է,
նա ժողովրդի բանականության, իմաստության, կամքի, եռանդի, ձգտումների
խտացումն է։

Պարտիան սովետական ժողովրդի հանրաճանաչ առաջնորդն է, կոմունիս-
տական շինարարության ղեկավարն ու կազմակերպիչը նրա բոլոր էտապներում
և քաղաքական, տնտեսական, գաղափարական ու կուլտուրական աշխատանքի
բոլոր ասպարեզներում։

Կոմունիզմի թշնամիները, փորձելով ապացուցել, թե իբր կոմունիստները
«վեր են կանգնած ժողովրդից», չեն հասկանում, չեն կարող հասկանալ և եր-
բեք չեն հասկանա մեր պարտիայի սոցիալական էությունը, այն, որ պարտիան
մի տեսակ արյունատար սիստեմ է՝ ընդմիշտ կապված օրգանիզմի հետ. նա
կյանք է տալիս այն հսկա օրգանիզմի յուրաքանչյուր նյարդին ու մկանին,
որը կոչվում է սովետական ժողովուրդ, սոցիալիստական հասարակություն։
Կոմունիստական պարտիայի հարյուր հազարավոր կազմակերպություն-
ներ և միլիոնավոր անդամներ գտնվում են մեր մեծ կառույցի բոլոր տեղա-
մասերում, անխոնջ ու անդուլ աշխատում են, կազմակերպում մասսաներին,
ուղղություն են տալիս և ոգեշնչում նրանց դեպի մեծ սխրագործություններ,

| | |
|---|---|
| ՍՄԿՊ XX համագումար | (1956 թ. փետրվար) — 6.795.896 անդամ և 419.609 անդա-մության թեկնածու. |
| ՍՄԿՊ XXI համագումար | (1959 թ. հունվար—փետրվար) — 7.622.356 անդամ և 616.775 անդամության թեկնածու. |
| ՍՄԿՊ XXII համագումար | (1961 թ. հոկտեմբեր) — 8.872.516 անդամ և 843.489 անդա-մության թեկնածու. |

1956 թ. հունվարի մեկից մինչև 1961 թ. հոկտեմբերի մեկը պարտիայի անդամության
թեկնածու են ընդունվել 3 միլիոն 63 հազար և ՍՄԿՊ անդամ՝ 2 միլիոն 539 հազար մարդ։
Պարտիայի XXII համագումարի ժամանակ կոմունիստների 52 տոկոսը բանվորներ ու կոլ-
տնտեսականներ էին։

Կոմունիստական պարտիայի անդամների և անդամության թեկնածուների կազմի 70
տոկոսը ծնվել է սովետական իշխանության տարիներին. կոմունիստների ավելի քան 70 տո-
կոսն զբաղված է նյութական արտադրության ոլորտում, ավելի քան երեք միլիոնն ունեն
բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթություն։

ՍՄԿՊ-ի ջոկատներից մեկը՝ Հայաստանի կոմունիստական պարտիան, 1920 թ. ապ-
րիլին իր շարքերում ուներ 3000, իսկ 1963 թ. առ մեկը ապրիլի՝ 95.000 անդամ-թեկնածու։

**Միջազգային կոմունիստական և բանվորական շարժումը թվերով**

Սկզբում տասնյակ ու հարյուրավոր, ապա հազարավոր ու միլիոնավոր մարդիկ, ոգե-
շնչված կոմունիզմի իդեալներով, գրոհի գնացին ընդդեմ հին աշխարհի։ Ավելի քան հար_



դեպի հերոսական աշխատանք հանուն լիակատար ու պայծառ հաղթանակի։
Ինչպիսի դժվարություններ էլ
Ինչպիսի բարդ գալարներ էլ անի պատմությունը, ինչպիսի դժվարություններ էլ
հանդիպեն սովետական ժողովրդի ճանապարհին, կոմունիստական պարտիան
միշտ գտնվում է աշալուրջ ղեկորդի իր պոստում։ Նա կատարելապես տիրապե-
տում է ղեկավարության արվեստին, ընդունակ է զգաստորեն հասկանալ ամեն
մի, ամենաբարդ իրադրությունը, միջոցներ գտնել դժվարությունները հաղթա-
հարելու համար, նա պարզ տեսնում է ճանապարհը և երբեք իր տեսադաշտից
դուրս չի թողնում Լենինի կողմից իր առջև դրված գլխավոր նպատակը, աներեր
ձեռքով դեպի այդ նպատակն է տանում նա Սովետական Միության պետական
նավը։

Վերջին ժամանակներս մի քանի գրական ստեղծագործություններում
բարձրացվում էր մի մտացածին պրոբլեմ — հայրեր և զավակներ։ Այն փոր-
ձում են արհեստականորեն մեր իրականություն փոխադրել XIX դարից, երբ
երկպառակություն կար ռևոլյուցիոն տրամադրված երիտասարդության և ավագ
սերունդների պահպանողականության միջև, երկպառակություն հետամնաց սո-
ցիալական կարգի և առաջավոր ռևոլյուցիոն մտքի միջև։ Նրանք, ովքեր ժա-
մանակակից պայմաններում «Հայրերի ու զավակների պրոբլեմի» անվան տակ
փորձում են երիտասարդությանը հակադրել ավագ սերունդներին, գիտակցա-
բար թե անգիտակցաբար լույս աշխարհ են հանում տրոցկիստական փտած,
ողորմելի գաղափարը, որը պարտիայի կողմից վաղուց ջախջախվել է և առհա-
վետ թաղվել։ Սերունդների, հայրերի և զավակների պրոբլեմը մեր պարտիայի
կողմից լիովին լուծված է։

Վերցնենք պարտիայի կազմը. Նրա անդամներ են բոլոր տարիքի մարդիկ՝
թե՛ նրանք, ովքեր դեռ Լենինի հետ դնում էին պարտիայի հիմքերը, թե՛ նրանք,
ովքեր գրոհում էին ինքնակալության վրա, մասնակցում Հոկտեմբերյան ռևո-
լյուցիային, առաջին հնգամյակների տարիներին կառուցում սոցիալիզմ, թե՛
բոլորովին երիտասարդ մարդիկ, ովքեր մեծացել են Հայրենական պատերազ-

կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնադրած «Կոմունիստների միությունը» միա-
յուր տարի առաջ, կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հիմնադրած «Կոմունիստների միությունը» միա-
վորում էր իր շարքերում մի քանի հարյուր մարդ. այժմ գրեթե 90 երկրներում կան 42,5
միլիոն կոմունիստներ։ Միջազգային կոմունիստական շարժումը վերածվել է մեր ժամանակի
ամենից ազդեցիկ քաղաքական ուժի, դարձել հասարակության առաջադիմության կարևորա-
գույն գործոնը։

**1917 թ. հոկտեմբեր**— Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի նախօրեին աշխար-
հում կար միայն մեկ իսկական մարքսիստական պարտիա՝ ՌԿ(բ)Պ-ն։

**1919 թ. մարտ**— Կոմունիստական երրորդ ինտերնացիոնալի I կոնգրեսին մասնակցում
էին 30 երկրների կոմունիստական պարտիաներ և ձախ սոցիալիս-
տական կազմակերպություններ, որոնք միավորում էին 400.000 մարդ։
Եվրոպայում, եթե չհաշվենք ներկայումս Սովետական Միության կազմի
մեջ մտնող ռեսպուբլիկաների կոմունիստական պարտիաները, կային
ընդամենը յոթ կոմպարտիա (Ավստրիա, Բուլղարիա, Գերմանիա, Հուն-
գարիա, Հունաստան, Հոլանդիա, Ֆինլանդիա)։ Ասիայում, Աֆրիկա-
յում, Ավստրալիայում կոմպարտիաներ չկային. ամերիկյան մայրցա-
մաքում գոյություն ուներ Արգենտինայի մարքսիստական պարտիան։

**1928 թվականին**— 46 պարտիա՝ 1.680.000 անդամներով, այդ թվում կապիտալիստական
երկրներում՝ 443.000 կոմունիստ.

**1935 թվականին**— 61 պարտիա՝ 3.141.000 անդամներով, այդ թվում կապիտալիստական
երկրներում՝ 785.000 կոմունիստ.

**1957 թվականին**— 75 պարտիա՝ 33 միլիոն անդամներով, այդ թվում կապիտալիստական

*միջ հետ։ Նրանք բոլորն էլ համախոհներ են, միևնույն գաղափարական համոզմունքների, միևնույն խոհերի մարդիկ։ Պարտիայի կազմի 70 տոկոսը սովետական իշխանության պայմաններում աճած մարդիկ են, երեկվա կոմերիտականները և երեկ չէ առաջին օրվա պիոներները։ Մի սերնդից մյուսը կատարվող այդպիսի անցումը նորմալ, բնական, մշտական պրոցես է։ Սերունդների միասնություն ու հաջորդականություն՝ ահա թե ի՛նչ գոյություն ունի մեր պարտիայի մեջ, ի՛նչն է բնորոշ ամբողջ երկրի համար, ամբողջ ժողովրդի համար։ Պարտիան սովետական ժողովրդի բոլոր սերունդների միակ ղեկավարն է, և նրա ղեկավարությունն անբաժանելի է։*

*Արվեստը ստեղծել է գեղարվեստական հոյակապ պատկերն այն դրոշի, որը մարտում իրար ձեռքից վերցնում են ընկածներին փոխարինելու եկող նորանոր մարտիկներ և հասցնում մինչև գագաթը։ Այդպես էլ մեր պարտիայի մեջ կոմունիստների մի սերնդին փոխարինելու են գալիս նոր, երիտասարդ սերունդներ, և մեծ Լենինի բարձրացրած դրոշը նրանց ձեռքին միշտ բարձր ու հպարտ ծածանվում է սովետական հայրենիքի վրա։*

*Բուրժուական պետության մեջ կառավարման եղանակների սիստեմն ունի մի խնդիր՝ խավարի մեջ, հնազանդության մեջ պահել շահագործվող մասսաներին։ Բուրժուազիան ստեղծում է նաև նեղ մասնագիտական պրոֆիլի, չինովնիկական սահմանափակություն ունեցող և միակողմանի՝ իր օգնականների «կադրերը»։*

*Սովետական պետականությունն այլ հիմքերի վրա է կառուցվում։* Սոցիալիստական պետությունը ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, երբ մասսաները ամեն ինչ գիտեն, ամեն ինչի մասին դատում են գիտակցաբար։ *Այդպիսի հասարակարգի գործերը կառավարելու համար հարկավոր են լայն կրթությամբ, մարքս-լենինյան գիտության բնագավառում հիմնական պատրաստություն ունեցող մարդիկ, ովքեր շատ խոր գիտեն իրենց պրոֆեսիան։ Գիտելիքների բոլոր ճյուղերի մեծաթիվ կադրերի դաստիարակումը միշտ եղել ու մնում է կոմունիստական պարտիայի հատուկ հոգատարության առարկան։ Ինչպես ծովը գիշեր-ցերեկ անդուլ կերպով հղկում է առափնյա քարերը, այնպես էլ պարտիան մշտապես, հմուտ ոսկերչի ջանասիրությամբ երիզ առ երիզ հղկում ու փայլեցնում է իր կադրերին։*

*Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետ կոմունիստների թիվն այժմ անցնում է երեք միլիոնից։ Բոլոր կոմունիստների ավելի քան 70 տոկոսն զբաղված է նյութական արտադրության ոլորտում՝ արդյունաբերության, շինարարության մեջ, տրանսպորտում, գյուղատնտեսության մեջ։ Պարտիայի կազմում կան բոլոր մասնագիտությունների, հանրօգուտ աշխատանքի բոլոր զբաղմունքի տեր մարդիկ։*

*Վաղուց արդեն մարդկության լավագույն մտածողները ուշադրություն են դարձրել հասարակության մեջ դաստիարակության կարևոր դերի վրա։ Բայց միայն մեր պարտիան առաջին անգամ այդ խնդիրը դրեց գործնական հիմքի վրա, իր անդամների դաստիարակությունը, բոլոր աշխատավոր մասսաներին գիտության ու կուլտուրայի լույսին հաղորդակից անելը դարձրեց իր գործունեության բաղկացուցիչ մասը և վիթխարի հաջողությունների հասավ։ Զուր չէ, որ արտասահմանյան օբյեկտիվ դիտորդները հրաշքների հրաշք են անվանում սովետական մարդկանց մասսայական դաստիարակությունն ու վերադաստիարակությունը կոմունիստական գաղափարախոսության ոգով։*

*ՍՄԿՊ-ն արդիականության վերափոխող, կենարար մեծ ուժն է։ Պարտիայի ներսում մշակվող ամբողջ լավագույնը՝ մարդկանց հարաբերությունները, գաղափարները, կյանքի բարոյական սկզբունքներն ու նորմերը, ինքնակառավարումը, կազմակերպվածությունը նա փոխադրում է հասարակության մեջ. պարտիայի ազդեցությունը տարածվում է երկրի սահմաններից հեռու։ Մեր պարտիայի հերոսական պատմությունը, անձնվեր, ստեղծագործական աշխատանքը, մարքսիզմ-լենինիզմին նրա հավատարմությունը ոգեշնչում են կոմունիզմի միլիոնավոր մարտիկներին ամբողջ աշխարհում։*

---

երկրներում՝ մոտ 4,6 միլիոն կոմունիստ.

1960 թվականին— 87 պարտիա՝ ավելի քան 36 միլիոն անդամներով, այդ թվում կապիտալիստական երկրներում՝ 5,3 միլիոն կոմունիստ։

1961 թվականին— 88 պարտիա՝ 40 միլիոն անդամներով, այդ թվում կապիտալիստական երկրներում՝ ավելի քան 5,3 միլիոն կոմունիստ։

Կոմունիստների թիվը կապիտալիստական երկրներում (ըստ աշխարհամասերի)

| *Աշխարհամասեր* | *1939 թ.* | *1957 թ.* | *1961 թ.* |
|---|---|---|---|
| Եվրոպա . . . | մոտ 500.000* | ավելի քան 2,5 մլն. | մոտ 3 մլն. |
| Ասիա . . . | ավելի քան 20.000* | ավելի քան 1,7 մլն. | մոտ 2,5 մլն. |
| Ամերիկա . . . | մոտ 180.000 | ավելի քան 215.000 | ավելի քան 250.000 |
| Աֆրիկա . . . | մոտ 5.000 | ավելի քան 20.000 | ավելի քան 50.000 |
| Ավստրալիա և Օվկիանիա | մոտ 5.000 | 6.500 | ավելի քան 7.500 |

* առանց ներկայումս սոցիալիստական սիստեմի մեջ մտնող երկրների

Կոմունիստների թիվն ըստ առանձին երկրների

Չինաստանի կոմունիստական պարտիա—ավելի քան 17 միլիոն (1961 թ. հուլիս).
Չեխոսլովակիայի կոմունիստական պարտիա—1.680.819 (1962 թ. հոկտեմբեր).



Լեհաստանի միացյալ բանվորական պարտիա—1.310.500 (1962 թ. հունվար).
Բուլղարիայի կոմունիստական պարտիա—528.674 (1962 թ. նոյեմբեր).
Հունգարիայի սոցիալիստական բանվորական պարտիա—512.000 (1962 թ. սեպտեմբեր).
Ռումինիայի բանվորական պարտիա—ավելի քան 900.000 (1962 թ. ապրիլ).
Գերմանիայի սոցիալիստական միասնական պարտիա—1,6 միլիոն (1963 թ. հունվար).
Կորեայի աշխատանքային պարտիա—1.311.000 (1961 թ. օգոստոս).
Վիետնամի աշխատավորների պարտիա—ավելի քան 540.000 (1961 թ.).
Կուբայի սոցիալիստական ռևոլյուցիայի միասնական պարտիա—մոտ 15.300 (1963 թ. ապրիլ).
Մոնղոլիայի ժողովրդա-ռևոլյուցիոն պարտիա—ավելի քան 44.000 (1961 թ. վերջին).
Հարավսլավիայի կոմունիստների միություն—ավելի քան մեկ միլիոն (1961 թ. կեսերին).
Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիա—34.372 (1963 թ.).
Ֆրանսիայի կոմունիստական պարտիա—ավելի քան 400.000 (1961 թ.).
Իտալիայի կոմունիստական պարտիա—մոտ 2 միլիոն (1962 թ. հուլիս).
Ինդոնեզիայի կոմունիստական պարտիա—ավելի քան 2 միլիոն (1962 թ. օգոստոս).
Ճապոնիայի կոմունիստական պարտիա—ավելի քան 100.000 (1962 թ. հուլիս).
Բրազիլիայի կոմունիստական պարտիա—մոտ 200.000 (1962 թ. կեսին).
Հնդկաստանի կոմունիստական պարտիա—մոտ 300.000 (1959 թ.).
Ֆինլանդիայի կոմունիստական պարտիա—52.658 (1963 թ. ապրիլ).

Քաջությունը, խիզախությունը, անձնվիրությունը, թշնամուց չվախենալը բոլոր ժամանակներում համարվել են հերոսության բարձրագույն հատկություններ։ Բայց երբեք, ոչ մի տեղ և ոչ ոքի կողմից այդ հատկությունները այնպիսի ուժով չեն դրսևորվել, ինչպես մեր պարտիայի կողմից, իսկ նրա օրինակով՝ նաև մեր ամբողջ ժողովրդի կողմից՝ քաղաքացիական ու Հայրենական պատերազմներում։

1917 թվականի հոկտեմբերին, նախապատրաստելով զինված ապստամբություն, Լենինն առաջարկեց թշնամու կենտրոնները գրավելու համար լավագույն բանվորներից ստեղծել ջոկատներ՝ «Բոլորս կմեռնենք, բայց թշնամուն չենք զիջի» լոզունգով։ Լենինյան այս կոչը սովետական մարդկանց համար իր ամբողջ ռեալությամբ բազմիցս հնչեց Հայրենական պատերազմում։

Եթե ժողովուրդը պայքարում է իր կենսական, իր համար հասկանալի գործի համար, նրա հերոսությունն անսպառ է։ Պատերազմը մի մահացու գոտեմարտ էր թշնամու դեմ, խոսքը վերաբերում էր ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու համար ամենակարևոր բանին՝ ժողովրդի կյանքին ու մահվանը։ Դրա պարզ ըմբռնումն էլ սովետական մարդկանց հերոսության ու սխրանքների բարոյական շարժառիթն էր։ Վոլգոգրադի ավերված տների պատերին դրոշմված «Պաշտպանվել մահվան գնով» հայտնի մակագրությունը ամենանշանավոր ասացվածքների հետ մեկտեղ դարերի պատմության մեջ կմտնի որպես հերոսության առավել հակիրճ, պարզ և ճիշտ դրսևորում։

Արիասրտությունից և երկաթյա կամքից բացի, այստեղ հարկավոր էին է՛լ ավելի ուժգին, ավելի վեհ շարժառիթներ, որոնք գործի են վերածում արիությունն ու կամքը։ Եվ այդ վեհ շարժառիթները ժողովրդի, հայրենիքի հանդեպ ունեցած պարտքի գիտակցումն է, հավատն իր կոմունիստական համոզմունքների ճշմարտացիության և այն գործի հաջողության նկատմամբ, որի համար պայքարում ես։ Արհամարհանք դեպի մահը, հանուն կյանքի հաստատման։ Լավ է ասել բանաստեղծը. «Կռիվ է գնում... ոչ թե հանուն փառքի, այլ հանուն կյանքի երկրի վրա»։ Կյանքի այդ մեծ հաստատումը հերոսների սխրանքների աղբյուրն է։

Շահագործող դասակարգերը մարդու՝ աշխատելու բնական պահանջմունքը դարձրել են նրա համար լուծ ու տառապանք։ Մեր պարտիան, ազատագրելով աշխատանքը, վերականգնեց նրա գրավչությունը, սովետական մարդկանց դաստիարակեց աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի ոգով, լրիվ չափով բացահայտեց ստեղծագործության, ստեղծարար աշխատանքի բերկրանքը։ Աշխատանքը դարձել է միլիոնավոր մարդկանց գերազանցության, սխրանքների ու մասսայական հերոսության լայն ասպարեզ։

Կոմունիզմի գաղափարը ամենավեհ գաղափարն է մարքս-լենինյան աշխարհայացքում, իսկ դրա իրականացումը մեր պարտիայի բարձրագույն նպատակն է, հասարակության զարգացման օրենքներին համապատասխան նրա կոմունիստական վերակառուցման պայքարի արդի դարաշրջանի մարդու ամենաազնիվ կոչումը։ Աշխարհում չկա ավելի մեծ միսիա, քան այն, որը կամովին ստանձնել են կոմունիզմ կառուցողների առաջավոր շարքերում կանգնած կոմունիստները։ Գաղափարը, եթե մարդիկ համոզված են նրա արդարացիությանը, լեռներ է շարժում, հանուն նրա չեն խնայում ոչ ուժ, ոչ անգամ կյանք։ Այդպիսին է կոմունիզմի գաղափարը։ Կոմունիստական գաղափարայ-



նությունը մեր գործի ոգին է, սովետական ժողովրդի պայքարի ու կյանքի հոգևոր իմաստը։

Կոմունիստական գաղափարախոսությունն իր ձևերի ու դրսևորումների ամբողջ բազմազանությամբ պարտիայի ու ժողովրդի սուր, մարտական զենքն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։ Գրականության և արվեստի գործիչների հետ պարտիայի ու կառավարության ղեկավարների վերջերս տեղի ունեցած հանդիպումը, այդ հանդիպման ժամանակ ընկեր Ն. Ս. Խրուշչովի ճառը մեծ ավանդ մուծեցին մարքս-լենինյան գաղափարախոսության հետագա զարգացման, պարտիայի գաղափարական աշխատանքի կատարելագործման ասպարեզում, ամբողջ գաղափարական ճակատի առջև դրին մեծագույն կարևորություն ունեցող խնդիր՝ լիովին սարքին ու մարտական պատրաստության մեջ պահել իր գաղափարական զենքը։

Լենինը ճահճաբնակներ էր անվանում նրանց, ովքեր ուզում էին ոչ թե պայքարել բուրժուական գաղափարախոսության դեմ, այլ հաշտվել նրա հետ։ Նեխած, ճահճային տրամադրություններ են արտահայտում կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների «խաղաղ գոյակցության» այժմյան կողմնակիցները։ Պարտիան խորտակիչ հակահարված է տալիս գաղափարական հաշտեցման հնարավորության վերաբերյալ հակալենինյան հայացքին։ Նա ամբողջ ուժով ընդգծում է, որ աշխարհում տեղի է ունենում երկու անհաշտ գաղափարախոսությունների՝ բուրժուականի և սոցիալիստականի սուր պայքար։ Գաղափարախոսության բնագավառում խաղաղ գոյակցության կոչը ձեռնտու է սոսկ արտասահմանի մեր դասակարգային թշնամիներին, այն տանում է դեպի կոմունիստական գաղափարախոսության դիրքերի թուլացում։ Պարտիան վճռականորեն հայտարարել է, որ ինքը դեմ է գաղափարախոսությունների խաղաղ գոյակցությանը, նա պայքարել է, պայքարում է և կպայքարի բուրժուական այդ գաղափարի և նրա կրողների դեմ։

Այժմ համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի և կապիտալիզմի, դասակարգային ուժերի մեծ սահմանազատման ժամանակաշրջանում, առանձնահատուկ նշանակություն է ստանում մեր ամբողջ գաղափարախոսության լենինյան նպատակասլացության, մեր ամբողջ գաղափարախոսության պարտիականության հարցը։ Յուրաքանչյուրի համար, ով իրեն համարում է աշխատավորների կողմնակից, լենինյան պարտիականության հիմնական իմաստն այն է, որ հասարակական կյանքի իրադարձությունների և երևույթների ամեն մի գնահատման դեպքում նա գիտակցաբար, ուղղակի և բացահայտ կանգնում է աշխատավորների և նրանց արմատական շահերի արտահայտչի՝ կոմունիստական պարտիայի տեսակետի վրա, պաշտպանում է այդ տեսակետը, պայքարում կոմունիստական իդեալների համար։ Եվ այդ բանն անում է իր մտքի ու սրտի թելադրանքով, խորապես համոզված լինելով, որ կոմունիզմի իդեալները միակ ճշմարիտ ու արդարացին են, որ դրանց համար պայքարը նրա աշխատանքի և ամբողջ կյանքի գլխավոր բովանդակությունն է կազմում։

Պարտիայի գործունեությունը սկզբից մինչև վերջ տոգորված է նորարարության, ստեղծագործության, առաջընթացի ոգով։ Այդ է վկայում նրա ամբողջ գործունեությունը և հատկապես վառ կերպով՝ վերջին տասնամյակում։ Հսկայական ջանքեր գործադրելով Ստալինի անձի պաշտամունքի ու նրա հետևանքների հաղթահարման ուղղությամբ, պարտիան վերցրեց պարտիական կյանքի լենինյան նորմերի, պարտիական ու պետական ղեկավարության լե-

նինյան սկզբունքների վերականգնման գիծ, նա վճռաբար ու հետևողականորեն կիրառում է այդ գիծը։ Պարտիայի կողմից իր բոլոր կազմակերպությունների և ղեկավար օրգանների վարից վեր արտադրական սկզբունքով կատարված վերակառուցումը պարտիային կտա ավելի մեծ ճկունություն, կառաջացնի ստեղծագործական ուժերի նոր հորձանք։

Վերջին տասը տարում պարտիան անցկացրեց երեք համագումար, որոնցում դրվեցին ու լուծվեցին սովետական երկրի ներքին ու միջազգային զարգացման կարևորագույն հարցեր, տեսականորեն մշակվեցին գիտական կոմունիզմի արմատական պրոբլեմները արդի պայմանների համեմատ։ ՍՄԿՊ XX, XXI, XXII համագումարները համաշխարհային պատմական հսկայական նշանակություն ունեն։ Նրանց որոշումները շատ ուժեղ ազդեցություն են թողնում հասարակական զարգացման ընթացքի վրա, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշի ներքո ՍՄԿՊ-ի յուրաքանչյուր համագումար նոր աչքի ընկնող ուղենիշ է դեպի կոմունիզմ ամբողջ մարդկության մեծ ճանապարհին։ Կոմունիզմի կառուցման փիլիսոփայական, տնտեսական, պատմական հիմնավորումը և գործնական պլանը տրված են ՍՄԿՊ XXII համագումարում միահամուռ կերպով ընդունված ՍՄԿՊ Ծրագրում։

Կյանքը մեր պարտիայի առջև դրել է նոր հարցեր, որոնց պատասխանները մարքս-լենինյան գրականության մեջ չեն եղել։ Մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները տվել են կոմունիստական հասարակարգի և դեպի այն տանող ուղիների սոսկ ընդհանուր բնութագիրը։ Փաստական նյութի անբավարարության պատճառով նրանք չէին կարող տալ կոմունիստական հասարակարգի առաջին փուլից երկրորդ՝ բարձրագույն փուլին անցնելու բոլոր պրոբլեմների կոնկրետ, մանրամասն հիմնավորումը՝ որոշելով միայն սկզբունքային ուղղությունը։ Այդ հարցերն իրենց ամբողջ բարդությամբ ու լրիվությամբ կանգնեցին մեր պարտիայի առջև, երբ Սովետական Միությունում լիակատար ու վերջնականապես կառուցվեց սոցիալիզմը, երբ կյանքը, պատմությունը օրակարգում դրին ավելի առաջ ընթանալու և կոմունիզմը կառուցելու անհրաժեշտությունը, երբ կոմունիզմի կառուցումը դարձավ մեր ժողովրդի գործնական խնդիրը։

ՍՄԿՊ ծրագիրը սպառիչ պատասխաններ է տալիս այդ հրատապ պրոբլեմներին։ Նա պարտիայի բազմամյա աշխատանքի ընդհանրացումն է, որի հանրագումարն է երկրի թևակոխումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, որն ընդգրկել է սովետական հասարակարգի կյանքի բոլոր կողմերը՝ էկոնոմիկան, հասարակական հարաբերությունները, պետականությունը, կուլտուրան, գաղափարախոսությունը։ Պարտիայի ծրագիրը լայն հայացք է գցում դեպի ապագան, բացահայտում է մեր կեցության հեռանկարը։

ՍՄԿՊ ծրագրում տրված է կապիտալիզմից սոցիալիզմ մարդկության անցման ժամանակակից պատմական դարաշրջանի գիտական բնութագիրը, բացահայտված են կոմունիստական հասարակարգի՝ աշխարհում ամենակատարյալ և արդարացի հասարակարգի, կարևորագույն գծերը։ Կոմունիզմի այդպիսի լիակատար պատկեր, որի գծերն արդեն ռեալ, տեսանելի են դառնում մեր ժողովրդի աշխատանքում, չկա մարքս-լենինյան ուրիշ ոչ մի փաստաթղթում։

Վաղուց հայտնի է, որ սոցիալիստական հասարակարգն իր զարգացման մեջ անխուսափելիորեն պետք է վերաճի կոմունիզմի։ Բայց թե ինչպիսին է այդ վերաճման բնույթը, որոնք են սոցիալիզմը կոմունիզմի վերաճելու ուղիներն



ու միջոցները, առաջին անգամ տեսականորեն ու գործնականորեն հանգամանալից կերպով մեր պարտիայի կողմից մշակված, ցույց է տրված նրա ծրագրում։

Կոմունիզմի կառուցման այնպիսի վճռական հարցեր, ինչպիսիք են՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, սոցիալիստական արտադրական հարաբերությունների կատարելագործումը և դրանք կոմունիստական հարաբերություններ դարձնելը, սոցիալիստական պետականության զարգացումը կոմունիստական ինքնավարության ուղղությամբ, նոր հասարակարգի մարդու դաստիարակությունը, կոմունիստական բարոյականության և գիտական աշխարհայացքի տարածումը ամբողջ հասարակության վրա,— այս արմատական հարցերը ո՛չ միայն տեսականորեն են մշակված, այլև պրակտիկ կերպով իրականացվում են, անմիջականորեն մտնում մեր կյանքի մեջ։

Պարտիայի Ծրագրում հետագա զարգացում է ստացել արդի պայմաններում սոցիալ-քաղաքական տարբեր սիստեմներ ունեցող երկրների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքը։ Այն որոշիչ սկզբունք է դարձել սովետական արտաքին քաղաքականության ասպարեզում, կապիտալիստական երկրների հետ ունեցած հարաբերությունների մեջ։ Միայն այն բանի շնորհիվ, որ մեր պարտիան անշեղ հետևում է այդ սկզբունքին, նրան հաջողվում է ապահովել խաղաղությունը պրովոկացիաների, սպառազինությունների մրցավազքի, միջուկային հիստերիայի և ռեակցիոն ուժերի կողմից ագրեսիայի նախապատրաստման շատ բարդ պայմաններում։

Սովետական կոմունիստները, որոնք մինչև վերջ հավատարիմ են պրոլետարական ինտերնացիոնալիզմին, իրենց գործունեությունը, ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման հաջողությունները դիտում են որպես ամբողջ համաշխարհային կոմունիստական շարժման ընդհանուր գործի բաղկացուցիչ մասը, հիշելով, որ կոմունիզմը ամբողջ երկրագնդի բոլոր մարդկանց կյանքի ամենակատարելագործված հասարակական ձևն է։ Մեր պարտիայի համար չկա ավելի կարևոր խնդիր, քան սոցիալիստական երկրների, ամբողջ միջազգային կոմունիստական շարժման միասնության ամրապնդումը։

Սովետական երկրի արդի ներքին ու միջազգային դրության ինչպիսի մեծ կամ փոքր հարց էլ վերցնենք, կտեսնենք, թե պարտիան ինչպիսի՜ խորությամբ, լենինաբար, ստեղծագործաբար է մոտենում նրա լուծմանը։ Արդի ժամանակաշրջանում պարտիայի ամբողջ գործունեությունը նրա մտքի և ամբողջ օրգանիզմի անսովոր ճկունության, լենինյան իմաստության, նրա հսկայական ստեղծագործական ուժի վառ, համոզիչ վկայությունն է։

«Մեր պարտիայի համար, նրա Կենտկոմի, բոլոր կոմունիստների համար,— ասել է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— ամենաբարդ խնդիրների լուծման ասպարեզում ռևոլյուցիոն ստեղծագործության օրինակ է մեծ Լենինը, նրա գործունեությունը, նրա իմաստուն գաղափարները, խորհուրդները, ցուցումները»։ Պարտիան հաղթանակել է, հաղթանակում է և կհաղթանակի լենինիզմին հավատարիմ լինելով։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից չորս ամիս առաջ, այն ժամանակ, երբ Ռուսաստանի ապագան մշուշապատ էր, երկրի ոչ մի պարտիա, այն օրերի քաղաքական գործիչներից ոչ մեկը չէր տեսնում և չէր կարող ցույց տալ երկիրը վերահաս անողորմ ազգային աղետից փրկելու ճիշտ ուղիները։ Այդ ուղիները պարզ տեսավ և աշխատավորներին ցույց տվեց Վ. Ի. Լենինը։

*Սովետների համառուսաստանյան առաջին համագումարում, 1917 թվականի հունիսին, ի պատասխան ժամանակավոր կառավարության մինիստր Ծերեթելիի այն հայտարարության, թե Ռուսաստանում չկա այնպիսի քաղաքական պարտիա, որը մենակ վճռեր վերցնել երկրի ամբողջ իշխանությունը, Վ. Ի. Լենինը տեղից տվեց իր նշանավոր, կայծակի հարվածի պես հակիրճ ռեպլիկան՝ «Կա՛»: Լենինը մանրակրկիտ կերպով հիմնավորեց, որ կա այդպիսի պարտիա, այդ բոլշևիկների պարտիան է, որը պատրաստ է ամեն րոպե երկրում պետական իշխանությունն ամբողջովին իր ձեռքը վերցնել, և որ բոլոր հնարավորություններն ունի պահելու այդ իշխանությունը և երկիրը տառապանքների անդունդից դուրս բերելու սոցիալիզմի պայծառ և ուղիղ ճանապարհը:*

*Հետագայում, ամենակրիտիկական պահերին, երբ վճռվում էր կոմունիզմի բախտը նրա չարանենգ և անհաշտ թշնամու՝ համաշխարհային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում, բազմիցս ծառանում էր այն հարցը, թե արդյոք կա՞ այնպիսի ուժ, որը կարողանար ապահովել կոմունիզմի հաղթանակը: Եվ միշտ հետևում էր պարզ ու գործնական պատասխանը.* աշխարհում կա այդպիսի պարտիա, կա այդպիսի ուժ երկրի վրա, որի համար սարսափելի չէ ոչ մի թըշնամի, որքան էլ նա գազազած և ահեղ լինի,— դա Սովետական Միության կոմունիստական պարտիան է:

*Աշխարհում կա մի հզոր պարտիա՝ մեր լենինյան պարտիան, միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման բաղկացուցիչ մասը: Իր ամբողջ գործունեությամբ մեր պարտիան ցույց է տալիս, որ ինքն արժանի է իր մեծ կազմակերպիչ և առաջնորդ Վ. Ի. Լենինին: Պարտիան բարձր է պահում լայնորեն բացված մարքս-լենինյան դրոշը, վստահորեն առաջ է ընթանում դեպի իր բարձրագույն պատմական նպատակը՝ դեպի կոմունիզմի հաղթանակը:*

«Պրավդա», № 100, 10 ապրիլի, 1963 թ.

«ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ամրապնդման շնորհիվ բանվոր դասակարգի կոմունիստական պարտիան վերածվեց սովետական ժողովրդի ավանգարդի, դարձավ ամբողջ ժողովրդի պարտիա, ընդլայնեց իր ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա: Պարտիան մեր դարաշրջանի, ռևոլյուցիոն մեծ վերափոխումներ կատարող սովետական ժողովրդի միտքն է, պատիվը և խիղճը: Պարտիան աչալուրջ նայում է ապագային, ժողովրդի առջև բացում է առաջընթացի գիտականորեն հիմնավորված ուղիներ, մասսաների մեջ արթնացնում է վիթխարի եռանդ, նրանց պռաջնորդում է դեպի նոյակապ խնդիրների լուծում:

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը բնութագրըվում է ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, ԴԵՐԻ ՈՒ ՆՇԱՆԱԿՈՒԹՅԱՆ հետագա ԱՃՄԱՄԲ»:

(ՍՄԿՊ ԾՐԱԳՐԻՑ)

# ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԱՊԻ ԱՄՐԱՊՆԴՈՒՄՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ (1953—1962 ԹԹ.)

Վ. Գ. ՊՉՅՈԼԻՆ

*Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ժամանակաշրջանում վիթխարի կերպով աճում է ժողովրդի ստեղծագործական ակտիվության և ինքնագործունեության դերը: Աշխատավորների ամբողջ մասսան աստիճանաբար բարձրանում է մինչև իր ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի քաղաքական գիտակցականության, կազմակերպվածության և կարգապահության մակարդակը: Այդ պրոցեսը տեղի է ունենում ո՛չ թե տարերայնորեն, այլ պարտիայի՝ որպես ժողովրդական մասսաների ղեկավարի, ավելի ու ավելի ուժեղացող ներգործության տակ:*

*Մասսաների վրա պարտիայի ներգործության աստիճանը կախված է, առաջին հերթին, այն բանից, թե որքան ամուր և խոր են նրա կապերը ժողովրդի հետ: Աշխատավորական մասսաների հետ պարտիայի ամենասերտ կապը, պարտիայի և ժողովրդի անխախտ միասնությունը կազմում են մեր երկրի համաշխարհային-պատմական հաղթանակների հիմքերի հիմքը և կոմունիզմի հաջող կառուցման գլխավոր պայմանը: Առանց ժողովրդի հետ պարտիայի անխախտ կապի անհնարին կլինեին սոցիալիզմի կառուցման վիթխարի նվաճումները, հաղթանակը Հայրենական մեծ պատերազմում, ժողովրդական տընտեսության հետպատերազմյան վերականգնման ու զարգացման հաջողությունները: Պարտիայի և ժողովրդի միասնությունը կազմում է մեր սոցիալիստական հասարակական-քաղաքական սիստեմի անխզելի, ամենաէական գիծը: Հոգատարությունը այդ կապի ամրապնդման և խորացման նկատմամբ, աշխատավորների գիտակցականությունն ու նախաձեռնությունը զարգացնելու համար նրանց շրջանում կատարվող աշխատանքի առավել կատարյալ ձևերի ու մեթոդների որոնումները թափանցում են Կոմունիստական պարտիայի ամբողջ բազմակողմանի գործունեության մեջ: Դրա ամենավառ օրինակներից մեկն է ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան (1962 թ.) պլենումի աշխատանքը, պլենում, որը ընդունեց կարևոր որոշումներ ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը վերակառուցելու, պարտիայի և կառավարության որոշումների կատարման նկատմամբ պարտիական-պետական վերահսկողություն կազմակերպելու մասին:*

*Այդ որոշումների պատմական նշանակությունը ամենից ավելի ցայտուն դրսևորվում է ժողովրդի հետ կապերի ամրապնդման ու զարգացման ուղղությամբ պարտիայի վերջին տասնամյակի (1953—1962 թթ.) գործունեության վերլուծման լույսի տակ: Այդ տարիներին լենինիզմի տեսությունն ու պրակտիկան հարստացան չափազանց արժեքավոր փորձով, որը պայմանավորված է ՍՄԿՊ-ի և ամբողջ սովետական ժողովրդի պատմության այդ կարևորագույն ժամանակաշրջանի մի շարք առանձնահատկություններով: Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ վիթխարի հաջողությունների հասավ կոմունիզմի ճանապարհին: ՍՍՌՄ-ում սոցիալիզմը ձեռք*

բերեց լիակատար և վերջնական հաղթանակ, և մեր երկիրը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում տեղի ունեցած ամենախոր վերափոխումների շնորհիվ, սոցիալիզմի հաղթանակի հիման վրա թևակոխել է իր զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը:

Ինչպես նշվում է ՍՄԿՊ Ծրագրում, «ՍՍՌՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ամրապնդման շնորհիվ բանվոր դասակարգի կոմունիստական պարտիան վերածվեց սովետական ժողովրդի ավանգարդի, դարձավ ամբողջ ժողովրդի պարտիա, ընդլայնեց իր ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա»[1]: Միևնույն ժամանակ կոմունիստական շինարարության մասշտաբների մեծացումը ու խնդիրների բարդությունը հրամայաբար պահանջում էին մասսաների ստեղծագործական դերի համակողմանի ուժեղացում և կոմունիստական պարտիայի կողմից դրանց ղեկավարման էլ ավելի բարձր մակարդակ[2]:

Մոսկվայի Կալինինյան ընտրական օկրուգի ընտրողների ժողովում 1963 թվականի փետրվարի 27-ին արտասանած ճառում Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Կոմունիզմը կառուցվում է ամենադեմոկրատական միջոցներով: Ուստի մասսաների ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության համակողմանի զարգացումը սոցիալիստական պետության հաջողությունների հուսալի գրավականն է: Դրա հետ մեկտեղ պարզ է նաև մի այլ բան, որքան ավելի շատ զարգանան հասարակական սկզբունքները մեր կյանքում, այնքան ավելի բարձր պետք է լինի պարտիական-պետական ղեկավարման մակարդակը, այնքան ավելի ճկուն, ավելի օպերատիվ պետք է գործեն պարտիական ու պետական օրգանները: Այս է մեր զարգացման դիալեկտիկան: Չէ որ կոմունիզմը մերժում է ինքնահոսը. կոմունիզմ չի կարելի կառուցել առանց խելացի պլանավորման, առանց գիտական կանխատեսման, առանց պարտիական-պետական ղեկավարման և աշխատավորների մասսաների ակտիվության ուժեղացման՝ հասարակական կյանքի բոլոր ոլորտներում»[3]:

1953—1962 թվականներն անցան անհատի պաշտամունքի և նրա վնասակար հետևանքների դեմ պարտիայի և ժողովրդի մղած վճռական պայքարի նշանաբանով, որի կապակցությամբ առանձնապես հրատապ դարձավ ժողովրդական մասսաների, պարտիայի դերի և քաղաքական ղեկավարների հեղինակության հարցը:

Սոցիալիզմի պայմաններում պարտիայի և ժողովրդի փոխհարաբերությունների պրոբլեմը այդ ժամանակաշրջանում հանդիսացավ գաղափարախոսական պայքարի կենտրոնական կետերից մեկը միջազգային ասպարեզում՝ ինչպես իմպերիալիստական պրոպագանդայի սպեկուլյացիաների, այնպես էլ ռևիզիոնիստական և դոգմատիկական հայացքների ու պատկերացումների դեմ:

Սակայն մասսաների հետ կապերի ամրապնդման ուղղությամբ ՍՄԿՊ-ի այդ տարիների հսկայական ու բազմակողմանի գործունեությունը դեռևս թույլ է լուսաբանված պատմական-պարտիական գրականության մեջ: Ըստ էության, այդ թեմային նվիրված սակավաթիվ հոդվածների և թեկնածուական դիսերտացիաների բովանդակությունը հանգում է աշխատավորական մասսաների հետ պարտիայի ունեցած կապի կազմակերպական ձևերի բնութագրմանը, ընդսմին այդ ձևերը քննության են առնվում պարտիայի գաղափարական-տեսական և քաղաքական գործունեությունից գրեթե լրիվ կտրված:

Պարտիայի և ժողովրդի փոխհարաբերությունները ճիշտ լուսաբանելու համար անհրաժեշտ է դրանք քննության առնել սոցիալիստական կարգի օբյեկտիվ բնույթի, կոնկրետ-պատմական պայմանների, պարտիայի ամբողջ գործունեության հետ ամենասերտ կապի մեջ:

Ներկա հոդվածում մենք կփորձենք 1953—1962 թթ. փորձի հիման վրա

1 «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը», Հայպետհրատ, 1962, էջ 559—560:

2 Տե՛ս նույն տեղը, էջ 560:

3 «Պրավդա», 1963 թվականի փետրվարի 28:



լուսաբանել ժողովրդի հետ կապերի անշեղ ամրապնդման համար պարտիայի մղած պայքարի մի քանի տեսական և քաղաքական հարցերը[4]:

***

Հասարակական կյանքի մատերիալիստական մարքսիստական ըմբռնման համաձայն, պատմությունը կերտում են ժողովրդական մասսաները: Կոմունիստական պարտիան, որը կյանքի է կոչվել մասսայական ռևոլյուցիոն բանվորական շարժման պահանջներով, մասսաների հետ կապը դիտում է որպես իր ամբողջ գործունեության կարևորագույն սկզբունք: Կոմունիզմի պայքարի համար աշխատավորների գաղափարական և կազմակերպական համախմբման մեջ է կոմունիստական պարտիայի պատմական դերը: Ժողովրդական մասսաների հետ անընդհատ կապի մեջ է պարտիայի ուժի, նրա տեսության, քաղաքականության, կենսականության, նրա կազմակերպության մարտունակության աղբյուրը: «Որպեսզի սպասարկի մասսային և արտահայտի նրա ճիշտ գիտակցված շահերը,— գրել է Վ. Ի. Լենինը,— առաջավոր ջոկատը, կազմակերպությունը, պետք է իր ամբողջ գործունեությունը վարի մասսայի մեջ, նրա միջից ներգրավելով առանց բացառության բոլոր լավ ուժերին, յուրաքանչյուր քայլափոխին ուշի-ուշով և օբյեկտիվորեն ստուգելով, թե պահպանվո՞ւմ է արդյոք կապը մասսաների հետ, գոյություն ունի՞ արդյոք այդ կապը: Առաջավոր ջոկատը այդ կերպ, և միայն այդ կերպ է դաստիարակում և լուսավորում մասսային, արտահայտելով նրա շահերը, սովորեցնելով նրա կազմակերպությունները, ուղղելով մասսայի ողջ գործունեությունը դասակարգային գիտակից քաղաքականության ճանապարհով»[5]:

Վ. Ի. Լենինը ժողովրդի մեջ էր տեսնում կոմունիզմի իսկական կերտողին, նա պարտիային կոչ էր անում ստեղծել բոլոր անհրաժեշտ պայմանները՝ հասարակական և պետական գործերի կառավարմանը աշխատավորների վճռական մասնակցության համար: Լենինի ամբողջ գործունեությունը տոգորված է եղել մասսաների նկատմամբ, նրանց ստեղծագործական մեծ ուժերի նկատմամբ անսահման հավատով:

ՍՄԿՊ-ի ամբողջ պատմական փորձը հաստատում է պարտիայի և մասսայի կապի հարցի լենինյան ըմբռնման խոր կենսականությունը: Որքան ավելի հետևողականորեն էին կենսագործվում լենինյան դրույթները, այնքան ավելի ամուր էր այդ կապը, և ավելի հաջող էին կատարվում ռևոլյուցիոն խնդիրները: Եվ ընդհակառակը, նահանջները լենինյան սկզբունքներից, որոնք տեղի ունեցան անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում, բացասաբար էին անդրադառնում պարտիայի և ժողովրդի գործունեության վրա:

Ստալինը խոսքով ընդունում էր մարքսիստական-լենինյան ուսմունքը ժողովրդական մասսաների դերի մասին: Բայց իրականում արմատավորելով սեփական անձի պաշտամունքը, նա կոպիտ կերպով խախտում էր մարքսիստական-լենինյան սկզբունքները: Մեկ անձի գերմեծարումը, ինչպես նշում էր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում, անխուսափելիորեն ետին պլանի վրա էր մղում ժողովրդին և պարտիային: Անհատի պաշտամունքը, որին հատուկ էին պարտիական և պետական գործունեության լենինյան սկզբունքների ամենակոպիտ խախտումները, սպառնում էր պարտիան կտրել մասսաներից, ժողովրդից, իսկ վերջին հաշվով իջեցնել կոմունիստական շինարարության տեմպերը[6]:

Չհավատալով մասսաներին, Ստալինը նրանց ըստ էության դիտում էր

4 Ընդսմին կազմակերպական հարցերը մենք շոշափելու ենք լոկ զուգընթացաբար, քանի որ այդ կողմն արդեն լուսաբանվել է հանդեսում (տե՛ս, օրինակ Ա. Կ. Կոլեսնիկովի «Решения XXII съезда КПСС и некоторые вопросы партийно-организационной работы» հոդվածը: «Вопросы истории КПСС», 1961, № 1):

5 Վ. Ի. Լենին: Երկեր, հատ. 19, էջ 506:

6 Տե՛ս «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը», էջ 119:

իբրև պասսիվ ուժ, նրանց հատկացնում լոկ «պտուտակիկների» դեր։ Ժողովրդի պատմական ակտիվ դերի նսեմացման տրամաբանական հետևանքը հանդիսացավ Ստալինի հակվածությունը դեպի վարչական ճնշման մեթոդները՝ ի վնաս մասսաների շրջանում կատարվող քաղաքական և կազմակերպչական աշխատանքի։ Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը սովետական ռեսպուբլիկաների միավորման հարցում Ստալինին քննադատում էր վարչարարությամբ հրապուրվելու համար։ Հայտնի է նաև, թե ինչպիսի բացասական հետևանքների հասցրեց վերևից, Ստալինի կողմից եղած ճնշումը գյուղատնտեսության կոլեկտիվացման հարցերում։ Անհատի պաշտամունքի ժամանակներում քիչ չեն եղել քաղաքական կարևորագույն հարցերի զուտ վարչական լուծման «օրինակներ»։

Ստալինն իրեն արատավորեց մարդկանց նկատմամբ անհիմն անվստահությամբ, սովետական ազնիվ քաղաքացիների դեմ մասսայական ռեպրեսիաներով։ Պարտիան բացահայտեց և դատապարտեց Ստալինի գործած չարիքը, ժողովրդին ասաց ճշմարտությունը՝ անհատի պաշտամունքի օրով իշխանության չարաշահումների մասին։ «...Ստալինին մենք դատապարտում ենք,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— և դատապարտում ենք այն բանի համար, որ նա սուրը մերկացրեց և ուղղեց իր դասակարգի դեմ, իր պարտիայի դեմ» [7]։

Պարտիան մանրազնին վերլուծեց անհատի պաշտամունքի երևան գալու պատճառները և բոլոր կոմունիստներին, ամբողջ ժողովրդին մոբիլիզացրեց վերացնելու նրա հետևանքները։ Սոցիալիստական հասարակությունում, որտեղ ժողովուրդն է արտադրության միջոցների տերը, օբյեկտիվ հիմք չկա այս կամ այն անձի գերմեծարման, աստվածացման համար։ Անհատի պաշտամունքը հիմնովին խորթ է մարքսիզմ-լենինիզմի գաղափարախոսությանը, սոցիալիստական հասարակական-քաղաքական կարգի բնույթյանը, մի կարգ, որտեղ ամբողջ հասարակական կյանքում, ինչպես կառավարման մեջ, իբրև վճռական ուժ հանդես են գալիս Կոմունիստական պարտիայի կողմից ղեկավարվող աշխատավորական բազմամիլիոն մասսաները։

Այն հարցի պատասխանը, թե ինչից առաջացավ Ստալինի անձի պաշտամունքը, պարունակվում է պարտիայի փաստաթղթերում, Ն. Ս. Խրուշչովի ելույթներում։ Դրանց մեջ տրված է, մի կողմից՝ այն օբյեկտիվ կոնկրետ-պատմական պայմանների մարքսիստական վերլուծությունը, որոնցում տեղի էր ունենում սոցիալիզմի կառուցումը ՍՍՌՄ-ում, իսկ մյուս կողմից՝ Ստալինի անձի գնահատականը։

Ինչո՞վ էին բնորոշվում ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման պայմանները։ Կապիտալիստական շրջապատման իրադրությունը, դասակարգային ամենասուր պայքարը երկրի ներսում, պատմական ամենակարճ ժամկետում, առանց դրսի տնտեսական որևէ օգնության, բոլոր ուժերի և միջոցների մեծագույն լարման ու մոբիլիզացման գնով դարավոր հետամնացությանը վերջ տալու և սոցիալիզմի ուղին դուրս գալու կենսական անհրաժեշտությունը՝ այս ամենը պահանջում էր երկաթյա կարգապահություն և երկրի ղեկավարման ամենախիստ կենտրոնացում։

Մարքսիստական-լենինյան վերլուծությունը ցույց է տալիս, սակայն, որ երեսնական թվականների պատմական պայմանները լոկ հեշտացնում էին անհատի պաշտամունքի առաջացումը, բայց այն անմիջականորեն ծնեցին սուբյեկտիվ գործոնները, Ստալինի անձնական բացասական հատկությունները, որ մատնանշել էր Վ. Ի. Լենինը 1922 թվականի վերջին — 1923 թվականի սկզբին։ Ընդգծելով, որ Ստալինը չափից դուրս կոպիտ է և այդ հատկությունը անհանդուրժելի է Կենտկոմի գլխավոր քարտուղարի պաշտոնում, Վ. Ի. Լենինը առաջարկում էր համագումարին մտածել Ստալինին այդ պաշտոնից տեղափոխելու եղանակի մասին [8]։

«Ցավոք սրտի,— ասում էր Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում,— Լենինի նախազգուշացումը և նրա խորհուրդները ժամանակին հաշվի չառնվեցին և դրա հետևանքով պարտիային և երկրին վիճակվեց կրել անհատի պաշտամունքի ծնած ոչ քիչ դժվարություններ» [9]։

7 «СССР и Болгария навеки вместе». М., 1962, стр. 71.

8 Տե՛ս Վ. Ի. Լ ե ն ի ն։ Երկեր, հատ. 36, էջ 687—689։



Ստալինի կոպտությունը, քմահաճությունը և մյուս բացասական հատկությունները նրա անձի անչափ գովաբանման իրադրության մեջ ավելի ու ավելի դրսևորվում էին ինքնակամության, կամայականության մեջ, պարտիական և պետական կյանքի լենինյան դեմոկրատական նորմերի և սկզբունքների խախտման մեջ։ Հենց այդ սկզբունքների ու նորմերի նկատմամբ ունեցած վերաբերմունքի մեջ է, որ առանձնապես արտահայտվեց Ստալինի նահանջը լենինիզմի տեսությունից և պրակտիկայից։ Անհատի պաշտամունքի գաղափարախոսությունը բացարձակապես անհամատեղելի դուրս եկավ մարքսիզմ-լենինիզմի հետ, մասսայի, պարտիայի և ղեկավարների փոխհարաբերությունների լենինյան սկզբունքների հետ, պարտիական և պետական կյանքի լենինյան նորմերի հետ։

Ուստի պարտիան, հաղթահարելով անհատի պաշտամունքն ու նրա հետևանքները, հուսալի երաշխիքներ ստեղծելով հետագայում դրա կրկնվելու դեմ, իր գլխավոր խնդիրը համարեց՝ քննադատաբար զննել անցյալի փորձը, պատմական նոր իրադրությանը համապատասխան վերականգնել և զարգացնել լենինյան այդ սկզբունքները։

Ժողովուրդը կոմունիզմի կառուցման վճռական ուժն է։ Լենինյան այդ ղեկավար գաղափարը դրվեց ՍՄԿՊ XX համագումարի մշակած քաղաքական կուրսի հիմքում։ Դատապարտելով անհատի պաշտամունքը՝ XX համագումարը հանձնարարեց Կենտրոնական Կոմիտեին «իր ամբողջ գործունեության մեջ ելնել այն բանից, որ նոր կյանքի իսկական կերտողներն են կոմունիստական պարտիայի ղեկավարած ժողովրդական մասսաները» [10]։

Կենսագործելով XX, XXI և XXII համագումարների ցուցումները՝ պարտիան իրականացրեց սոցիալ-քաղաքական մի շարք կարևորագույն միջոցառումներ, որոնք նպաստեցին ժողովրդական նախաձեռնության և ակտիվության հետագա աճմանը։ Առաջին հերթին ընդլայնվեց տնտեսության զարգացման վրա աշխատավորների գործուն, ռեալ ազդեցության հնարավորությունը, բարձրացվեց նրանց տնտեսական շահագրգռվածությունը սոցիալիստական արտադրության բարձրացման գործում, քանի որ դրա մեջ է սոցիալիստական հասարակության ստեղծագործ անսպառ եռանդի ամենից ավելի խոր աղբյուրը։ Վերականգնվեց մասսաների ինքնագործունեության զարգացման սուբյեկտիվ, գաղափարական խթանների և օբյեկտիվ, նյութական խթանների՝ անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում խախտված ճիշտ զուգակցումը։ Բարձրացնելով նյութական շահագրգռվածության սկզբունքի նշանակությունը, պարտիան հենվում էր Վ. Ի. Լենինի կարևոր, բայց անհատի պաշտամունքի ժամանակ կիսամոռացված այն դրույթը, որ սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման խնդիրները կարելի է հաջողությամբ լուծել «ոչ թե անմիջական խանդավառության վրա հենվելով, այլ մեծ ռևոլյուցիայի ստեղծած խանդավառության օգնությամբ, հենվելով անձնական շահի, անձնական շահագրգռվածության վրա...» [11]։ Միաժամանակ, մաքրելով անհատի պաշտամունքի նստվածքները, պարտիան զգալիորեն բարձրացրեց գաղափարական խթանների դերը։ Այդ քայլերի նշանակության մասին են խոսում ո՛չ միայն տնտեսական զարգացման հաջողությունները, այլև մեր ժամանակի համար բնորոշ այնպիսի երևույթներ, ինչպիսիք են՝ կոմունիստական աշխատանքի հարվածայինների շարժումը, Վ. Գագանովայի նախաձեռնությունը, Ն. Զագլադայի ելույթը, որոնք լայն պաշտպանություն գտան ժողովրդի մեջ։

Դասակարգային հարաբերությունների բնագավառում պարտիան հիմնա-

9 «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը», էջ 120։

10 «XX съезд Коммунистической партии Советского Союза. Стенографический отчет», т. 2, М., 1956, стр. 424.

11 Վ. Ի. Լ ե ն ի ն։ Երկեր, հատ. 33, էջ 46։

կան ուշադրությունը դարձրեց բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության դաշինքի հետագա ամրապնդմանը։

Ստալինը լուրջ սխալներ է գործել կոլտնտեսային գյուղացիության նկատմամբ։ Նա թերագնահատում էր սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ ձևի պատմական դերը, դա հակադրում էր պետական, համաժողովրդական ձևին։ Իր տեսական դիրքորոշումները Ստալինը գործնականում կիրառում էր Մոլոտովի, Կագանովիչի, Մալենկովի աջակցությամբ։ ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1958 թ.) պլենումում Ն. Ս. Խրուշչովը ասել է. «...Մոլոտովը, Կագանովիչը, Մալենկովը և մյուսները... ճիշտ չէին վերաբերվում գյուղացիությանը, նրան դիտում էին որպես մի ուժ, որը դիմադրություն է ցույց տալիս սոցիալիստական շինարարությանը։ Լենինի հայացքներին հակասող այդ սխալ գիծը կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նկատմամբ գործնականում հանգեցրեց գյուղատնտեսության այն դժվարին վիճակին, որ մենք ունեինք 1953 թվականի մոտերքը» [12]։

Պարտիան հաղթահարեց այդ սխալ հայացքները և իրականացրեց տնտեսական-քաղաքական կարևոր շատ միջոցառումներ, որոնք օգնեցին՝ ամրապնդելու բանվորների և գյուղացիների դաշինքը, ասպարեզ բացելու գյուղացիության ստեղծագործական ուժերի համար, է՛լ ավելի սերտորեն նրան համախմբելու Կոմունիստական պարտիայի շուրջը։

Ազգային հարաբերությունների բնագավառում պարտիան և սովետական կառավարությունը վերացրին այն անարդարությունը, որ Հայրենական պատերազմի ժամանակ Ստալինը հանդես էր բերել առանձին ազգությունների նկատմամբ, ընդլայնեցին միութենական ռեսպուբլիկաների իրավունքները, բարձրացրին նրանց դերը տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման գործում։ Այս ամենը է՛լ ավելի ամրապնդեց Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը, նոր լայն հնարավորություններ բացեց սոցիալիստական ազգերի ստեղծագործական եռանդի դրսևորման, կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում նրանց եղբայրական ջանքերի միավորման համար։

Ժողովրդական նախաձեռնության և մասսաների ստեղծագործության բազմակողմանի վերելքին նպաստեց պարտիայի՝ այդ բոլոր տարիներին հետևողականորեն իրականացվող դեմոկրատիայի ընդլայնման կուրսը: Պարտիան ելնում է սովետական դեմոկրատիայի՝ որպես ժողովրդի անսահման իշխանության քաղաքական ձևի, լենինյան գնահատականից, դեմոկրատիա, որն ապահովում է միլիոնների ամենօրյա մասնակցությունը պետության կառավարմանը։

Հայտնի է, թե անհատի պաշտամունքն ինչպիսի ծանր հետևանքներ ունեցավ պետական շինարարության բնագավառում։ Այն հանգեցրեց դեմոկրատիայի սահմանափակումների, սոցիալիստական օրինականության կոպիտ խախտումների, սովետական պետության գործադիր, մասնավորապես պատժիչ ապարատի ուռճացման, սովետների, որպես աշխատավորների մասսայական ներկայացուցչական կազմակերպությունների, որպես ժողովրդական ինքնավարության օրգանների դերի նսեմացման։ Ստալինը ոտնահարում էր մշտապես գործող մասսայական պարտիական-պետական վերահսկողություն կազմակերպելու լենինյան սկզբունքը։ Վերահսկողության խորապես դեմոկրատական լենինյան սիստեմը, որը հենվում էր աշխատավորների ամենալայն մասսաների մասնակցության վրա, փաստորեն վերացվել էր և փոխարինվել բյուրոկրատական, ժողովրդից կտրված վերահսկիչ ապարատով, իսկ վերահսկողության կաբևոր շատ ֆունկցիաներ հանձնվել էին պետական անվտանգության օրգաններին, որոնց ղեկավարները փորձում էին կանգնել պարտիայից վեր։ Վերացնելով անհատի պաշտամունքի հետևանքները, պարտիան իրականացրեց մի շարք խոշոր միջոցառումներ պետության կառավարումը դեմոկրատացնելու ուղղությամբ։ Աշխատավորների հասարակական-քաղաքական ակտիվության՝ այդ

12 «Пленум Центрального Комитета Коммунистической партии Советского Союза 15—19 декабря 1958 года. Стенографический отчет». М., 1958, стр. 11



ժամանակաշրջանում տեղի ունեցած վիթխարի ուժեղացումը պարտիայի լենինյան կուրսի տրամաբանական հետևանքն է։ Ամփոփելով կատարվածը և նշելով հեռանկարը, ՍՄԿՊ Ծրագիրը հուշակում է. «Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալում ու կատարելագործում, բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում՝ այս է սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում» [13]։

Կոմունիստական շինարարության մեջ ժողովրդի դերի բարձրացմանն է ուղղված նաև պարտիայի գաղափարախոսական աշխատանքը։ Պսակազերծ անելով անհատի պաշտամունքը, պարտիան ամբողջ հասակով մեկ ցույց տվեց սոցիալիզմ և կոմունիզմ իսկական կերտողին՝ Նորին Մեծություն Ժողովրդին, որն իր պատմական միսիան իրականացնում է մարտական ավանգարդի՝ բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների ամենից ավելի առաջավոր ներկայացուցիչներին իր շարքերում միավորող կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։ Պարտիայի ղեկավար դերի մասին դրույթը, հիրավի, ժողովրդի և պարտիայի փոխհարաբերությունների մասին ամբողջ մարքսիստական-լենինյան կոնցեպցիայի անկյունաքարն է։ Զարգացնելով և հարստացնելով այդ դրույթը, ՍՄԿՊ Ծրագիրը հիմնավորում է այն թեզիսը, որ կոմունիզմի կառուցման պայմաններում տեղի է ունենում Կոմունիստական պարտիայի, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի և նշանակության հետագա մեծացում [14]։

Անհաշտ պայքար մղելով մարքսիստական-լենինյան պարտիայի ղեկավար դերի ռևիզիոնիստական ժխտման դեմ, ՍՄԿՊ-ն միաժամանակ վճռականորեն հաղթահարում է անհատի պաշտամունքի հողի վրա ծագած ադմինիստրատիվ-դոգմատիկ տենդենցները։ Վերացվեց պարտիական և պետական ղեկավարման չափից դուրս կենտրոնացումը, հաղթահարվում են աշխատանքի ձևական-բյուրոկրատական ոճի ու մեթոդների տարրերը, որոնք տանում են դեպի խզում աշխատավորներից։

Աշխատավորների հետ կապերը ամրապնդելու համար ՍՄԿՊ-ն հմուտ կերպով օգտագործում էր նոր հնարավորությունները, որոնք ստեղծվել են նրա՝ բանվոր դասակարգի պարտիայից ամբողջ ժողովրդի ավանգարդի վերածվելու կապակցությամբ։ Ներքին և արտաքին քաղաքականության խոշորագույն պրոբլեմների քննարկմանը ժողովրդին մասնակից դարձնելը վերածվել է պարտիայի ղեկավար գործունեության նորմայի, մի նորմա, որն ամրապնդված է ՍՄԿՊ Ծրագրում [15]։

Անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում արմատավորվում էր մանր խնամակալությունը աշխատավորների մասսայական անպարտիական կազմակերպությունների նկատմամբ, սահմանափակվում էին նրանց գործունեության շրջանակները, կասեցվում էր հասարակական հիմունքների զարգացումը տնտեսական, կուլտուրական և պետական շինարարության մեջ։ Այս ամենը հակասում էր սովետական հասարակության ամրապնդված սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությանը, ժողովրդի վիթխարի չափով աճած կուլտուրական մակարդակին, նրա բարձր հայրենասիրական գիտակցությանը, որն առանձնապես վառ կերպով դրսևորվեց Հայրենական մեծ պատերազմի տարիներին։ Հենց որ պարտիան ծավալեց պայքարը անհատի պաշտամունքի հետևանքները հաղթահարելու համար, անմիջապես բազմապատկվեցին մեր ուժերը, բարձրացավ պարտիական ղեկավարման գործունեությունը։

Անհատի պաշտամունքի դեմ մղված պայքարի կապակցությամբ այդ տարիներին առանձնահատուկ նշանակություն ստացավ քաղաքական ղեկավարնե-

13 «ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը», էջ 523։

14 Տե՛ս նույն տեղը, էջ 560։

15 Տե՛ս նույն տեղը, էջ 564։

«...Մենք կարող ենք կառավարել միայն այն ժամանակ,— ասում էր Վ. Ի. Լենինը,— երբ ճիշտ ենք արտահայտում այն, ինչ որ գիտակցում է ժողովուրդը։ Առանց դրան կոմունիստական պարտիան չի կարող առաջնորդել պրոլետարիատին, իսկ պրոլետարիատը չի կարող իր հետևից տանել մասսաներին, և ամբողջ մեքենան կքանդվի» 21։

Անհատի պաշտամունքը դժվարացրեց քաղաքական ղեկավարման լենինյան սկզբունքների ու տրադիցիաների իրականացումը, պարտիայի աշխատանքի մեջ մտցրեց սուբյեկտիվիզմի, ձևական-բյուրոկրատական ղեկավարման տարր։ Քաղաքական ընդհանուր ճիշտ գծով հանդերձ, միլիոնների շահերը շոշափող մի շարք կարևոր հարցերի վերաբերյալ հաճախ ընդունվում էին սխալ, տնտեսապես չհիմնավորված որոշումներ, որոնք չէին կարող նպաստել ժողովրդական մասսաների հետ պարտիայի կապի ամրապնդմանը։

Անհատի պաշտամունքի հետևանքների դեմ մղվող պայքարում պարտիան վերականգնեց խիստ գիտական, քաղաքական-տնտեսական մոտեցումը տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծմանը։ Նա ամրապնդեց միլիոնների գիտակցածը, նրանց փորձը, նրանց շահերը բազմակողմանիորեն հաշվի առնելու և քաղաքականության մեջ արտացոլելու լենինյան տրադիցիան։

Իր շուրջը համախմբելով մասսաներին, նրանց կոմունիստական շինարարության պլանների իրականացման համար ոտքի հանելով, պարտիան նրանց առջև բաց է անում արտադրողական ուժերի այնպիսի մակարդակի հասնելու ռեալ ուղիներ, որը կարող է ապահովել նյութական և կուլտուրական բարիքների առատություն։ Դրանով իսկ պարտիան կոմունիզմը հիմնավորում է տնտեսապես, այն հարազատ ու հասկանալի է դարձնում սովետական ամեն մի մարդու համար։

Ուրեմն ինչպիսի՞ հիմնական խնդիրներ է առաջ քաշել պարտիան իր տնտեսական քաղաքականության և մասսաների պրակտիկ գործունեության կենտրոնում 1953—1962 թվականներին։ Նախ, աշխատանքի արտադրողականության բարձրացում, տեխնիկական առաջադիմություն ժողովրդական տնտեսության մեջ և, երկրորդ, գյուղատնտեսության վերելք։

Այն համաժողովրդական թափը, որ այդ տարիներին ընդունեց տեխնիկական առաջադիմության համար, աշխատանքի արտադրողականության բարձրացման համար մղվող պայքարը, ծառայում է որպես պարտիայի լոզունգների ժողովրդականության, մասսայի կողմից դրանց պաշտպանության լավագույն ապացույց։ Սոցիալիստական մրցության ընթացքում միլիոնավոր մարդիկ հաջողությամբ տիրապետում էին նորագույն տեխնիկային, սովորում էին տնտեսական հաշվարկ, խնայողություն, բարձրացնում էին արտադրության կուլտուրան։ Այս ամենը նախադրյալներ ստեղծեց անցնելու մրցության նոր, ավելի բարձր աստիճանի, որը համապատասխանում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանին։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների ու հարվածայինների՝ 1958 թվականի վերջերին սկսված շարժումը մոտ երեք տարվա ընթացքում ընդգրկեց ամենալայն ժողովրդական մասսաներին. դրան մասնակցում են ավելի քան 21 մլն. մարդ։ Գիտա-տեխնիկական ընկերությունները ու գյուտարարների և ռացիոնալիզատորների ընկերությունը միավորում են 4,5 մլն. մարդ։ Յոթնամյակի երեք և կես տարվա ընթացքում գյուտերի և ռացիոնալիզատորական առաջարկությունների ներդրումից ստացված խնայողությունը կազմեց 5 մլրդ. 200 մլն. ռուբ. 22։

Այս ամենը հանդիսացավ արդյունաբերության, գիտության և տեխնիկայի արագ զարգացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր պատճառներից մեկը։ 1959—1962 թթ. ընթացքում արդյունաբերական արտադրանքի աճը, որ պլանի 39 տոկոսի փոխարեն կազմել է 45 տոկոս, երկու երրորդի չափով ստացվել է աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին 23։

Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, ապա այստեղ պահանջվում էր ավելի կտրուկ շրջադարձ մերկ ղեկրետավորումից դեպի տնտեսապես հիմնավորված, մասսաների փորձի վրա հենվող քաղաքականություն։ Հայտնի է, որ անհատի պաշտամունքի ժամանակներում գյուղատնտեսության վերելքի պլանների պակաս չի եղել։ Բայց դրանցից շատերը նպատակին չէին հասնում, քանի որ տնտեսապես հիմնավորված չէին, հաշվի չէին առնում բուն գյուղացիական մասսաների փորձը։ Մեռելածին դուրս եկավ, օրինակ, հանրային անասնաբուծության զարգացման 1949 թվականին ընդունված եռամյա պլանը։ «Պլանը կազմողները,— ասում էր Ն. Ս. Խրուշչովը Կենտկոմի դեկտեմբերյան (1958 թ.) պլենումում,— ելնում էին այն բանից որ, բավական է դեկրետավորել անասնաբուծության զարգացման առաջադրանքը՝ և գործը առաջ կգնա» 24։ Նրանք չհիմնավորված կերպով պրոժեկտյորաբար են մոտեցել պլանային առաջադրանքների որոշմանը, հաշվի չեն առել անասնաբուծության փաստացի վիճակը և նրա նյութա-արտադրական բազայի ամրապնդման անհետաձգելի կարիքները, անտեսել են նյութական շահագրգռվածության սկզբունքը։

Գյուղատնտեսության վերաբերյալ ՍՄԿԴ Կենտկոմի սեպտեմբերյան (1953 թ.) պատմական, ինչպես նաև հետագա պլենումների ընդունած որոշումները խորապես տարբերվում էին անասնաբուծության վերելքի եռամյա պլանի տիպի տնտեսական-քաղաքական փաստաթղթերից։ Դրանք արտահայտում էին իսկական գիտական, քաղաքական-տնտեսական մոտեցումը գյուղատնտեսության պրոբլեմներին։ «Գյուղատնտեսության վերաբերյալ պարտիայի ընդունած միջոցառումներում,— ասում էր Ն. Ս. Խրուշչովը Կենտկոմի դեկտեմբերյան (1958 թ.) պլենումում,— մարմնավորվել են Լենինի գաղափարները գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխման հիման վրա գյուղի արտադրողական ուժերի զարգացման, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման, ժողովրդական մասսաների ստեղծագործական դերի, աշխատավորների բարեկեցության անշեղ վերելքի մասին» 25։

Օբյեկտիվ կոնկրետ-պատմական իրադրության, սոցիալիստական ինդուստրիայի զարգացման աստիճանի, գյուղատնտեսության ռեզերվների ու հնարավորությունների, գյուղացիության փորձի ու տրամադրությունների լրջմիտ հաշվառումը, եղած թերությունների քննադատությունը պարտիային հնարավորություն տվեցին նշելու գործողությունների ճիշտ ծրագիր, որը ստացավ սովետական մարդկանց ջերմ հավանությունը. ժողովրդին ոգեշնչեց պայքարելու գյուղատնտեսական արտադրության վերելքի համար։ Գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման գործում 1954—1958 թթ. ձեռք բերված զգալի հաջողությունները, աշխատավորների մեծ ակտիվությունը խոպանի յուրացման գործում ակնառու կերպով ցույց տվեցին Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները իրականացնելու համար պարտիայի շուրջը համախմբված սովետական ժողովրդի ստեղծագործական ուժը։

Որքան ավելի հետևողականորեն է կիրառվում տնտեսապես հիմնավորված և ժողովրդի կողմից ճանաչված ու պաշտպանություն գտած քաղաքականությունը, այնքան ավելի բարձր են գյուղատնտեսության հաջողությունները։ Միևնույն ժամանակ վոլյունտարիզմի ռեցիդիվների, ձևական-բյուրոկրատական ղեկրետավորման մեթոդների վերածնման դեմ մղվող պայքարի ամեն մի թուլացում անխուսափելիորեն առաջացնում է տնտեսական լուրջ հաշվեխախտներ, պարտիական ղեկավարության և մասսաների փոխըմբռնման խախտում։

---

21 Վ. Ի. Լենին։ Երկեր, հատ. 33, էջ 360—361։

22 Տե՛ս «Պրավդա», 1962 թվականի նոյեմբերի 22։

23 Տե՛ս Ն. Ս. Խրուշչով։ ՍՍՌՄ էկոնոմիկայի զարգացումը և ժողովրդական տնտեսության պարտիական ղեկավարումը։ Զեկուցում ՍՄԿԴ Կենտկոմի Պլենումում, 1962 թվականի նոյեմբերի 19-ին։ Երևան, 1962, էջ 8, 90—91։

24 «Пленум Центрального Комитета Коммунистической партии Советского Союза 15—19 декабря 1958 года. Стенографический отчет», стр. 31.

25 Նույն տեղը, էջ 5։

*խատանքը ժողովրդի մեջ, կասեցնում մասսաների նախաձեռնությունը։*

*Երբ քաղաքական հարցերը լուծված են, երբ ծրագիրը մշակված է և ժողովրդի վստահությունը նվաճված, սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, հարցերի մեխն այն է, որ տնտեսության ճիշտ կազմակերպմամբ արդարացվի այդ վստահությունը։ Բայց քաղաքականության, գաղափարախոսական աշխատանքի հարցերը ամենևին հետին պլանի վրա չեն մղվում։ «...Ժողովրդական մասսաներին համոզելու խնդիրը,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը,— երբեք չի կարող ետ մղվել,— ընդհակառակը, այն պետք է միշտ կանգնած լինի կառավարման կարևոր խնդիրների թվում»* [36]*։*

*Իր կործանմության ամբողջ իմաստը պարտիան տեսնում է ժողովրդին ծառայելու մեջ։ Ղեկավարվելով մարքսիստական-լենինյան տեսությամբ, ստեղծագործորեն օգտագործելով իր պատմական փորձը, նա ամեն օր հոգ է տանում ժողովրդի հետ իր կապը ամրապնդելու մասին, դրանով իսկ ապահովելով կոմունիզմի կառուցման մեծ ծրագրի կատարման հաջողությունը։*

---

[36] *В. И. Ленин.* Полн. собр. соч., т. 36, стр. 127

«ВОПРОСЫ ИСТОРИИ КПСС», № 3, 1963 г.



## ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ 1962 ԹՎԱԿԱՆԻՆ

1962 թվականը եղավ սոցիալիստական երկրների տնտեսական հզորության հետագա ամրապնդման, նրանց տնտեսական կապերի խորացման ու ընդլայնման տարի։ Ընթացիկ տարվա հաջողությունները մեկ անգամ ևս ապացուցում են, որ կապիտալիզմը տանուլ է տալիս սոցիալիզմի հետ խաղաղ մրցությունը։

Սոցիալիստական երկրների աշխատավորները լուրջ հաջողությունների հասան արդյունաբերության բնագավառում։ Արդյունաբերության համախառն արտադրանքի աճը 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, կազմեց (տոկոսներով). Բուլղարիայում՝ 11,1, Հունգարիայում՝ գրեթե 9, Լեհաստանում՝ 8,4, Ալբանիայում՝ 6,4, ԳԴՌ-ում՝ 6,1, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայում՝ 23,2, ՄԺՌ-ում՝ 14,2, ԿԺԴՌ-ում՝ 20, Ռումինիայում՝ 14,7, ՉԺՌ-ում՝ ավելի քան 30 (թեթև արդյունաբերություն), Չեխոսլովակիայում՝ 6,2, ՀՖՍՌ-ում՝ 7։

1962 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, արդյունաբերական արտադրանքն ավելացավ. Բուլղարիայում՝ 4,8, Հունգարիայում՝ 3,2, Չեխոսլովակիայում՝ գրեթե 3,3, Լեհաստանում՝ 4, Ռումինիայում՝ 4,5, Ալբանիայում՝ ավելի քան 4, ԳԴՌ-ում՝ 3,3, (այսինքն՝ նրա արդյունաբերական արտադրանքի ծավալը կազմեց ամբողջ Գերմանիայի նախապատերազմյան արդյունաբերական արտադրանքի մոտ 90 տոկոսը), ՄԺՌ-ում՝ 4,5, ՀՖՍՌ-ում՝ 3, ՎԴՌ-ում՝ 6,8 (1955 թ. համեմատությամբ) և ԿԺԴՌ-ում՝ 8,8 անգամ (1949 թ. համեմատությամբ)։



## ՏԻՐԱՊԵՏԵԼ ՊՐՈՊԱԳԱՆԴԵԼՈՒ ԱՐՎԵՍՏԻՆ

*Պրոպագանդիստը քաղաքական ակտիվ գործիչ է, կոչված՝ պրոպագանդելու մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարները, դաստիարակելու աշխատավորներին կոմունիզմ կառուցողների բարոյական-կոդեքսի սկզբունքներով, օգնելու նրանց՝ պրակտիկորեն լուծելու կոմունիստական շինարարության խնդիրները, կատարելու իրենց պարտքը պարտիայի, ժողովրդի հանդեպ։*

*Պարտիայի պատվավոր հանձնարարությունը կատարելու համար պրոպագանդիստը ո՛չ միայն պետք է լինի բազմակողմանի զարգացած, այլև գաղափարական խոր համոզմունքի տեր, պատրաստ՝ իրեն ամբողջովին նվիրաբերելու պարտիայի, ժողովրդի գործին, անհուն հավատ տածի կոմունիզմի հաղթանակի նկատմամբ։ Միայն այդպիսի պրոպագանդիստը կարող է իր հետևից տանել մարդկանց, դառնալ նրանց դաստիարակն ու կազմակերպիչը, պարտիայի քաղաքականության ակտիվ կիրառողը մասսաների շրջանում։*

*Հասկանալի է, որ այդ բարձր հատկանիշները պրոպագանդիստը ձեռք է բերում ժամանակի ընթացքում, քրտնաջան աշխատանքով։ Դրա համար պետք է մշտապես հարստացնել գիտելիքները, խորապես ուսումնասիրել ռևոլյուցիոն տեսությունը, ՍՄԿՊ համագումարների ու պլենումների նյութերը, իրազեկ լինել ներքին և արտաքին կյանքի կարևորագույն իրադարձություններին։ Մեծ պահանջներ են ներկայացվում պրոպագանդիստին։ Քաղաքական բարձր պատրաստականությունը, կուլտուրականությունը, գիտության, տեխնիկայի, արվեստի հարցերում կողմնորոշվելը, գեղարվեստական գրականությանը ծանոթ լինելը, տեղական պարտիական կազմակերպության առօրյա տնտեսական-քաղաքական խնդիրներին իրազեկ լինելը պրոպագանդիստի աշխատանքի հաջողության կարևոր պայմանն են։*

*Այսօր քիչ է մարդկանց զինել գիտելիքներով, պարզաբանել կոմունիստական շինարարության արմատական պրոբլեմները, բացատրել դրանց էությունն ու նշանակությունը. անհրաժեշտ է այնպես անել, որ ստացած գիտելիքները նրանց մոտ դառնան խոր համոզմունք, պրակտիկ գործ։ Պրոպագանդիստի աշխատանքը հիմնականում գնահատվում է նրանով, թե ի՞նչ չափով է նա ունկնդիրներին մոբիլիզացնում՝ իրենց պարտականությունները կատարելու։ Իսկ դրա համար պրոպագանդիստը պետք է ձեռք բերի տնտեսական կոնկրետ գիտելիքներ, բազմակողմանի ուսումնասիրի արտադրությունը, իրազեկ լինի ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կարևոր իրադարձություններին։ Դիցուք ռացիոնալիզատորները վերակառուցել և կատարելագործել են մի հին հաստոց, ժամկետից շուտ կատարվել է արտադրական պլանը, բրիգադան արժանացել է կոմունիստական աշխատանքի կոչման, գործի է դրվել տեխնիկա-*

*պես կատարելագործված մի նոր սարքավորում և այլն։ Առօրյա կյանքում տեղի ունեցող նմանօրինակ երևույթներն ու փաստերն անսպառ են և դրանք պետք է հաջողությամբ օգտագործել պարապմունքների ընթացքում։ Պրոպագանդիստն անտարբեր չպետք է անցնի նաև մեր կյանքում դեռևս նկատվող այնպիսի առանձին բացասական երևույթների կողքով, ինչպիսիք են՝ անտնտեսվարությունը, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկները, հակահասարակական զանազան երևույթներ և այլն։*

*Պրոպագանդիստական աշխատանքում թեորիան ու պրակտիկան պետք է հանդես գան միասնաբար, տեսական գիտելիքները պետք է օգնեն մարդկանց՝ գործելու անձնվիրաբար, պարտքի բարձր գիտակցությամբ։ Ամբողջ պրոպագանդան, ասել է Վ. Ի. Լենինը, պետք է կազմակերպել այնպես, որպեսզի գործը հանգի պետական շինարարության պրակտիկ ղեկավարմանը։ Ներկայումս մեծ ուշադրություն է հատկացվում կադրերի տնտեսագիտական ուսուցմանը։ Պրակտիկայում իրեն արդարացրել է այն մեթոդը, երբ խմբակում կամ սեմինարում կոնկրետ էկոնոմիկայի հարցերն ուսումնասիրելիս պրոպագանդիստն ունկնդիրներին տալիս է այնպիսի պրակտիկ հանձնարարություններ, որոնք անմիջականորեն կապվում են տվյալ ձեռնարկության ու տնտեսության արտադրական կյանքին։ Դա հնարավորություն է տալիս ունկնդիրներին՝ մանրամասն ու բազմակողմանի ուսումնասիրելու արտադրության գործերի վիճակն իրենց աշխատանքային տեղամասում, կյանքից առնված փաստերի միջոցով պարզաբանելու և հիմնավորելու այս կամ այն տեսական դրույթը, իրենց գործունեության ընթացքում կիրառելու ձեռք բերած գիտելիքները։*

*Արդյունաբերական ձեռնարկությունների կոնկրետ էկոնոմիկայի սեմինարում «Արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը և նրա իջեցման ուղիները» թեման ուսումնասիրելիս Ղափանի պղնձահանքային կոմբինատի 7—10 հանքի սեմինարավար Վ. Բաբայանը նախօրոք հանձնարարել էր ունկնդիրներին՝ ծանոթանալ իրենց աշխատանքային տեղամասի արտադրական պրոցեսներին, պարզել, թե ինչ հնարավորություններ կան թողարկվող արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու, տնտեսական վերլուծման ենթարկել ուսումնասիրության արդյունքները։ Ունկնդիրները, պատրաստվելով սեմինար պարապմունքին, հանգամանորեն ուսումնասիրեցին դասագրքի համապատասխան բաժինը, պարզելով, թե ինչ է արտադրանքի ինքնարժեքը, ինչպիսի տարրերից է բաղկացած այն և ինչպիսի տնտեսում կարող է տալ ինքնարժեքի թեկուզ մեկ տոկոսի իջեցումը։ Այդ նրանց օգնեց գիտակցորեն ու խոր թափանցելու իրենց գործունեության մեջ, պարզելու, թե ի՞նչ կարելի է անել արտադրության այս կամ այն տեղամասում, տեխնոլոգիական պրոցեսում արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ։ Եվ ահա մոտ մեկ ամիս պատրաստվելով սեմինարին, նրանք հավաքվեցին՝ ի մի բերելու այդ թեմայի վերաբերյալ իրենց գիտելիքները։*

*Թեմայի քննարկումն անցավ հետաքրքրական, առաջ բերելով մտքերի աշխույժ փոխանակություն։ Հանքի նորմավորող Հ. Գրիգորյանն իր ելույթում տեսականորեն հիմնավորեց և մի շարք համոզիչ օրինակներով ցույց տվեց ինքնարժեքի դերը աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական կուտակման և մարդկանց կենսամակարդակի բարձրացման գործում. ապա խոսեց այն մասին, որ իրենց հանքում, հանքավայրէջքների անցման պրոցեսում հնարավոր է զգալի չափով բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և բարելավել տեխնիկայի անվտանգությունը։ Նախօրոք կատարած մանրամասն հաշվարկումների հիման վրա նա գտնում էր, որ ենթահարկային բոլոր խավանցքերում պետք է կեռաշերեփային կարապիկներ տեղադրել։ Այդ առաջարկությունը հավանության արժանացավ և արմատավորվեց։ Դրա շնորհիվ հանքավայրէջքում լեռնանցման աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ մոտ 50 տոկոսով։ Հանքի տեխնիկական ղեկավար, ունկնդիր Ն. Եսայանը մանրամասն վերլուծեց հանքաքարի ինքնարժեքի վիճակը և կոնկրետ օրինակով բացատրեց՝ ինչպես պետք է հաշվարկել այն։ Նրա հաշվումները ցույց տվին, որ հանքի 1045-րդ հորիզոնականի հինգերորդ երակի № 1 բլոկում հանքաքարը կարելի է պոկել ոչ թե նախկին մեթոդներով, այլ հորատանցքերը հորատել խոր փորող հաստոցներով։ Այդ առաջարկության իրականացմամբ մեկ հաստոցով արդեն կարելի էր տալ չորս հորատողի արտադրանք, ինչպես և տնտեսել տեխնիկական մի շարք նյութեր ու դրամական միջոցներ։ Իսկ հանքի էլեկտրիկ Ի. Սարգսյանը ունկնդիրների ուշադրությունը հրավիրեց մի այլ հարցի վրա. նա գտնում էր, որ հանքի 1045-րդ հորիզոնականում խտացրած օդով աշխատող ապրբարձիչ մեքենան անհրաժեշտ է փոխարինել էլեկտրական հոսանքով աշխատող ապրբարձիչով, որն անհամեմատ քիչ էլեկտրաէներգիա է ծախսում և արտադրողականությունը բարձր է. հետագայում այս առաջարկությունը նույնպես ներդրվեց արտադրության մեջ։*

*Սեմինար պարապմունքի այս մեկ օրինակը վկայում է այն մասին, թե տեսական հարցերի վարպետ զուգակցումը արտադրության կոնկրետ խնդիրների հետ ինչ չափով կարող է նպաստել արտադրության բարելավմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը։ Այդ պարապմունքից հետո բոլոր ունկնդիրներն սկսեցին ավելի խոր ուսումնասիրել ուսումնական ծրագրով նախատեսած թեմաները, ակտիվ մասնակցել արտադրության կազմակերպմանը։ Յուրաքանչյուր թեմայի ուսումնասիրման հետ կապված նրանք հայտաբերում էին թաքնված նորանոր ռեզերվներ և իրենց աշխատանքային նոր, առաջավոր մեթոդներով ու ձևերով անմիջականորեն նպաստում արտադրության ռացիոնալ կազմակերպմանը։*

*Սակայն, ափսոսանքով պետք է նշել, որ դեռևս մեր ոչ բոլոր պրոպագանդիստներն են կարողանում ինչպես հարկն է գնահատել և հասկանալ տեսական հարցերը պրակտիկ խնդիրների հետ սերտորեն զուգորդելու նշանակությունը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում Ն. Ս. Խրուշչովն ասաց.* «Աշխատանքի արտադրողականության մասին մենք շատ ենք խոսում ու գրում: Սակայն ես կասեի, որ մենք միշտ չէ որ հասնում ենք այն բանին, որ տառացիորեն յուրաքանչյուր աշխատավոր լավ հասկանա, թե ինչ է աշխատանքի արտադրողականությունը թե՛ անձամբ իր համար, թե՛ ամբողջ հասարակության համար»:

*Պրոպագանդիստը միշտ պետք է հիշի, որ իր գործունեությունը չի սահմանափակվում միայն ունկնդիրներին սոսկ քաղաքական գիտելիքներ հաղորդելով. նրա աշխատանքն, առաջին հերթին, չափվում է տվյալ արտադրական տեղամասում ձեռք բերված տնտեսական արդյունքով։ Իսկ դրա համար նա պետք է հաճախ լինի իր ունկնդիրների աշխատանքային տեղամասում, պարապմունքներից դուրս պարբերաբար հանդիպումներ ունենա նրանց հետ, ծանոթ լինի նրանց աշխատանքային գործունեությանը։ Ունկնդիրների հետ զրույցը պրոպագանդիստին հնարավորություն կտա իմանալու, թե ինչ դժվարու-*

թյունների են հանդիպում նրանք, ինչպիսի օգնության կարիք են զգում, ինչ են կարդում և այլն։ Այդպիսի ընկերական հանդիպումները խիստ բարերար են ո՛չ միայն ունկնդիրների, այլև իր՝ պրոպագանդիստի համար. դրանք օգնում են նրան՝ հերթական պարապմունքն ավելի հաջող նախապատրաստելու, ուսում-նասիրվող թեման արտադրական կյանքի հետ հմտորեն զուգակցելու։

Ամեն մի պրոպագանդիստի համար լավագույն օրինակ կարող է ծառայել մեծ Լենինի պրոպագանդիստական աշխատանքի հիանալի փորձը։ Ն. Կ. Կրու-պսկայան գրել է, որ Վլադիմիր Իլյիչը միշտ մանրամասն ուսումնասիրում էր մասսաներին, գիտեր նրանց կենսապայմանները, կենցաղը, նրանց հուզող կոնկրետ հարցերը։ Հանդես գալով մասսաների առաջ՝ նա հենց զեկուցման, դասախոսության, զրույցի պրոցեսում հաշվի էր առնում, թե տվյալ պահին ինչն է առանձնապես հուզում լսարանին, ի՞նչն է նրան անհասկանալի, ի՞նչն ց նրա համար առանձնապես կարևոր։ Ուշադրության լարվածությունից, հար-ցերից, ռեպլիկաներից, ելույթներից Իլյիչը միշտ կարողանում էր որսալ լսա-րանի տրամադրությունը, կարողանում էր ընդառաջել լսարանի հետաքրքրա-սիրությանը, պատասխանել անհասկանալի հարցերին, նվաճել լսարանը, նրա հետ հաստատել սերտ փոխըմբռնում։

Այն պրոպագանդիստը, որ սահմանափակվում է սոսկ փաստեր հաղորդե-լով, ոչ թե պրոպագանդիստ, այլ ինֆորմատոր է։ Նա չպետք է մեխանիկորեն հաղորդի թերթի, ժուռնալի կամ գրքի տեքստը, պատրաստի մտքերը, առանց նախօրոք մշակելու, նրանց վրա մանրամասն նախապատրաստական աշխա-տանք կատարելու։ Կյանքի երևույթները, իրադարձություններն ու փաստերը վերլուծելիս նա պետք է ունկնդիրներին հաղորդի նրանց նկատմամբ ունեցած իր վերաբերմունքը, մտքերն ու զգացումները։

Մ. Ի. Կալինինը խիստ դատապարտում է այն մարդկանց, ովքեր սիրում են խոսել պատրաստի ֆրազներով։ «Իսկ գիտե՞ք ինչ է նշանակում խոսել պատրաստի ֆրազներով,— ասել է նա,—այդ նշանակում է, որ ձեր միտքը չի աշխատում, այլ աշխատում է միայն լեզուն։ Պատրաստի ֆրազով դուք չեք կարող ներգործել մարդկանց վրա։ Չեք կարող այն պատճառով, որ առանց ձեզ էլ այդ պատրաստի ֆրազը գիտեն։ Դուք վախենում եք, որ եթե ձեր ցան-կացած ձևով ասեք, այդ այնքան էլ գեղեցիկ չի լինի։ Սխալվումե՛ք։ Այն ավե-լի լավ կլինի, ավելի մատչելի կլինի...։ Յուրաքանչյուրը պետք է ձգտի խոսել իր լեզվով, այն լեզվով, որ մայրն է տվել նրան։ Ամենալավ լեզուն մայրական լեզուն է, հավատացեք ինձ»։

Սեփական մտքերից զուրկ, գրքային, պատրաստի ֆրազներից կազմված ելույթը Կալինինը համեմատում է լուսնի լույսի հետ, որը չի ջերմացնում։ Պրոպագանդիստը ունկնդիրներին հուզող սուր, ցավոտ հարցերի կողքով չպետք է անցնի, ընդհակառակը, նա ինքը պետք է առաջ քաշի դրանք և համոզիչ պա-տասխան տա, իսկ դժվարանալու դեպքում, առանց քաշվելու, հարցի պա-տասխանը հետաձգի հաջորդ պարապմունքին։

Ընդլայնելով իր գաղափարական-քաղաքական մտահորիզոնը, պրոպա-գանդիստը միաժամանակ պետք է զարգացնի և հարստացնի իր լեզուն։ Որ-պեսզի պրոպագանդիստի ասածն իր նպատակին հասնի, նա պետք է լավ իմա-նա այն, ինչի մասին խոսում է, կարողանա պարզ ու հստակ մտածել։ Պրոպա-գանդիստի խոսքը պետք է կառուցված լինի կյանքից առնված կոնկրետ օրի-նակների վրա։ Այդ դեպքում միայն նրա լեզուն ավելի հարուստ ու արտահայ-



տիչ կլինի, ելույթը՝ պարզ ու համոզիչ։ Լավ է, երբ պրոպագանդիստը քիչ է գործածում օտար և անհասկանալի բառեր ու տերմիններ, խոսում է կարճ նա-խադասություններով ու պարբերություններով, խուսափում է անհարկի կրկնու-թյունից և միօրինակ փաստերի հաճախակի մեջբերումից։ Քիչ չեն այնպիսի պրոպագանդիստները, որոնք ունկնդիրներին ձանձրույթ են պատճառում պա-րապմունքը վարելու դոգմատիկ, տիրացուական մեթոդով։ Այդպիսի պրոպա-գանդիստների միտքը ստեղծագործող չէ. այդ է պատճառը, որ ամբողջ պա-րապմունքի ընթացքում նրանք աչքը չեն կտրում պատրաստի ֆրազներով կազմված կոնսպեկտից և երբեմն իրենք էլ չեն հասկանում իրենց կարդացածը։

Իր բարեխիղճ, պրոպագանդիստական լավ աշխատանքով աչքի է ընկնում Երևանի շոգեքարշային դեպոյի պրոպագանդիստ Սուրեն Քալանթարյանը, որը մասսաների մեջ տարվող քաղաքական աշխատանքի բազմամյա, հարուստ փորձ ունի։ Նա ղեկավարում է ընթացիկ քաղաքականություն ուսումնասիրող խմբակը, ուր ընդգրկված են 30 շոգեքարշայիններ։ Իր համեստությամբ ու ջա-նասեր աշխատանքով նա վայելում է ինչպես խմբակի ունկնդիրների, այնպես էլ ամբողջ կոլեկտիվի սերն ու համակրանքը։ Մեծ բարեխղճությամբ զբաղվում է իր տեսական, քաղաքական և մեթոդական գիտելիքների հարստացմամբ, սիստեմատիկաբար ուսումնասիրում մամուլում հրապարակվող այն բոլոր նյու-թերը, որոնք այս կամ այն չափով նպաստում են պրոպագանդիստական աշ-խատանքին և առնչվում քաղխմբակում ուսումնասիրվող թեմաների հետ։ Նա քաղլուսկաբինետի մշտական հաճախորդն է, ակտիվ մասնակցում է պրոպա-գանդիստների համար կազմակերպվող բոլոր միջոցառումներին։ Լավատեղյակ լինելով քաղաքական առօրյա իրադարձություններին և ունկնդիրների արտա-դրական գործունեությանը՝ միշտ հետաքրքիր ու բովանդակալից է անցկացնում քաղխմբակի պարապմունքները, անկաշկանդ, ընկերական զրույցի միջոցով փոխադարձ կապ է ստեղծում իր և ունկնդիրների միջև։ Պարապմունքների ժա-մանակ օգտագործում է համապատասխան դիդակտիկ նյութեր։

Ս. Քալանթարյանը մեծ մասամբ պարապմունքներն անց է կացնում կեն-դանի, աշխույժ զրույցի ձևով, հետևում, որ բոլոր ունկնդիրներն ակտիվ մաս-նակցեն թեմայի քննարկմանը։ Պարապմունքի ընթացքում անցնելիք թեման սերտորեն կապում է շոգեքարշայինների առջև ծառացած կոնկրետ խնդիրների, նրանց ստանձնած պարտավորությունների հետ։

Պարապմունքի հաջողության համար մեծ նշանակություն ունեն պրոպա-գանդիստի լեզվի պատկերավորությունը, մաքրությունն ու ճշտությունը. դրանք պետք է համապատասխանեն նրա գաղափարական հագեցվածությանը։ Ցավոք, ոչ բոլոր պրոպագանդիստներն են լիովին տիրապետում խոսքի արվեստին, որը կարելի է ձեռք բերել հաստատակամ, քրտնաջան աշխատանքի միջոցով։ Լեզ-վի հարստացման կարևոր միջոցառումներից մեկը ժողովրդական ասացվածք-ների ու առածների օգտագործումն է, որոնց մեջ ամփոփված են ժողովրդի իմաստությունն ու կենսափորձը։ Ա. Մ. Գորկին իրավացի կերպով ասել է, որ առածները միշտ կարճ են, բայց նրանց մեջ ամբողջ գրքերի համար մտքեր են դրված։ Առածն ու ասացվածքը խոսքը զարդարում են։ Սառը, անտարբեր խոսքը մերժելի է մեր պրոպագանդայում։ Պրոպագանդիստի խոսքն ինքնանպատակ չէ, խոսքը մասսաներին պետք է նպատակամղի ազնիվ գործերի. խոսքը գա-ղափարական պայքարի հատու զենքն է։ Այդ իսկ պատճառով պրոպագանդիստը պարտավոր է ճոխացնել իր լեզուն, բարձրացնել խոսքի կուլտուրան. դրա հա-

մար պետք է շատ կարդալ, հարստացնել միտքը ամենաբազմազան հեղինակների գործերն ընթերցելով:

Գեղարվեստական գրականությունը պատկերավոր, գեղեցիկ խոսքի ճաշակ է պատվաստում, սովորեցնում է պարզ ու հստակ խոսել:

Սակայն միշտ պետք է հիշել, որ պրոպագանդիստն ինչպիսի լեզու էլ ունենա, ինչպիսի մեթոդներ էլ կիրառի, պարապմունքի գաղափարական մակարդակը չի ապահովի, իր նպատակին հասած չի լինի, եթե նրա բերած փաստերն ու օրինակները չիմաստավորվեն մարքսիզմ-լենինիզմի գրքերից, եթե դրանք չհարստացնեն ունկնդիրների աշխարհայացքը, չսովորեցնեն նրանց վերլուծել և ընդհանրացնել քննարկվող հարցերը, կյանքի երևույթները: Պրոպագանդիստական արվեստը պահանջում է ոգեշնչում, ստեղծագործական հնարամտություն, բարձր վարպետություն:

Ա. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ

# ԱՇԽԱՏՈՒՄ ԵՆ ՆՈՐ ՁԵՎՈՎ

Հինգ ամիս է անցել Ստեփանավանի գյուղական արտադրական պարտիական կազմակերպության հիմնադիր կոնֆերանսից: Իհարկե, առայժմ վաղ է խոսել պարտիական կոմիտեի կատարած ինչ-որ մեծ գործերի մասին, խոշոր ընդհանրացումներ անել: Այդուհանդերձ նոր պայմաններում նա ձեռք է բերել աշխատանքի կազմակերպման և տնտեսության ղեկավարման որոշ փորձ:

Ստեփանավանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեն միավորում է 104 սկզբնական պարտիական կազմակերպություն, ընդ որում կոլտնտեսային-սովխոզային 35 և գյուղատնտեսական հումքը վերամշակող երեք ձեռնարկությունների կազմակերպություններ: Պարտիական կոմիտեի կազմակերպական բաժնի յոթ հրահանգիչներից յուրաքանչյուրը սպասարկում է 15—18 սկզբնական պարտկազմակերպության, որոնցից 4—6-ը՝ արտադրական (կոլտնտեսային-սովխոզային): Կոմիտեի չորս տեսուչ-պարտկազմակերպիչները, ի տարբերություն կազմբաժնի հրահանգիչների, ամրացված են միայն կոլտնտեսությունների ու սովխոզների պարտկազմակերպություններին և աշխատում են անմիջականորեն պարտիական կոմիտեի քարտուղարի ղեկավարությամբ, կատարում են նրա և պարտիական կոմիտեի բյուրոյի կարևոր հանձնարարությունները:

Ընթացիկ տարում արտադրական վարչության առջև լուրջ խնդիրներ են դրված: Գյուղատնտեսության աշխատողները պարտավորվել են յոթնամյակի հինգերորդ տարում արտադրել 250 հազար ցենտներ կաթ, 26,1 հազար ցենտներ միս, 1070 ցենտներ բուրդ և մեկ միլիոն 750 հազար ձու, այսինքն՝ նախորդ տարվա համեմատությամբ կաթի արտադրությունն ավելացնել 9, մսինը՝ 13,1, բրդինը՝ 22,6, ձվինը՝ 9 տոկոսով: Կոլտնտեսություններն ու սովխոզները խոստացել են յուրաքանչյուր հեկտարից հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հասցնել 14 ցենտների (համախառն արտադրանքը նախորդ տարվա համեմատությամբ ավելացնել 12 հազար ցենտներով), ինչպես և ստանալ անցյալ տարվանից 4000 տոննայով ավելի կարտոֆիլ և այլն: Այս խնդիրների հաջող լուծմանն է ուղղված պարտիական կոմիտեի կազմակերպական-գաղափարական ամբողջ աշխատանքը:



Պարտիական կոմիտեն իր գործունեության հենց առաջին օրերից հրաժարվել է նախկին պարտշրջկոմների աշխատանքի ոճից: Հայտնի է, որ ոչ հեռու անցյալում առանձին պարտշրջկոմներ հաճախ փոխարինում էին տնտեսական-սովետական օրգաններին, դիմազրկում վերջիններիս, իրենց վրա վերցնելով պարտիական ապարատի համար ոչ բնորոշ ֆունկցիաներ: Նախկինում պարտշրջկոմներն անընդհատ տեղերն էին ուղարկում պարտիական-սովետական ակտիվի մշտական և ժամանակավոր լիազորներին՝ զանազան հանձնարարություններով: Այդ պրակտիկան դիմազրկում էր տնտեսական կադրերին, իջեցնում պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ: Դեն նետելով աշխատանքի բյուրոկրատական, իրենց չարդարացրած մեթոդները, պարտիական կոմիտեն տնտեսություններին և պարտկազմակերպություններին ցույց է տալիս արդյունավետ օգնություն ու ղեկավարություն:

Պարտիական կոմիտեի աշխատողներն իրենց գործունեությամբ չեն կաշկանդում կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների և մասնագետների ստեղծագործական նախաձեռնությունը, չեն խնամակալում, այլ աջակցում են, որ նրանք ավելի լայնորեն դրսևորեն արտադրությունը և մարդկանց կազմակերպելու իրենց ունակությունները: Պարտիական կոմիտեի աշխատողներն օրվա մեծ մասը լինում են այնտեղ, ուր վճռվում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ընթացիկ տարվա պարտավորությունների կատարման բախտը, այնտեղ, ուր դժվարություններ կան, ուր փորձված կազմակերպչի հեղինակավոր խոսքի, խելացի խորհուրդների, կենդանի օգնության կարիքն է զգացվում: Կոմիտեի աշխատանքում վերացվել է նիստամոլությունը, այլևս շատ խորհրդակցություններ ու հավաքներ չեն հրավիրվում, իրար կրկնող որոշումներ չեն կայացվում, անպատեհ առիթներով տնտեսությունների ղեկավարներին չեն կանչում պարտկոմ: Պարտիական կոմիտեի բյուրոյի նիստերում հիմնովին փոխվել է քննարկվող հարցի բնույթը: Կոլեկտիվ ղեկավարման այդ օրգանում քննարկվում են կոլտնտեսային-սովխոզային արտադրության կազմակերպման, նոր ռեզերվների հայտաբերման ու օգտագործման, արտադրության մեջ գիտության նվաճումների և առաջավոր փորձի արմատավորման, տնտեսությունների էկոնոմիկայի հեռանկարային զարգացման, կադրերի ընտրության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, պարտիական ու պետական վերահսկողության հետևողական իրագործման և այլ կարևոր հարցեր:

Պարտիական կոմիտեն սկսեց այն բանից, որ իր ապարատի աշխատողների և արտադրական վարչության մասնագետների ուժերով հանգամանորեն ուսումնասիրեց կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկան, վերլուծեց անցած տնտեսական տարվա արդյունքները և մշակեց արդյունավետ միջոցառումներ արտադրության կազմակերպումը և ղեկավարումը հիմնովին բարելավելու, 1962 թ. նկատված թերությունները չկրկնելու համար:

Այսպես, հունվարի առաջին կեսին վարչության 18 տնտեսություններ, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, զգալի չափով պակաս կաթ էին ստացել: Վտանգի տակ էր կաթի արտադրության ու վաճառքի առաջին եռամսյակի առաջադրանքների կատարումը: Անհրաժեշտ էր վճռական միջոցառումների դիմել՝ ճեղքվածքը փակելու, կաթի արտադրության հարաճուն վերելքն ապահովելու համար: Պարտիական կոմիտեն ընդհանուր

ցուցումներ տալու փոխարեն աշխատեց պարզել թե ինչո՞ւ է իջնում կաթի
օրական ելքը, գործնականում ի՞նչ կարելի է անել այն կանխելու համար: Այդ
նպատակով պարտիական կոմիտեի աշխատողները տեղում ծանոթացան գոր-
ծերի վիճակին, զրուցեցին կոմունիստների, անասնապահների հետ, ծանոթա-
ցան կովերի կերակրման ու խնամքի ռեժիմին և այլն:

Ի դեպ, տարբեր տնտեսություններում պատճառները տարբեր էին: Կիրո-
վոյի կոլտնտեսություն եկավ պարտիական կոմիտեի տեսուչ-պարտկազմա-
կերպիչ Ս. Համբարյանը: Պարտկոմի քարտուղարից նա հանձնարարություն
էր ստացել՝ մնալ գյուղում և ապահովել կաթի արտադրության բարձրացումը:
Տեսուչ-պարտկազմակերպիչը պարզեց, որ ֆերմայում խիստ ընկած է աշխա-
տանքային կարգապահությունը, խախտվում է կթի ու կերակրման ռեժիմը:
Եվ պատահական չէր, որ ամեն մի ֆուրաժային կովից օրական ստացվում էր
չորս-հինգ կիլոգրամ կաթ:

Պարտկոմի տեսուչ-կազմակերպիչն ավելի քան տասն օր մնաց Կիրովո-
յում, գործնական օգնություն ցույց տվեց պարտկազմակերպությանը: Տեսուչ-
պարտկազմակերպչին անհանգստացրեց ֆերմայում կթի ագրեգատի տեղա-
դրման ու գործարկման ձգձգումը: Դրա պատճառներից մեկը կոլտնտեսության
որոշ աշխատողների պահպանողականությունն էր, որի հաղթահարումը նրանից
քիչ ջանք չխլեց: Շուտով ագրեգատը տեղադրվեց. մեքենայացվեց 90 կովի կիթը:
Յուրաքանչյուր կթվոր ստացավ արտադրական կոնկրետ առաջադրանք, մտցը-
վեց կաթի ամենօրյա հաշվառման կարգ, դրանով իսկ վերահսկողության տակ
առնվեց ամեն մի անասնապահի գործունեությունը: Ընկեր Համբարյանի օգ-
նությամբ արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչը և տնտեսության
մասնագետները մշակեցին անասնապահների հավելյալ վարձատրության օրի-
նակելի նորմաներ. այդ նյութապես խրախուսեց անասնապահներին: Օր-օրի
սկսեց ավելանալ կաթի արտադրությունը: Ընթացիկ տարվա առաջին եռ-
ամսյակում, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ,
այն ավելացավ 30—35 տոկոսով:

Բարվոք չէր դրությունը նաև Նովոսելցովոյի կոլտնտեսությունում: Տեսուչ-
պարտկազմակերպիչ Ս. Կարապետյանը տեղում աշխատեց պարզել կաթնա-
տվության իջեցման պատճառները: Տնտեսության ղեկավարներն այդ բացա-
տրում էին կթու կովերի պակասով: Իրոք, անցյալ տարվա համեմատությամբ
քիչ կովեր էին ծնել: Բայց այդ չէր միակ պատճառը. պարզվեց, որ ֆերմայում
ջուր չկա. կովերին օրական երկու անգամ ջրելու էին տանում մեծ հեռավո-
րության վրա գտնվող աղբյուրում, անասուններից շատերը մրսում էին և,
հաճախ, վերադառնում՝ առանց ջուր խմելու: Տեսուչ-պարտկազմակերպչի ա-
ջակցությամբ մեկ շաբաթում ձեռք բերվեցին և ֆերմայում տեղադրվեցին
ավտոմատ խմոցներ: Մի շարք միջոցառումներ իրականացվեցին նաև կովերի
խնամքն ու կերակրումը բարելավելու, աշխատանքային կարգապահությունն
ամրապնդելու ուղղությամբ: Արդյունքն այն եղավ, որ նույն կովերը տվին
ավելի շատ կաթ, քան անցյալ տարի:

Կաթի արտադրության ավելացմանը մեծ չափով նպաստում է անասնա-
պահների սոցիալիստական մրցության խելացի կազմակերպումը: Ելնելով
ստանձնած պարտավորություններից, պարտիական կազմակերպությունների
նախաձեռնությամբ բոլոր տնտեսություններում մշակվել են կաթի արտա-
դրության ամենամսյա, տասնօրյա և ամենօրյա առաջադրանքներ՝ յուրաքան-



չյուր ֆերմայի, բրիգադայի, կթվորի համար: Տնտեսություններում ստեղծվել
են հանձնաժողովներ, որոնք տասն օրը մեկ անգամ հանրագումարի են բերում
կաթի արտադրության արդյունքները և առաջավորներին հանձնում փոխանցիկ
դրոշներ, վիմպելներ, ներկայացնում պարգևատրման և ըստ արժանվույն
մեծարում: Մրցության արդյունքները մասսայականացվում են պատի թերթե-
րի, ցուցադրական նյութերի միջոցով: Միաժամանակ արտադրական վարչու-
թյունում ստեղծված է ժյուրի, որն ամփոփում է սոցիալիստական մրցության
ամենամսյա արդյունքները և հաղթողին հանձնում պարտիական կոմիտեի և
արտադրական վարչության փոխանցիկ դրոշը:

Ստեփանավանի արտադրական վարչության տնտեսությունները 1963 թ.
մայիսի մեկի դրությամբ արտադրել են 82574 ցենտներ կաթ, այսինքն՝ 18397
ցենտներով ավելի, քան անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջա-
նում: Առ մեկը մայիսի պետությանը վաճառվել է 65980 հազար ցենտներ
կաթ, այսինքն՝ նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ
20510 հազարով ավելի:

Պարտիական կոմիտեն լուրջ քայլեր է կատարում նաև մսի արտադրու-
թյունն ավելացնելու ուղղությամբ: Բտման գործի հաջող կազմակերպման
շնորհիվ կոլտնտեսություններն ու սովխոզները ժամկետից մեկ ամիս շուտ,
110 տոկոսով կատարեցին պետությանը միս հանձնելու առաջին եռամսյակի
առաջադրանքները: Մսի արտադրության գործում առաջին բնագիծը նվաճել
են Սարատովկա և Բլագոդարնոյե գյուղերի կոլտնտեսությունները. 1962 թվա-
կանին 100 հեկտար վարելահողի դիմաց նրանք արտադրեցին 83,6 և 100
հեկտար այլ հողերի դիմաց՝ 18,9 ցենտներ միս: Ուրախալի է նշել, որ այդ
տնտեսությունները ձեռնամուխ են եղել երկրորդ բնագծի նվաճմանը:

Պարտիական կոմիտեն առանձին ուշադրություն է հատկացնում հանրա-
յին հոտում մայրական կազմի ավելացմանը և անասունների ցեղայնության
բարելավմանը: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ մինչև ընթացիկ
տարվա վերջը վարչության տնտեսություններում յուրաքանչյուր 100 հեկտարի
դիմաց կովերի գլխաքանակը կհասցվի միջին հաշվով 15-ի: Իհարկե, առան-
ձին տնտեսություններում (Հոբարձի, Պուշկինո, Բլագոդարնոյե, Նովոսելցովո)
այդ ցուցանիշը շատ ավելի բարձր կլինի (20—27 գլուխ), բայց տնտեսու-
թյունների որոշ մասում այն կկազմի հազիվ 8—12 գլուխ: Ուստի պարտիա-
կան կոմիտեն և արտադրական վարչությունը գործն այնպես են կազմակեր-
պում, որ առաջին երեք-չորս տարում ամբողջ վարչությունում յուրաքանչյուր
100 հեկտարի դիմաց պահվի մինիմում 20 կով: Հունիսի մեկին կապահովվի
կովերի գլխաքանակի ավելացման պարտավորության կատարումը:

Կաթի արտադրության ավելացման գործում խոշոր ռեզերվ է եռ մնացող
տնտեսություններն առաջավորներին հասցնելը: Պարտիական կոմիտեն հենց
այդպիսի կուրս է վերցրել: Իհարկե, առայժմ վաղ է խոսել պարտկոմի կողմից
կատարվող աշխատանքի փորձի մասին, բայց կարևորն այն է, որ այդ ուղ-
ղությամբ արվում են առաջին հաստատուն քայլերը: Շահնազարի կոլտնտե-
սությունը, որը համարվում է ամենախոշոր տնտեսություններից մեկը, տըն-
տեսապես և կազմակերպչորեն ետ էր մնում. այնտեղ վատ էին օգտագործ-
վում արտադրական անսպառ հնարավորություններն ու ռեզերվները: Պար-
տիական կոմիտեի քարտուղար Օ. Հովակիմյանը, ծանոթանալով տնտեսու-
թյան իրավիճակին, խորհրդակցեց արտադրական վարչության պետ Ք. Գրի-

գորյանի հետ և համատեղ որոշեցին պարտկոմի տեսուչ-կազմակերպիչ Կ. Ղա-
ղարյանի գլխավորությամբ արտադրական վարչության մի խումբ մասնագետ-
ներ ուղարկել Շահնազար։ Այդ խումբն օգնեց տեղի պարտիական կազմա-
կերպությանը և վարչությանը՝ տնտեսության ներքին ռեզերվները կյանքի կո-
չելու, մթերքների արտադրությունն ավելացնելու։

Ետ մնացող տնտեսությունների էկոնոմիկան բարձրացնելու նպատակով
պարտիական կոմիտեի նախաձեռնությամբ կազմակերպվել է ընկերական
փոխօգնություն։ Առաջավոր տնտեսություններից առաջինը նորաշենցիներն
էին, որ սատանձնեցին Հարևան Ղզլղաշի կոլտնտեսության շեֆությունը։ Նրանք
Ղզլղաշի կոլտնտեսությանն օգնեցին՝ բացահայտելու տնտեսության հնարա-
վորություններն ու ռեզերվները, դրանց հիման վրա կազմելու ընթացիկ տարվա
արտադրական պլանը։ Նրանք նորոգեցին կոլտնտեսության տրակտորները, լը-
րացրին ոլոռի և կարտոֆիլի սերմացուի պակասը։ Վարդաբլուրի և Կույբիշևոյի
գյուղատնտեսական արտելների անդամներն իրենց Հարևան Գյառգյառի և
Կաթնաղբյուրի ետ մնացող կոլտնտեսություններին հաղորդում են աշխատան-
քի կազմակերպման ու վարձատրության, անասունների խնամքի ու կերակըր-
ման իրենց փորձը, օգնելով արմատավորելու այն։ Ընկերական փոխօգնու-
թյան այդ շարժումն ավելի ու ավելի է ծավալվում։

Ինչ խոսք, միայն ապարատի ուժերով պարտիական կոմիտեի համար
դժվար կլիներ հաջողությամբ լուծել իր առջև ծառացած բոլոր խնդիրները։
Այդ իսկ պատճառով կոմիտեն զարկ է տալիս հասարակական հիմունքների
զարգացմանը։ Հիմնադիր կոնֆերանսից անմիջապես հետո պարտկոմի ապա-
րատում ստեղծվեցին արտահաստիքային հինգ բաժիններ ու հանձնաժողով-
ներ։ Այսպես, գիտության նվաճումների, առաջավոր փորձի ուսումնասիրման
ու արմատավորման բաժնում հասարակական հիմունքներով աշխատում են
բարձրագույն կրթությամբ քսան մասնագետներ։ Սկսել են գործել գյուղատըն-
տեսության էկոնոմիկայի և արտադրության կազմակերպման, պարտիական
կազմակերպական աշխատանքի և ՍՄԿՊ շարքերի ընդունելության ու քաղ-
քարկման հարցերով զբաղվող բաժինները։ Կոմիտեի գաղափարական աշխա-
տանքի հանձնաժողովում ընդգրկվածները լավագույն պրոպագանդիստներ են։
Հասարակական հիմունքներով ստեղծված հիշյալ ինստիտուտները թեև նոր
են սկսել ծավալել իրենց գործունեությունը, բայց արդյունքներն զգալի են։

Պարտիական կոմիտեն իր գործունեության ընթացքում հենվում է սկզբ-
նական պարտկազմակերպությունների վրա, ունկնդրում կոմունիստների ձայ-
նին։ Զախողվա՞ծ է գործը, վիժեցվո՞ւմ է պլանների կամ վերադաս օրգանների
որոշումների կատարումը, դրա համար հաշիվ պետք է տան ո՛չ միայն տվյալ
տեղամասի ղեկավարները, այլև այդտեղ աշխատող ամեն մի կոմունիստ։

Պարտիական կոմիտեն մշտապես իր ուշադրության կենտրոնում է պա-
հում կադրերի ընտրության, տեղաբաշխման, դաստիարակման և նրանց ու-
սուցման հարցերը, օգնում սկզբնական պարտկազմակերպություններին՝ ար-
տադրության մեջ ճիշտ տեղաբաշխելու կոմունիստների ուժերը։ Բանն այն է,
որ կոմունիստներից շատերը չէին աշխատում արտադրության վճռական տե-
ղամասերում, այլ գործում էին վարչական ապարատներում։ Ուսումնասիրու-
թյունից պարզվեց, որ մի շարք տնտեսություններ ունեն բավականին ուռճացած
վարչա-կառավարչական ապարատ։ Պարտիական կոմիտեի և արտադրական
վարչության նախաձեռնությամբ բոլոր տնտեսություններում զգալիորեն կըր-



ճատվեց վարչա-կառավարչական ապարատը։ Այսպես։ Ղարաքիլիսայի կոլտըն-
տեսությունում բանջարաբոստանային բրիգադան ընդամենը ցիթ հեկտար հող
էր մշակում. հարկ եղավ հողը վերաբաշխել դաշտավարական բրիգադների
միջև և կրճատել բրիգադավարի հաստիքը։ Կոլտնտեսությունն ուներ շինա-
րարական ու ճանապարհաշինական առանձին բրիգադներ, որոնց միացման
շնորհիվ մեկ հաստիք ևս կրճատվեց։ Կովաբուծական ֆերմայում լիկվիդաց-
վեցին երեք բրիգադավարների հաստիքները։ Կոլտնտեսության տրակտորա-
յին պարկն այնքան։ էլ մեծ չէ, բայց բրիգադավարից բացի այստեղ կային
նաև բրիգադավարի տեղակալ և հաշվառիչ։ Կրճատվեցին վերջին երկու
հաստիքները։ Կոլտնտեսությունն այլևս հինգ պահակ չունի։ Վարչա-տնտեսա-
կան ապարատից ազատված կոլտնտեսականները, այդ թվում կոմունիստները,
համալրեցին անմիջականորեն արտադրության մեջ աշխատողների շարքերը։

Նույն Ղարաքիլիսայի կոլտնտեսությունում պարտկազմակերպության
48 անդամներից միայն 18-ն էին զբաղվում անմիջական արտադրության մեջ։
Կոմունիստներին ճիշտ տեղաբաշխելուց հետո արտադրության մեջ շարքային
աշխատանք կատարող կոմունիստների թիվը մեծ չափով ավելացավ։

Պարտիական կոմիտեն գաղափարական բոլոր լծակներն ի սպաս է դրել
տնտեսական խնդիրների լուծմանը։ Այստեղ առանձնահատուկ ուշադրություն
է նվիրվում կոլտնտեսությունների ու սովխոզների աշխատողների և, մասնա-
վորապես, ղեկավար կադրերի տնտեսագիտական ուսուցմանը։ Գյուղատըն-
տեսության էկոնոմիկան ուսումնասիրող երեք տեսական սեմինարներում ներ-
գրավված են մոտ 500 ղեկավար աշխատողներ։ Գործին զգալիորեն օգնում են
պարբերաբար կազմակերպվող տնտեսագիտական կոնֆերանսները։ Քաղա-
քական ուսուցման շատ խմբակների ու տեսական սեմինարների գործունեու-
թյան մեջ դրականն այն է, որ ուսումնասիրվող թեմաները սերտորեն առնչվում
են տնտեսական շինարարության գործնական խնդիրների հետ, տեսական
հարցերի լույսի տակ վերլուծվում է գործերի վիճակը աշխատանքային յու-
րաքանչյուր տեղամասում, արվում են կոնկրետ հետևություններ պրակտիկ
գործունեության համար։

Պարտիական կազմակերպությունների գործունեության մեջ պատշաճ տեղ
է տրվում գյուղատնտեսության առաջավորների փորձի պրոպագանդմանը։
Օրինակ, պարտիական կոմիտեն ուսումնասիրեց և ընդհանրացրեց Լոռվա
տոհմաբուծարանի կթվորուհի Գյուլիստան Մամեդովայի աշխատանքի փորձը։
1962 թվականին իր խնամած յուրաքանչյուր կովից նա ստացել է 4000 կիլո-
գրամ կաթ։ Կոմիտեի հանձնարարությամբ գյուղատնտեսության էկոնոմիկան
և փարոսների փորձն ուսումնասիրող խմբակներում ու դպրոցներում ուսում-
նասիրվեց անվանի կթվորուհու աշխատանքի փորձը, կազմակերպվեց նրա
ելույթը անասնապահների առաջ, կոմիտեի գաղափարական բաժինը հրա-
տարակեց հատուկ բյուլետեն Մամեդովայի փորձի մասին և ուղարկեց վար-
չության բոլոր տնտեսությունները։ Նույն ձևով պարտիական կոմիտեն ուսում-
նասիրել ու տարածում է Սարատովկայի կոլտնտեսության անվանի հորթա-
պահ, ՍՄԿՊ XXII համագումարի պատգամավոր Տատյանա Յակուշևայի և այլ
առաջավորների փորձը։ Առաջավորների փորձի պրոպագանդման համար հա-
ջողությամբ են օգտագործվում տեղական ռադիոհանգույցները։

Պարտիական կոմիտեն որոշեց անցկացնել կոլտնտեսությունների ու
սովխոզների ցածր ցուցանիշներ ունեցող կթվորուհիների խորհրդակցություն,

նրանց ծանոթացնել վարչության առջև ծառացած խնդիրներին, լսել նրանց, խորհուրդներ տալ: Պարզվեց, որ կթվորների հիսուն տոկոսից ավելին ամեն մի կովից 2000 կիլոգրամից պակաս կաթ է ստանում: Հաշվարկները ցույց տվին, որ եթե նրանք յուրաքանչյուր ֆուրաժային կովի կաթնատվությունը հասցնեն թեկուզ 2000 կիլոգրամի, ապա ամբողջ վարչությունում կաթի համախառն արտադրանքը կավելանա մոտ 25 տոկոսով:

Այդ հուզող հարցերի շուրջ արժեր զրուցել ետ մնացողների հետ: Խորհրդակցության ժամանակ անկաշկանդ զրույց ծավալվեց ետ մնալու պատճառները վերհանելու նպատակով, եղան խելացի առաջարկություններ:

Կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը բարձրացնող մի շարք միջոցառումների իրականացման հետ մեկտեղ կոմիտեն կիրառում է գյուղատնտեսական աշխատողներին բարոյապես խթանելու նոր ձևեր, որոնց նպատակն է բարոյապես խրախուսել առաջավորներին:

***

Ստեփանավանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի առջև կանգնած են լուրջ, լուծման կարոտ մի շարք խնդիրներ: Դեռևս դանդաղ է ընթանում անասնաբուծության աշխատատար պրոցեսների մեքենայացումը. օրինակ, ինչպե՞ս կարելի է հանդուրժել, որ 1962 թ. հունիսին ստացված էլեկտրակիթի տասն ագրեգատներից մինչև այժմ տեղադրվել են միայն վեցը, իսկ մյուսներն ընկած են գյուղտնտտեխնիկայի բաժանմունքում:

Պարտիական կոմիտեն դեռ շատ անելիքներ ունի կոլտնտեսությունների ու սովխոզների միջին ղեկավար կադրերի օղակն ամրապնդելու, հատկապես դաշտավարական բրիգադավարների կազմը բարելավելու ուղղությամբ: Վարչության կոլտնտեսություններում դեռևս բավականին բարձր է անասնաբուծական մթերքների ինքնարժեքը: Այսպես. 1962 թվականին մեկ ցենտներ կաթի ինքնարժեքը Ղարաքիլիսայի, Ագարակի, Պուշկինոյի, Գյառգյառի կոլտնտեսություններում կազմել է 14—17 ռուբլի և այդ այն դեպքում, երբ կաթի պետական վաճառքի գինը 11 ռուբլի է: Մեկ ցենտներ խոզի մսի ինքնարժեքը Միխայլովկայի, Նովոսելցովոյի, Ղարաքիլիսայի, Լոռի Բերդի և այլ կոլտնտեսություններում կազմել է 300—438 ռուբլի (պետական վաճառքի գինը 115 ռուբլի է): Այսպիսով վերոհիշյալ տնտեսություններից յուրաքանչյուրը մեկ ցենտներ խոզի մսի վաճառքից կրել է 185—323 ռուբլու վնաս: Բարձր է նաև տավարի ու ոչխարի մսի, ինչպես նաև բրդի ու ձվի ինքնարժեքը:

Պարտիական կոմիտեն, արտադրական վարչության հետ միասին, պետք է մշակի այնպիսի միջոցառումներ, որոնց կիրառմամբ բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզներն աշխատանքի ու միջոցների նվազագույն ծախսումով արտադրեն ավելի շատ և էժան գյուղատնտեսական մթերքներ:

ԱՆԴՐ. ՍԱՐԳՍՅԱՆ
Զ. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍՈՒՉ-ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉԸ

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումները տնտեսության պարտիական ղեկավարումը վերակառուցելու, նոր օրգաններ՝ արտադրական պարտիական կոմիտեներ ստեղծելու մասին, պահանջում են բարձրացնել տեղերում տարվող պարտիական աշխատանքի մակարդակը:

Պարտիական կոմիտեն իր առջև կանգնած խնդիրները կատարել կարող է միայն այն դեպքում, երբ սկզբնական պարտիական կազմակերպությունները գործեն ակտիվ, խորապես ազդեն արտադրության, կոլտնտեսությունների ու սովխոզների կյանքի ու գործունեության բոլոր կողմերի վրա: Եվ այդ օրինաչափ է, քանի որ նրանք պարտիական կոմիտեի հենարանն են, գործում են այնտեղ, ուր ստեղծվում է կոմունիզմի նյութատեխնիկական բազան, ձևավորվում են հասարակական նոր հարաբերությունները, դաստիարակվում է կոմունիստական ապագայի մարդը:

Այդ առումով խիստ մեծ է պարտիական կոմիտեի տեսուչ-կազմակերպչի դերը. նա կոչված է օգնելու սկզբնական կազմակերպություններին՝ ապահովելու պարտիական որոշումների կատարումը. կոմիտեի անմիջական ներկայացուցիչն է նա տեղերում՝ կոլտնտեսություններում ու սովխոզներում, սերտորեն կապված է կյանքի հետ, ունի քաղաքական հոտառություն, սուր աչք, կարողանում է համոզել մարդկանց, ընկալել նորն ու առաջավորը, տարածել գյուղատնտեսական արտադրության առաջավորների աշխատանքի փորձը:

Այժմ մեր ռեսպուբլիկայի քսան գյուղական արտադրական պարտիական կոմիտեներում կան 65 տեսուչ-պարտկազմակերպիչներ, որոնց ճնշող մեծամասնությունը բարձրագույն կրթություն և պարտիական աշխատանքի փորձ ունի, իսկ դրանց մի մասն էլ գյուղատնտեսության մասնագետներ են:

Արտադրական պարտիական կոմիտեներ ստեղծելուց և տեսուչ-պարտկազմակերպիչների ինստիտուտ հիմնելուց հետո անցել է ընդամենը հինգ ամիս, բայց շատ տեսուչ-պարտկազմակերպիչներ արդեն կարողացել են իրենց լավ դրսևորել աշխատանքում: Նրանք գործում են կոնկրետ ու օպերատիվ, սերտ կապ պահպանելով արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչների հետ:

Պարտիական կոմիտեի տեսուչ-կազմակերպիչների գործունեության հաջողությունն ամենից առաջ պայմանավորված է նրանց աշխատանքի կազմակերպմամբ: Առանձին պարտիական կոմիտեների փորձը ցույց է տալիս, որ տեսուչ-պարտկազմակերպիչների աշխատանքի կազմակերպման առավել ճիշտ ձևն այն է, երբ նրանց ամրացնում են կոլտնտեսությունների ու սովխոզների պարտիական կազմակերպությունների մի որոշակի խմբի: Այդ թույլ է տալիս ավելի խոր ու համակողմանի ներգործել յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի էկոնոմիկայի, ներպարտիական աշխատանքի վիճակի վրա, ապահովել արտադրության հրամանատարական և մասնագիտական կադրերի ճիշտ տեղաբաշխումը. միաժամանակ տեսուչ-պարտկազմակերպչի կենդանի կապը աշխատավորների հետ հնարավորություն է տալիս ավելի գործնական ձևով կազմակերպելու վերադաս պարտիական ու սովետական օրգանների դիրեկտիվների, ինչպես նաև սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշումների կատարումն ու վերահսկողությունը:

Անհրաժեշտ է ստեղծագործական աշխատանքի պայմաններ ստեղծել տեսուչ-պարտկազմակերպչի համար, նրան չդարձնել ամեն տեսակի թղթեր, բանաձևեր, տեղեկանքներ, զեկուցումներ կազմող մի մարդ, որը շարունակ հեռախոսի մոտ նստած զանգահարում է սկզբնական պարտիական կազմակերպություններին։ Գրել իմանալը, փաստաթղթեր լավ ձևակերպելը, ճիշտ է, կարևոր են, բայց ամենևին էլ այն գլխավոր հատկանիշը չէ, որով պետք է աչքի ընկնի պարտիական աշխատողը։

Աշտարակի, Հոկտեմբերյանի և Էջմիածնի գյուղական արտադրական պարտիական կոմիտեների գործունեությունը ցույց է տալիս, թե այժմ ինչպես է փոխվել պարտիական ապարատի աշխատանքի բնույթը, և ինչով պետք է զբաղվի տեսուչ-պարտկազմակերպիչը։

Վերոհիշյալ պարտիական կոմիտեներում տեսուչ-պարտկազմակերպիչների գործունեությանը սովորաբար ուղղություն են տալիս պարտկոմի քարտուղարը կամ քարտուղարի այն տեղակալը, որը վարում է կազմակերպական բաժինը։ Պարտկոմի տեսուչները մշտապես լինում են սկզբնական պարտիական կազմակերպություններում, ջանում ակտիվ ներազդել նրանց գործունեության վրա։ Վերոհիշյալ արտադրական վարչությունների բոլոր կոլտնտեսություններում ու սովխոզներում տեսուչ-պարտկազմակերպիչների և արտադրական վարչությունների տեսուչ-կազմակերպիչների ակտիվ մասնակցությամբ ու աջակցությամբ ուսումնասիրվել են արտադրության ներքին հնարավորությունները, ճշգրտվել են ռեզերվները, կազմվել սոցիալիստական պարտավորությունները, արտադրական պլաններն ու նորմաները։ Պարտիական կոմիտեների տեսուչները, լինելով տեղերում, ավելի են խորամուխ լինում յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի էկոնոմիկայի հարցերում, հանգամանորեն զբաղվում արտադրության ու աշխատանքի կազմակերպման խնդիրներով։

Էջմիածնի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի տեսուչ-պարտկազմակերպիչ Սերգեյ Գևորգյանը գյուղատնտեսության մասնագետ է, ունի պարտիական աշխատանքի հարուստ փորձ։ Օրվա մեծ մասը նա անց է կացնում իր սպասարկած հինգ կոլտնտեսությունների և երկու սովխոզների սկզբնական պարտիական կազմակերպություններում, կոլտնտեսականների ու բանվորների շրջանում, հաճախակի զրուցում աշխատավորների հետ օրվա իրադարձությունների, գյուղատնտեսության կարևոր հարցերի, արտադրության առաջավոր փորձի և այլնի մասին։ Մարդիկ լավ գիտեն և հավատում են նրան, բաժանում նրա հետ իրենց խոհերն ու մտորումները, ուրախությունն ու վիշտը։

Ընկ. Գևորգյանը կոլտնտեսություններում ու սովխոզներում հանգամանորեն հետաքրքրվում է արտադրության, աշխատավորների դաստիարակության, կոմունալ-կենցաղային հարցերով. եթե տնտեսությունների, պարտկազմակերպությունների աշխատանքում նկատում է թերություններ, ջանում է հենց տեղում միջոցներ ձեռնարկել դրանց անհապաղ վերացման համար և չի հեռանում գյուղից, քանի դեռ չի բարելավվել գործերի վիճակը։ Գարնանը, գյուղատնտեսական աշխատանքների եռուն օրերին, Մնձամորի կոլտնտեսության 150 աշխատունակներից գործի էին դուրս գալիս, միջին հաշվով, միայն 40—50 մարդ։ Այդ հանգամանքը լրջորեն անհանգստացրեց տեսուչ-պարտկազմակերպչին. հարկ եղավ մի ամբողջ շաբաթ նստել գյուղում, խոսել ու համոզել մարդկանց, կոմունիստներին, իրականացնել մի շարք միջոցառումներ և, առաջին հերթին, բացել մանկամսուր ու մանկապարտեզ։ Կարճ ժամանակ անց դրությունը հիմնովին փոխվեց։



Մի այլ օրինակ։ Վերին Խաթունարխի կոլտնտեսության հաշվետու- ընտրական ժողովում արտելականները քննադատեցին կոլտնտեսության վարչությանն այն բանի համար, որ վերջինս լուրջ քայլեր չի անում անարտադրողական ծախսերը կրճատելու, գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքն իջեցնելու ուղղությամբ։ Ս. Գևորգյանը, արտադրական վարչության տեսուչ-կազմակերպիչ Ռ. Գալստյանի հետ միասին, օգնեց կոլտնտեսության վարչությանը՝ վերանայելու արտադրական նորմաները, վարչա-կառավարչական ու սպասարկող անձնակազմի հաստիքները։ Վերոհիշյալ միջոցառումների իրականացմամբ տնտեսությունում խնայվեց ավելի քան 1500 աշխօր։ Մարդիկ գոհ մնացին իրենց արդարացի պահանջների բավարարման համար։

Տեսուչ-պարտկազմակերպիչը սոցիալիստական մրցության և առաջավոր փորձի տարածման ու արմատավորման ջավագույն կազմակերպիչն է. Նրա նախաձեռնությամբ, օրինակ, նույն այդ կոլտնտեսությունում արմատավորվել ու կիրառվում են աշխատավորներին նյութապես ու բարոյապես խրախուսելու նոր ձևեր, եղանակներ, որոնք բարերար ազդեցություն են ունենում արտադրության գործերի վրա։

Հոկտեմբերյանի պարտկոմի նախկին տեսուչ Ս. Մխիթարյանը Գետաշենի կոլտնտեսությունում եղած ժամանակ նկատել էր, որ խախտումներ են թույլ տրվել վարչա-կառավարչական անձնակազմի վարձատրության գործում։ Նրա նախաձեռնությամբ տեղում ժամանակին ստուգում կատարվեց և պարզվեց, որ 2400 աշխօր ավելի է գրանցված, որը կազմում է 8400 ռուբլի։ Այս փաստը քննարկվեց և ձեռք առնվեցին արդյունավետ միջոցառումներ հետագայում նման երևույթները կանխելու նպատակով։

Տեսուչ-պարտկազմակերպիչները հանդես են գալիս ոչ որպես դիտորդներ, որոնք սոսկ արձանագրում են, թե ինչն է լավ և ինչը վատ, այլ որպես կազմակերպիչներ։

Ներպարտիական աշխատանքի կենտրոնում պետք է լինի պարտիայի անդամը։ Անհրաժեշտ է, առաջին հերթին, ճանաչել յուրաքանչյուր կոմունիստի, իմանալ նրա պահանջներն ու հակումները, նրա ուժեղ ու թույլ կողմերը, հետաքրքրվել ո՛չ միայն նրանով, թե կոմունիստն ինչպես է աշխատում արտադրության մեջ, այլև՝ ինչպես է դրսևորում իրեն հասարակական կյանքում։ Տեսուչ-պարտկազմակերպիչների գործունեության հիմքն է կազմում աշխատանքը մարդկանց, յուրաքանչյուր կոմունիստի հետ, հրամանատարական կադրերի և, առաջին հերթին՝ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների հետ։

Հոկտեմբերյանի պարտկոմի տեսուչներ Ս. Անտոնյանը, Ու. Օզմանովը, Էջմիածնի պարտկոմի տեսուչներ Ս. Գևորգյանն ու Վ. Պողոսյանը, Աշտարակի պարտկոմից Լ. Հարությունյանն ու Վ. Հակոբյանը և ուրիշներ ակտիվ մասնակցել են կոլտնտեսությունների հաշվետու և հաշվետու-ընտրական ժողովների նախապատրաստմանն ու անցկացմանը, մանրակրկիտ զբաղվել իրենց սպասարկած կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավար կադրերի ընտրությամբ ու տեղաբաշխմամբ։

Կյանքի հետ կենդանի կապը պարտկոմի տեսչին հնարավորություն է տալիս կատարելու իր ամենակարևոր պարտականություններից մեկը՝ ընդհանրացնել ու տարածել գյուղատնտեսական արտադրության առաջավորների դրական

*աշխատանքի փորձը: Պարտկոմի այն տեսուչը, որը մտահոգված է միայն բացասական փաստեր հայտաբերելով ու արձանագրելով և ոչ թե դրանց վերացմամբ, չի կարող բավարարել այսօրվա պահանջները:*

*Թերությունների, իհարկե, պետք է ժամանակին ու վճռականորեն երևան հանել, բայց տեսուչը պարտավոր է աջակցել նորին, դրականին և եռանդուն նպաստել դրանց տարածմանը, մարդկանց դաստիարակել դրական աշխատանքի օրինակներով: Այլ խոսքով՝ պարտկոմի տեսուչը պետք է լինի դրական փորձի կուտակողը:*

*Այսպես: Հոկտեմբերյանի գյուղական արտադրական պարտկոմի տեսուչ Ս. Անտոնյանը պաշտպանեց և մինչև վերջ հասցրեց Այգեշատ գյուղի կոլտնտեսության ղեկավարության լավագույն նախաձեռնությունը՝ կոլտնտեսությունում խառը տնտհաշվարկային արտադրական բրիգադների կազմակերպումը: Անցյալում եղած բոլոր անասնապահական ֆերմաների ու դաշտավարական բրիգադների փոխարեն ներկայումս ստեղծված են խառը տնտհաշվարկային արտադրական երեք բրիգադ: Այստեղ տնտեսության բոլոր ուժերն ու միջոցները՝ աշխատունակ կոլտնտեսականները, մեքենաները, քարշող ուժը, գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները, բոլոր տեսակի անասունները, ինչպես նաև բոլոր պետական ու արտադրական պլանները հավասարաչափ տեղաբաշխված են երեք բրիգադների միջև: Այժմ իսկ ակնհայտ են աշխատանքի կազմակերպման նոր եղանակի առավելությունները:*

*Հոկտեմբերյանի արտադրական վարչությունը փորձնականորեն կիրառում է կոլտնտեսային արտադրության կազմակերպման այս ձևը. դրա նպատակն է՝ կրճատել վարչական ու անարտադրողական ծախսերը, բարձրացնել կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը, վերացնել նրանց հոսունությունը մի բրիգադայից մյուսը, բարձրացնելով բոլոր կոլտնտեսականների պատասխանատվությունը կերի կայուն բազայի ստեղծման ու հանրային անասնաբուծության հարաճուն զարգացման, գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության ավելացման գործում:*

*ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց.* «Վարից վեր պարտիական օրգանների կառուցման արտադրական սկզբունքը բնավ չի նշանակի, թե պարտիական կազմակերպությունները կդադարեն կենցաղի, կրթության, կուլտուրայի հարցերով զբաղվելուց: Ընդհակառակը, ուշադրությունը կենտրոնացնելով գլխավորի՝ արտադրության հարցերի վրա, պարտիական կազմակերպությունները կկարողանան ավելի կոնկրետ զբաղվել թե՛ կազմակերպական, թե՛ գաղափարական-դաստիարակչական աշխատանքով, որն անխզելիորեն կապված է ինչպես արդյունաբերական, այնպես էլ գյուղատնտեսական արտադրության հետ»:

*Այս նշանակում է, որ պարտկոմի ամեն մի աշխատող, այդ թվում և տեսուչ-կազմակերպիչն իր պրակտիկ գործունեությամբ պետք է լուրջ ուշադրություն հատկացնի գյուղի աշխատավորների շրջանում քաղաքական-մասսայական աշխատանքի կազմակերպման և նրանց կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցերին: Տեսուչները տեղերում զբաղվում են մարդկանց դաստիարակությամբ, նրանց կոմունալ-կենցաղային պայմանների բարելավմամբ, կուլտուր-լուսավորական աշխատանքներով:*

*Լավ անցավ, օրինակ, Ջահմաթ գյուղում կազմակերպված երեկոն՝ «Հայ և ադրբեջանցի ժողովուրդների եղբայրական բարեկամությունը» թեմայով, որին ներկա էին նաև Արբաթ, Արևաշատ, Ղարաղշլաղ և Դեմուրչի գյուղերի աշխատավորները: Երեկոյի վերջում Էջմիածնի կուլտուրայի տան էստրադային նվագախումբը և ժողովրդական գործիքների անսամբլը համերգ տվին: Այդ երեկոյի նախապատրաստմանն ու անցկացմանն ակտիվ մասնակցել էր Էջմիածնի պարտկոմի տեսուչ-պարտկազմակերպիչ Պ. Կարապետյանը:*

*Տեսուչ-պարտկազմակերպչի գործունեության հաջողությունը պայմանավորված է նրա անձնական հատկություններով: Նա պարտավոր է կատարելապես տիրապետել ներպարտիական աշխատանքի արվեստին, լավ իմանալ արտադրության էկոնոմիկան, պարտիայի ու կառավարության որոշումները, լինել կարգապահ: Համեստությունը, պարզությունը, մատչելիությունը, անհանդուրժողականությունը մեծամտության, ինքնահիացման նկատմամբ բնորոշ են լենինյան տիպի աշխատողին:*

*Տեսուչ-պարտկազմակերպիչը գործում է կոլտնտեսականների, սովխոզների բանվորների շրջանում, մշտապես շփվում է գյուղական ինտելիգենցիայի համակողմանի զարգացած ներկայացուցիչների հետ: Նրանց կազմակերպելու և ուղղություն տալու համար պետք է ունենալ անհրաժեշտ փորձ և գիտելիքներ, մարդկանց հետ ճիշտ փոխհարաբերություններ հաստատելու կարողություն, ամեն մի մարդու հետ տակտով վարվելու հմտություն:*

*Տակտով լինել՝ նշանակում է բոլոր պարագաներում այնպես պահել իրեն, որ մարդիկ հավատան իրենց ուժերին, մշտապես նրանց մեջ հարուցվեն ազնիվ ձգտումներ ավելի լավ աշխատելու համար: Իսկական տակտը հիմնված է մարդկանց նկատմամբ խոր հարգանքի վրա: Մեծ հումանիստ Ա. Մ. Գորկին, խոսելով մարդու արժանապատվության մասին՝ գրել է. «Ես ցանկացել եմ՝ և ցանկանում եմ— բոլոր մարդկանց տեսնել աշխատանքի ու ստեղծագործության հերոս, կյանքի նոր, ազատ ձևերի կառուցողներ: Մենք պետք է այնպես ապրենք, որ մեզնից ամեն մեկը, չնայած անհատականությունների տարբերությանը, իրեն մարդ զգա՝ հավասար մյուս բոլորին և ամեն մեկին»:*

*Տեսուչ-պարտկազմակերպիչների որակավորման ու մտահորիզոնի ընդլայնման հարցն այժմ մեծ նշանակություն է ստանում: Այդ նպատակով հարկավոր է ավելի շատ օգնել նրանց, պարտկոմի քարտուղարները սիստեմատիկաբար պետք է հետևեն, կազմակերպեն և ուղղություն տան տեսուչների գործունեությանը:*

*ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումը պարտիական կազմակերպություններից պահանջեց անշեղորեն կենսագործել ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացման, կազմակերպական աշխատանքի բարելավման, տնտեսական շինարարության ղեկավարման, աշխատանքի մեթոդների կատարելագործման բնագավառներում: Այդ տեսուչ-պարտկազմակերպիչներին պարտավորեցնում է բարելավել իրենց գործունեության մեթոդներն ու եղանակները, հմտորեն կազմակերպել մարդկանց, ավելի մեծ նախաձեռնություն երևան բերել:*

*Ջ. ՍՈՒԼԹԱՆՈՎ*



# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



Գ. ԹԱԴԵՎՈՍՅԱՆ

## ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ՏԵԽՆԻԿԱՆ ԵՎ ՍԱՐՔԱՎՈՐՈՒՄՆԵՐԸ

*Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում օգտագործվում են հազարավոր հաստոցներ, մեքենաներ, սարքավորումներ, մեխանիզմներ, որոնք անընդհատ կատարելագործվում են գիտության նորամուծությունների և արտադրության նորարարների ռացիոնալիզատորական առաջարկությունների շնորհիվ։*

*Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագրում նշված է. «Տեխնիկական առաջադիմությունը և արտադրության լավագույն կազմակերպումը պետք է յուրաքանչյուր ձեռնարկությունում լիովին օգտագործվեն աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքն իջեցնելու համար»։*

*ՍՄԿՊ ծրագրի այս պահանջը կատարելու, առաջիկա քսան տարում կոմունիզմի նյութատեխնիկական* բազա ստեղծելու գործում վճռական նշանակություն ունի տեխնիկայի և սարքավորումների ճիշտ օգտագործումը։*

*Տեխնիկական առաջադիմությունն այն հանգուցային դիրքն է, նշեց Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում տված զեկուցման մեջ, որի օգնությամբ մենք կկարողանանք հաջողությամբ լուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրը և հասնել աշխատանքի բարձրագույն արտադրողականության։*

*Կենսագործելով պարտիայի և կառավարության դիրեկտիվները՝ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի արդյունաբերության աշխատողները, մեր երկրի բազմամիլիոն աշխատավորության հետ միասին, զգալի գործ են կատարել արտադրության հետագա տեխնիկական վերազինման, ժամանակակից տեխնիկայի մակարդակին համապատասխանող մետաղահատ հաստոցների, էլեկտրական մեքենաների ու ապարատների, սարքերի ու սարքավորումների արտադրությունը յուրացնելու, կապիտալ ներդրումներն արդյունավետ օգտագործելու ուղղությամբ։ Բավական է նշել, որ 1962 թվականին ժողտնտխորհի սիստեմում նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման ուղղությամբ կապիտալ ներդրումները կազմեցին մոտ 5 միլիոն ռուբլի, իսկ նոր տեխնիկայի արմատավորումից ստացված տարեկան պայմանական տնտեսական օգուտը կազմեց 7,5 մլն. ռուբլի։*

*Միայն 1962 թ. ընթացքում ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություններում մեքենայացված ու ավտոմատացված են 83 արտադրական պրոցեսներ, արմատավորված են 45 նոր պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսներ, ստեղծված են 112 նոր տիպի մեքենաներ, սարքեր ու սարքավորումներ, լրացուցիչ հիմնվել են 32 կոմպլեքս մեքենայացված ու ավտոմատացված արտադրական տեղամասեր և այլն։ Այս բոլորը հնարավորություն տվին ստեղծելու լրացուցիչ արտադրական հզորություններ, բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու թողարկվող արտադրանքի ինքնարժեքը։ Ժողտնտխորհը 10 օր շուտ կատարեց 1962 թ. համախառն արտադրանքի պլանը՝ տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով։ Պլանից դուրս ժողովրդական տնտեսությունն ստացավ էլեկտրաշարժիչներ ու գեներատորներ, ուժային տրանսֆորմատորներ, մետաղահատ հաստոցներ, լայն սպառման և այլ արդյունաբերական արտադրանքներ՝ ավելի քան երկու տասնյակ միլիոն ռուբլու ընդհանուր արժողությամբ։ 1962 թվականին շարք մտան մեծ քիմիայի այնպիսի գիգանտներ, ինչպիսիք են՝ Կիրովականի արհեստական մետաքսաթելի գործարանը, Երևանի պոլիվինիլացետատ գործարանի ացետատցելյուլոզի ցեխը, որոնք ռեսպուբլիկայի թեթև արդյունաբերության համար կարևոր նյութական բազա են։*

*Սովետական Միության կոմունիստական պարտիայի ծրագիրը նախատեսում է մոտակա քսանամյակում կենսագործել արտադրության կոմպլեքսային ավտոմատացումը մասսայական մասշտաբով։ Այդ տեսակետից մեծ աշխատանք է տարվում քիմիական, էլեկտրատեխնիկական, սննդի և մյուս ճյուղերի արդյունաբերական ձեռնարկություններում, ուր լայնորեն կիրառվում է կոմպլեքսային ավտոմատացումը՝ ապահովելով սարքավորումների բազմակողմանի օգտագործումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը։*

*Երևանի ռետինատեխնիկական իրերի և Էջմիածնի պլաստմասսաների գործարաններում արտադրության հիմնական սարքավորումներն են հիդրավլիկ մամլիչները։ Այդ մամլիչներն առավել արտադրողականությամբ օգտագործելու և բարձրորակ արտադրանք ստանալու համար անհրաժեշտ է մամլաձևերում պահպանել համապատասխան ջերմային ռեժիմ։ Մինչև վերջերս այդ ռեժիմը կարգավորում էր բանվորը՝ լարվածության պայմաններում։*

*Այժմ այդ գործարաններում տեխնոլոգիական ռեժիմների վերահսկումը և կարգավորումը կատարում են «ՄԱՐՍ—200» տիպի էլեկտրոնային-կարգավորիչ մեքենաները։ Այդ կոմպլեքս-ավտոմատացված արտադրության սկիզբն է։ Էլեկտրոնային մեքենաներ օգտագործելու, մամլիչների պարապուրդները կրճատելու և մամլաձևերի աշխատանքային ժամկետը երկարացնելու շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 20 տոկոսով, իսկ արտադրանքի ինքնարժեքն իջեցվեց 12 տոկոսով։ Ամեն մի գործարանում ստացված տարեկան տնտեսական օգուտն անցավ 30 հազար ռուբլուց։*

*Երևանի ավտոպահեստամասերի գործարանի դարբնոցային ցեխը ամենահզորն է մեր ռեսպուբլիկայում, որը մի շարք մեքենաշինական գործարաններ ապահովում է պատրաստուկներով։ Անցյալում մետաղը դրոշմելու համար այն տաքացվում էր մազութի վառարաններում, որի կարողությունը ցածր լինելու պատճառով ցեխի ունիկալ սարքավորումները մեծ պարապուրդ էին տալիս, բարձրորակ պողպատների շատ գերածախս էր լինում՝ մեծ քանակությամբ կիզաթեփուկ առաջանալու հետևանքով։ Այժմ այդ դարբնոցային ցեխում մետաղը տաքացվում է բարձր հաճախականության սարքավորումներում, որի շնորհիվ գործնականորեն վերացել են մամլիչների ու օդա-գոլորշային մուրճերի պարապուրդները, իջել է*

մետաղի տեսակարար ծախսը. դրա հետ մեկտեղ բարձրացել է արտադրության կուլտուրան։

Բարձր հաճախականության էլեկտրական հոսանքով աշխատող սարքավորումները լայնորեն կիրառվում են Երևանի Լենինի անվան Հայէլեկտրամեքենաշինական, Ջերժինսկու անվան հաստոցաշինական, կոմպրեսորների գործարաններում և այլ մեքենաշինական ձեռնարկություններում, հատկապես պողպատյա դետալների ջերմային մշակման համար, որի շնորհիվ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, թողարկվող արտադրանքի որակը, իջել նրա ինքնարժեքը։

Տեխնիկայի և սարքավորումների արդյունավետ օգտագործման տեսակետից կարևոր նշանակություն ունի պրոգրեսիվ տեխնոլոգիական պրոցեսների արմատավորումը, որը լայն հնարավորություն է ստեղծում բարձրացնելու այդ տեխնիկայի և սարքավորումների արտադրողականությունը. Քանաքեռի ալյումինի գործարանի փորձը դրա ցայտուն օրինակն է։ Գործարանի կոլեկտիվը վերջին երկու տարում մեծ գործ կատարեց էլեկտրալիզային վաննաները մոտ 20 հազար ամպեր էլեկտրական հոսանքով աշխատեցնելու ուղղությամբ։ Տեխնոլոգիայի այդպիսի կատարելագործման շնորհիվ վաննաների արտադրողականությունը բարձրացավ ավելի քան 40 տոկոսով։

Լենինի անվան Հայէլեկտրագործարանի ձուլվածքի ցեխը ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկությունների մեջ խոշորագույններից մեկն է, որը ձուլվածքներով ապահովում է թե այդ գործարանի ներքին և թե ռեսպուբլիկայի էլեկտրատեխնիկական արդյունաբերության մի շարք այլ գործարանների պահանջները։ Սակայն վերջին տարիներս բուռն աճող էլեկտրատեխնիկական արդյունաբերությունն սկսեց ավելի մեծ քանակությամբ ձուլվածք սպառել և արդեն այդ ցեխը չէր կարող բավարարել աճող պահանջները։ Գործարանի ստեղծագործ կոլեկտիվն իրագործեց տեխնիկական կարևոր միջոցառումներ. այդ հնարավորություն տվեց ձուլման ցեխի տարեկան հզորությունը 14 հազարից հասցնելու 23 հազար տոննա պիտանի ձուլվածքի. տեղադրվեց ձուլման երկրորդ կոնվեյերը, մեքենայացվեցին ձուլվածքների մաքրման պրոցեսները, ձուլահողային խառնուրդների պատրաստման արտադրական տեղամասը հասցվեց մեքենայացման ավելի բարձր աստիճանի, ավելացավ մեքենայացված ձևավորման աշխատանքների ծավալը։ Նույնանման տեխնիկական միջոցառումների շնորհիվ Երևանի արմատուրային գործարանի ձուլման ցեխի արտադրողականությունը բարձրացավ մոտ երկու անգամ։

## ՓԱՅԼՈՒՆ հաղթանակ

Գործարկվեց Սովետական Հայաստանի ջերմաէլեկտրակայանների առաջնեկի՝ Երևանի ջերմաէլեկտրակայանի առաջին ագրեգատը։ Նրա կարողությունը 50 հազար կիլովատ է։

Երևանի ջերմաէլեկտրակայանի երկրորդ ագրեգատը կգործարկվի այս տարվա օգոստոսին, իսկ երրորդը՝ այս տարվա վերջին։

Երևանի ջերմաէլեկտրակայանի միայն մեկ ագրեգատը մեկ տարում կարտադրի այնքան էլեկտրաէներգիա, որքան Սևանի ու Երևանի հիդրոէլեկտրակայանները միասին վերցրած։

Ռեսպուբլիկայում կառուցվող ջերմաէլեկտրակայաններից ամենահզորը Երևանինն է, որը լրիվ ավարտվելուց հետո տարեկան կարտադրի 550 հազար կիլովատ էներգիա։

Երևանի ջերմաէլեկտրակայանն աշխատելու է «Բարեկամության գազամուղով»՝ եղբայրական Ադրբեջանից ստացվող գազով։

Ամբողջ կարողությամբ շահագործվելուց հետո, 1966 թվականին, Երևանի ջերմաէլեկտրակայանը կարտադրի 3 միլիարդ 500 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, մինչդեռ 1962 թվականին ռեսպուբլիկայի բոլոր էլեկտրակայանները միասին արտադրել են 2 միլիարդ 650 միլիոն կիլովատ-ժամ։



Երևանի հիդրոպոմպերի գործարանում լրիվ վերակառուցվեց ձուլման ցեխը, որտեղ առաջին անգամ ռեսպուբլիկայում տեղադրվեց ձուլման կախանովոր կոնվեյերը, իրագործվեցին մի շարք կարևոր տեխնիկական միջոցառումներ, որոնց շնորհիվ ցեխի արտադրողականությունը բարձրացավ 1,5 անգամ, տարեկան տնտեսելով 30 հազար ռուբլի։

Արտադրության մեջ նոր տեխնիկայի ու տեխնոլոգիայի արմատավորման գործում մեծ հաջողությունների են հասել նաև թեթև, սննդի և կահույքաշինության արդյունաբերական ձեռնարկությունները։ Լենինի անվան մետաքսի կոմբինատում մետաքսի դաջման խիստ աշխատատար պրոցեսը տարիներ ի վեր կատարվում էր ձեռքով, դրանով զբաղվում էին մեծ քանակությամբ բարձր որակավորում ունեցող բանվորներ։ Բացի այդ, դաջման աշխատատեղը մեծ արտադրական տարածություն էր զբաղեցնում։ 1962 թ. կոմբինատում հատուկ բարձրորակ սարքավորման միջոցով յուրացվեց անընդհատ դաջման պրոցեսը, որն իր արտադրողականությամբ ապահովում է ամբողջ կոմբինատի պլանների կատարումը, տալով բարձրորակ արտադրանք։ Այդ միջոցառման շնորհիվ կոմբինատը տարեկան ստանում է 36 հազար ռուբլու տնտեսական օգուտ։

Այսպիսի օրինակներ կարելի է շատ բերել։

Սակայն պետք է նշել, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները դեռ շատ թաքնված ռեզերվներ ունեն, լրիվ չեն օգտագործում սարքավորումներն ու տեխնիկան, մեծ չափով նյութական ու ֆինանսական միջոցներ չեն ներգրավվում արտադրության սֆերայում։ Բավական է նշել, որ Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի սիստեմի ձեռնարկություններում ստացվել ու չեն օգտագործվում մոտ 18 մլն. ռուբլու արժողությամբ սարքավորումներ, իսկ մի շարք արտադրական ձեռնարկություններում որոշ սարքավորումների մի մասը ամբողջ կարողությամբ չի օգտագործվում։

ՍՍՌՄ համամիութենական մետալուրգիական մեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտն առաջինը




Հայկական ՍՍՌ ժողտնտխորհի արդյունաբերության աշխատողները 1963 թվականի առաջին եռամսյակի արտադրանքի թողարկման պլանը կատարել են 103,4 տոկոսով, որն 1962 թ. նույն ժամանակաշրջանի համեմատությամբ 9,5 տոկոսով ավելի է։

1962 թ. առաջին եռամսյակում արտադրվել է. հանքային պարարտանյութ՝ 53,9 հազար, կաուստիկ սոդա՝ 8,5 հազար տոննա, ավտոդողեր՝ 289 հազար հատ, մետաղահատ հաստոցներ՝ 2031 հատ, դարբնոցա-մամլակային մեքենաներ՝ 250 հատ, մերկ պղնձալար՝ 1841 տոննա, կենտրոնախույս պոմպեր՝ 12215 հատ, ցեմենտ՝ 154,1 հազար տոննա, երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիաներ և դետալներ՝ 100 հազար խոր. մետր. բամբակյա գործվածքներ՝ 14366 հազար քառ. մետր, բրդյա գործվածքներ՝ 1548 հազար քառ. մետր, մետաքսյա գործվածքներ՝ 1736 հազար քառ. մետր, կաշվե կոշիկ՝ 1544 հազար զույգ, հեծանիվներ՝ 37 հազար հատ, յուղ (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության)՝ 449 տոննա, պանիր (առանց կոլտնտեսությունների արտադրության և բնակչության տնային արտադրության)՝ 1728 տոննա, օճառ՝ 4926 տոննա. գլանակներ և սիգարեթներ՝ 1712 միլիոն հատ։

մշակեց և պատրաստեց պողպատից աստիճանավոր լիսեռները պարբերական պրոֆիլների քարշման եղանակով արտադրելու ավտոմատացված հաստոցը, որը 1960 թ. տրվեց Հայէլեկտրագործարանին։ Այդ հաստոցի կիրառումը միայն Հայէլեկտրագործարանի պայմաններում կարող է տալ տարեկան 800 տոննա բարձրորակ պողպատի և 150 հազար ռուբլու տնտեսում։ Իսկ եթե նկատի ունենանք, որ այդ հաստոցն իր արտադրողականությամբ կարող է լիսեռների պատրաստուկներով ապահովել նաև մի շարք հաստոցաշինական գործարաններ, ապա ըստացված տնտեսումը շատ ավելի մեծ կլինի։ Սակայն այդ հաստոցը համարյա բոլոր կոմպլեկտավորող սարքավորումներով, երրորդ տարին է, ինչ գտնըվում է Հայէլեկտրագործարանում և չի տեղակայվում, չի օգտագործվում։

Նույնպիսի օրինակ կարելի է բերել Երևանի ավտոպահեստամասերի գործարանից, որտեղ արդեն երրորդ տարին է՝ շահագործման չի հանձնվում 2,5 հազար տոննանոց դրոշմող ունիկալ մամլիչը, որի օգտագործումը հնարավորություն կտար բարձր ճշտության պատրաստուկներ արտադրելու և դըրոշմվածքներով ապահովելու մեքենաշինական շատ գործարաններ։

Երևանի էլեկտրատեխնիկական գործարանում ևս երկար ժամանակ չեն օգտագործվում ունիկալ ավտոմատ մամլիչները, որոնք նախատեսված են էլեկտրաշարժիչների մագնիտալարերը դրոշմելու համար։ Այդ մամլիչներն իրենց արտադրողականությամբ առաջինն են Սովետական Միությունում։ Սակայն երեք մամլիչներն էլ անգործության են մատնված, որովհետև գործարանի ինժեներա-տեխնիկական աշխատողները հարկ եղած ջանքերը չեն թափում դրանք գործի դնելու համար, մոռանալով, որ մամլիչները էլեկտրաշարժիչների թողարկումն ավելացնելու մեծ ռեզերվ են։

Սոցիալիստական տնտեսվարության հետ անհամատեղելի է, երբ նոր տեխնիկայի արմատավորման վրա մեծ կապիտալ ներդրումներ են կատարվում, բայց այդ տեխնիկան օգտագործվում է ոչ լրիվ, կամ բոլորովին չի օգտագործվում։

Այսպես՝ Լենինի անվան մետաքսի կոմբինատը հնացած կոնստրուկցիայի գործող հաստոցները փոխարինում է ավտոմատացված հաստոցներով։ 1960 թ. կոմբինատը շահագործման էր հանձնել AT—100—511 տիպի 18, 1961 թ.՝ 38, 1962 թ.՝ 50 ավտոմատ հաստոց։ Հաշվումները ցույց են տալիս, որ այդ հաստոցների արմատավորման շնորհիվ գործվածքների արտադրությունը պետք է ավելանար 1962 թ. 600 հազար մետրով, սակայն, ինչպես 1961, այնպես էլ 1962 թ. մետաքսի կոմբինատի պլանը 7,5 տոկոսով ցածր էր նրա կարողությունից, իսկ մեկ բանվորի արտադրողականությունը գործվածքային ցեխում 1962 թ., 1961 թ. համեմատությամբ, իջավ։

Սարքավորումների ու նոր տեխնիկայի անարդյունավետ օգտագործման գլխավոր պատճառներից մեկը գործարանների ու ֆաբրիկաների կառուցման և վերակառուցման նախագծերում տեղ գտած ու չհիմնավորված տեխնիկական միջոցառումներն են, որոնք հաշվի չեն առնում արտադրության բնույթը, տընտեսական ցուցանիշները և այլն։ Այսպես, օրինակ, համամիութենական «Օրգըստանկինպրոմ» նախագծային ինստիտուտը նախատեսել է Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի և ֆրեզերային հաստոցների գործարանի հաստոցների հավաքման տեղամասերում ստեղծել քայլող կոնվեյերներ, այն ժամանակ, երբ ֆրեզերային հաստոցների գործարանում արտադրական պլանի համաձայն օրական հավաքվում է 3, իսկ Ձերժինսկու անվան գործարանում՝ 10 հաստոց. մոտակա 5 տարվա ընթացքում այդ թվերը կարող են կրկնապատկվել։ Այդպիսի ծավալի արտադրության համար կոնվեյերային գիծը դժվար թե տնտեսապես նպատակահարմար լինի։ Այդ նույն նախագծային ինստիտուտը նախատեսել է ֆրեզերային հաստոցների գործարանում պողպատի տաշեղի հավաքման կոնվեյեր տեղադրել, որի արժեքը մոտ 60 հազար ռուբլի է։ Մինչդեռ այդ գործարանում հաստոցի մըշակվող դետալների 30 տոկոսն է միայն պողպատից պատրաստվում, իսկ մնացածը՝ չուգունից։ Այնպես, որ այս տեխնիկական լուծումը նույնպես սխալ է։ Տաշեղի հավաքման այդ կոնվեյերը գործարանն արդեն ստացել է, և աշխատողները չգիտեն՝ ինչպես վարվել դրա հետ։ Նոր տեխնիկան ու սարքավորումները ցածր արդյունավետությամբ օգտագործելու շատ օրինակներ կան նաև սննդի, փայտամշակման արդյունաբերության և մի շարք այլ ձեռնարկություններում։

Արտադրության մեջ եղած տեխնիկան և սարքավորումներն արդյունավետ օգտագործելու համար կարևոր են մեքենաների և հաստոցների խնամքի բարելավումը, հատկապես դրանց ժամանակին վերանորոգումը։ Այդ մասին նշվեց նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում։

Հայտնի է, որ այժմ ժողովրդական տնտեսության մեջ ներդրվող մեքենաները, հաստոցները, մեխանիզմներն ավելի բարդ են, քան չորս-հինգ տարի առաջվանները։ Որպեսզի այդ սարքավորումներն անխափան գործեն, անհրաժեշտ է մշտական խնամք, ժամանակին վերանորոգում։ Մինչդեռ մեր ռեսպուբլիկայի շատ արդյունաբերական ձեռնարկություններում անուշադրության է մատնված այս կարևոր գործը։ Հաճախ աննշան թերության պատճառով մեքենան անկանոն է աշխատում։ Այդ թերությունը վերացնելու համար քիչ ժամանակ և նյութական ծախսեր են պահանջվում։ Բայց մարդկանց անհոգության պատճառով մեքենան շարունակում է գործել, թերություններն ավելանում են, խափանումները հաճախակի դառնում. ոմանք էլ մեքենան առանց համապատասխան նորոգման այնքան են աշխատեցնում, որ նրա մի մասը կոտրըվում է, և այն բոլորովին շարքից դուրս է գալիս։

Մեր կարծիքով, ժամանակն է, որ ձեռնարկությունների ղեկավարները, պարտիական ու արհեստակցական միությունները գործն այնպես կազմակերպեն, որ ամենաաննշան խախտումների դեպքում որակյալ բանվորների միջոցով ժամանակին վերանորոգվեն մեքենաները. այդ հնարավորություն կտա լրիվ կարողությամբ օգտագործելու, ավելի երկարակյաց դարձնելու դրանք։

Մեր արդյունաբերությունը բավականին մեծ ռեզերվներ ունի արտադրանքի ծավալն ավելացնելու, թողարկվող իրերի ինքնարժեքն իջեցնելու համար։ Այդ ռեզերվներից ամենագլխավորը նոր տեխնիկայի ու սարքավորումների արդյունավետ օգտագործումն է։ Այդ կարևոր խնդրի լուծման հիմնական ուղիներից մեկը սարքավորումների մոդեռնացումն է, որը հնարավորություն կըտա անհամեմատ ցածր կապիտալ ներդրումների միջոցով զգալիորեն բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը։

Հաշվումները ցույց են տալիս, որ եթե մեր երկրի ձեռնարկություններում սարքավորումների մոդեռնացման շընորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացվեր միայն 8 տոկոսով, ապա երկրում գործող ունիվերսալ մետաղահատ հաստոցների հզո-

րություն կբարձրանար 200 հազար հաստոցով, այսինքն՝ ավելի շատ, քան մեր երկրում տարեկան արտադրվող մետաղահատ հաստոցների թիվն է։

Մեր ռեսպուբլիկայում անհրաժեշտ ուշադրություն չի հատկացվում սարքավորումների մոդեռնացմանը։ Ռեսպուբլիկայի գիտահետազոտական և կոնստրուկտորական կազմակերպությունների թեմատիկ պլաններում այդ հարցերը համարյա չեն արտացոլվում, իսկ ժողտնտխորհի սիստեմում այդպես էլ չկազմակերպվեց մասնագիտացված ձեռնարկություն սարքավորումների մոդեռնացման համար։ Անհրաժեշտ է ամեն տարի կազմակերպել սարքավորումների մոդեռնացման պլան, այն մտցնել նոր տեխնիկայի պլանի մեջ և հետևել դրա կատարմանը։

Բացի դրանից սարքավորումների հայտերը և նոր տեխնիկայի պլանները կազմելիս պետք է տեխնիկա-տնտեսական բազմակողմանի հաշվարկների հիման վրա որոշել այս կամ այն միջոցառման պլանավորման անհրաժեշտությունը, կապելով այդ միջոցառումները կապիտալ շինարարության պլանների հետ։

Նոր տեխնիկայի արմատավորման պլանով նախատեսվում է 1963 թ. կենսագործել մի շարք կարևոր միջոցառումներ, և, մասնավորապես, մեքենայացնել ու ավտոմատացնել 100-ից ավելի արտադրական տեղամասեր, արմատավորել մոտ 70 նոր տեխնոլոգիական պրոցեսներ, ներդնել ավելի քան 500 նոր, բարձր արտադրողականությամբ, մասնագիտացված ու ագրեգատային սարքավորումներ և այլն։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները տեխնիկան ամբողջովին ի սպաս դնելով մեր արտադրության հետագա զարգացմանը և նրա տեխնիկական վերազինմանը, նոր, լուրջ հաջողությունների կհասնեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում։



Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

## ԲԱՐՁՐ ՊԱՀԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

Աշխատանքային կարգապահությունը հասարակական աշխատանքի կազմակերպման հիմքն է, ամեն մի համատեղ աշխատանքի անհրաժեշտ պայմանը։ «Ընդհանուր աշխատանք,— գրում է Վ. Ի. Լենինը,— չի կարելի կատարել առանց կարգի, առանց այն բանի, որ բոլորը ենթարկվեն այդ կարգին» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 2, էջ 25)։

Ամեն մի կոլեկտիվի համատեղ աշխատանքի պայմաններում անհրաժեշտ են կարգ ու կարգապահություն, ասել են մարքսիզմ-լենինիզմի կլասիկները, նշելով, որ յուրաքանչյուր հասարակարգի հատուկ են աշխատանքային կարգապահության կազմակերպման առանձնահատուկ ձևեր ու մեթոդներ։ Աշխատանքային կարգապահության էությունը, բնույթն ու նպատակը պայմանավորված են տիրապետող արտադրա հարաբերությունների բնույթով, որոնց հիմքում ընկած է արտադրության միջոցների սեփականության այս կամ այն ձևը։

Շահագործողական հարաբերություններ ունեցող բոլոր հասարակարգերում աշխատանքային կարգապահության կազմակերպումն ունեցել է հարկադրական, ստիպողական բնույթ, նրա նպատակն է եղել ուժեղացնել աշխատավոր մասսաների շահագործումն ու հարըստացնել արտադրության միջոցների սեփականատերերին։

Սոցիալիստական աշխատանքային կարգապահության կազմակերպումն աշխատանքային կարգապահության կազմակերպման բարձրագույն ու պրոգրեսիվ ձևն է և արմատապես տարբերվում է նախորդներից։ Այն հենվում է շահագործումից ազատ սոցիալիստական արտադրահարաբերությունների վրա և նպատակ ունի ապահովել սոցիալիստական արտադրության անընդհատ աճը, սիստեմատիկաբար բարձրացնել աշխատավոր մասսաների բարեկեցությունը։

Աշխատավոր մարդու ազատագրումը շահագործումից և նրա դրության փոփոխությունը հասարակության մեջ, հեղաշրջում առաջացրին նաև գործի նկատմամբ մարդկանց ունեցած հայացքներում, նոր վերաբերմունք ստեղծեցին աշխատանքի հանդեպ։ Սոցիալիզմն աշխատանքը դարձրեց պատվի, արիության ու հերոսության գործ։

Սոցիալիստական աշխատանքային կարգապահության գիտակցական բընույթը դրսևորվում է ժողովրդատնտեսական պլանների կատարման ու գերակատարման, հանրային արտադրության անընդհատ վերելքն ապահովելու համար ծավալվող սոցիալիստական մրցության մեջ։ Այն մեծ դեր է կատարում կոմունիզմի ստորին փուլից աստիճանաբար բարձրագույնին անցնելու պրոցեսում։ ՍՍՌՄ-ում կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ծագեց և լայնորեն տարածվում

է մրցության նոր ձևը՝ հանուն կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների կոչման. մրցության հիմնական լոզունգն է. «Սովորել աշխատել և ապրել կոմունիստաբար»: Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվների և հարվածայինների կոչման համար ծավալված շարժումը արտադրության կատարելագործման խնդիրները միավորում է կոմունիստական դաստիարակության խնդիրների հետ:

Սոցիալիստական աշխատանքային կարգապահությունը հիմնականում ստեղծվում և ամրապնդվում է համոզման, դաստիարակման և խրախուսման մեթոդներով: Պարտիան ու կառավարությունը մասսաներին դաստիարակում են աշխատանքի ու արտադրության նկատմամբ գիտակցական վերաբերմունքի ոգով, նրանց մեջ արմատավորում բարձր կարգապահության, կազմակերպվածության զգացումը:

Պատմության մեջ եղած այն մեծագույն փոփոխությունը, երբ դարերով իշխող անազատ աշխատանքը վերացավ, և ստեղծվեց ազատ աշխատանք, չէր կարող տեղի ունենալ առանց որոշ դժվարությունների, առանց հենց աշխատավորների միջավայրում առկա մոլի ձրիակերների, լոդրերի և կազմալուծիչների դեմ բռնություն գործադրելու: Կապիտալիզմի շատ մնացուկներ են պահպանվել մարդկանց և, հատկապես, այն խավերի գիտակցության մեջ, որոնց պատկերացմամբ սոցիալիզմն ազատություն է ոչ թե շահագործումից, այլ՝ աշխատանքից: Այդպիսիք ձգտում են հասարակությանը տալ որքան կարելի է քիչ, իսկ նրանից պոկել որքան կարելի է շատ: Այդ պատճառով էլ աշխատանքի բարձրագույն կարգապահություն ստեղծելու համար, համոզման, դաստիարակման և խրախուսման մեթոդներից բացի, անբարեխիղճ և հանրօգուտ աշխատանքից խուսափողների նկատմամբ կիրառվում են նաև հարկադրանքի մեթոդներ: Վ. Ի. Լենինը պահանջում էր դատի տալ և անխնա պատժել բոլոր նրանց, ովքեր խախտում են աշխատանքային կարգապահությունը:

Սոցիալիստական աշխատանքային կարգապահության ամրապնդումը հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր գործոններից մեկն է: Այն ապահովում է աշխատանքի բարեխիղճ կատարումը, աշխատօրվա լրիվ օգտագործումը, արտադրության գործիքների, հումքի, նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի լավագույն ու խնայողաբար օգտագործումը, խոտան արտադրանքի պակասեցումը, արտադրանքի որակի բարձրացումը և այլն: Սրանք այն ցուցանիշներն են, որ բնութագրում են աշխատանքային կարգապահության էությունը սոցիալիստական արտադրության մեջ:

Աշխատանքային թույլ կարգապահության հետևանքով տեղի է ունենում աշխատաժամանակի կորուստ, խախտվում է արտադրության համաչափությունը. դրանց հետևանքով լինում են տնտեսական մեծ վնասներ:

Ի՞նչ է իրենից ներկայացնում մեկ րոպեն: Եթե մեկ միլիոն բանվորը հերթափոխում կորցնեն միայն մեկ րոպե, ապա տարեկան կառաջանա մի քանի հարյուր հազար մարդ-օրվա կորուստ: Իսկ եթե նկատի ունենանք, որ տարեկան աշխատում են մի քանի տասնյակ միլիոն բանվորներ, ապա կորուստը կհասնի հսկայական մեծության: Ժամանակի կորուստը, սակայն, չի սահմանափակվում մեկ րոպեով, այն ավելի մեծ է լինում, նույնիսկ հասնում է ժամերի ու օրերի: Իսկ մեր օրերում ժամում, րոպեում, նույնիսկ վայրկյանում արտադրվում է բազմաթիվ տարբեր տեսակի արտադրանք: ՍՍՌՄ-ում այժմ յուրաքանչյուր մեկ րոպեում արդյունաբերությունը տալիս է տասնյակ տոննաներով չուգուն ու պողպատ, հարյուրավոր տոննաներով քարածուխ ու նավթ, հազարավոր մետրերով կտոր և այլն: Այստեղից էլ պարզ է, թե ինչպիսի մեծ նշանակություն ունի մեկ րոպեի կորստի վերացումը արտադրանքն ավելացնելու և աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում:

Աշխատաժամանակի կորուստների պատճառները բազմաթիվ են: Երբեմն բանվորներն իրենց անձնական գործերով զբաղվելով ուշանում են աշխատանքից, կամ ինքնակամ թողնում են գործը: Դրան մասամբ նպաստում է այն, որ արտադրության որոշ ղեկավարներ իրենց համար ստեղծել են արտոնյալ պայմաններ, նրանք աշխատանքի են գալիս և աշխատանքից վերադառնում են, երբ կամենան: Ենթականերից ոմանք էլ հետևում են նրանց օրինակին: Իսկ այդպիսի ղեկավարները չեն կարողանում դիտողություն անել աշխատանքային կարգապահությունը խախտողներին: Ահա թե ինչու ղեկավարները ոչ թե պետք է իրենց արտոնյալ համարեն, այլ լինեն ավելի պարտաճանաչ, խիստ օրինապահ ու կարգապահ:

Մեր կարծիքով աշխատանքային կարգապահության խախտումներ, հետևաբար, աշխատաժամանակի կորուստներ են տեղի ունենում նաև քաղաքային տրանսպորտի անկազմակերպ ու անբավարար աշխատանքի և բնակարանների աննպատակահարմար բաշխման հետևանքով:

Արդյունաբերության զարգացմանը զուգընթաց քաղաքային բնակչությունն աճում է չտեսնված արագությամբ (օրինակ, Երևան քաղաքի բնակչությունը 1959 թվականին եղել է 509 հազար, իսկ 1962 թվականին՝ ավելի քան 600 հազար մարդ, այսինքն՝ ավելացել է մոտ 100 հազարով): Միաժամանակ խիստ ընդարձակվում են քաղաքները: Բայց նույն արագությամբ չի աճում ու զարգանում քաղաքային տրանսպորտը, որի պատճառով էլ տրանսպորտի միջոցները գերծանրաբեռնվում և ժամանակից շուտ են շարքից դուրս գալիս: Տրանսպորտի միջոցների տեխնիկական վերահսկողության վատ կազմակերպումը և անբավարար նորոգումները նույնպես ներքաղաքային տրանսպորտի երթևեկությունը խիստ անկանոն են դարձնում:

Աշխատանքային կարգապահության խախտումների այս պատճառներին միանում է նաև բնակարանների ոչ ճիշտ բաշխումը: Մի շարք քաղաքներում այս հարցին բավարար ուշադրություն չեն հատկացնում: Բնակարանային պահանջի բավարարման ներկայիս սուղ պայմաններում կարծես թե անտեսվում է բնակչության էֆեկտիվ բնակեցումը: Մոռացության է տրվում հարցի մյուս կողմը՝ այն, որ բնակարանները պետք է բաշխվեն այնպես, որ մարդիկ մոտ լինեն իրենց աշխատավայրերին՝ հիմնարկ-ձեռնարկություններին: Օրինակ, Երևան քաղաքի հյուսիս և հյուսիս-արևելյան մասերում բնակեցված բնակչության մի զգալի մասն աշխատում է հարավ և հարավ-արևմտյան մասերում տեղավորված հիմնարկ - ձեռնարկություններում, և հակառակը: Ներկայիս տրանսպորտային միջոցների պայմաններում այդ տարածությունն անցնելու համար պահանջվում է առնվազն մեկ ժամ, եթե ոչ ավելի: Նման պայմաններում մարդիկ կուշանան աշխատանքից: Էլ չենք խոսում այն մասին, թե այդ հանգամանքը ինչպիսի ներգործություն է ունենում աշխատողի հոգեկան վիճակի, հետևաբար և նրա աշխատունակության վրա: Աշխատողը նույնքան ժամանակ էլ կորցնում է տուն վերադառնալու համար:

Հասկանալի է, այսպիսի վիճակը

տեսական լինել չի կարող, այն կվերանա, եթե զարգանան, ավելանան տըրանսպորտի միջոցները, ստեղծվեն տրանսպորտի նոր, ավելի կատարյալ միջոցներ։

Աշխատաժամանակի կորուստներ են տեղի ունենում նաև արտադրության կազմակերպչական-տեխնիկական թերությունների (աշխատատեղի չնախապատրաստումը, մեքենաների ու սարքավորման սարքին չլինելը, էլեկտրաէներգիայի, անհրաժեշտ հումքի ու նյութերի, գործիքների բացակայությունը և այլն), խոտան արտադրանք տալու և այն վերամշակելու, արտադրության սահմանված տեխնոլոգիայից շեղվելու և աշխատանքի անարտադրողական այլ ծախսումների հետևանքով։

Ժողովրդական տնտեսության զարգացման պլանների կատարման գործում կարևոր նշանակություն ունի գործալքումների դեմ պայքար կազմակերպելը։ Մինչդեռ ռեսպուբլիկայի արդյունաբերության մի շարք ճյուղերում պարտիական և հասարակական կազմակերպությունններն աչքաթող են արել այդ հանգամանքը։

Մի՞թե կարելի է հանդուրժել այն երևույթը, երբ 1960 թվականի համեմատությամբ 1961 թվականին ռեսպուբլիկայի ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություններում գործալքումների թիվը կրկնապատկվել է, իսկ 1962 թվականի ինն ամսում ավելի շատ գործալքումներ են եղել, քան 1961 թվականի ամբողջ տարվա ընթացքում։ Ժողտնտխորհի թեթև արդյունաբերության ձեռնարկություններում 1960 թվականին եղել է 19817, 1961 թվականին՝ 32368, իսկ 1962 թըվականի ինն ամսում՝ 32496 մարդօրվա գործալքում։

Եթե գործալքումներին ավելացնենք նաև աշխատանքից ուշացումներն ու ինքնակամ հեռացումները, ապա կըստացվի աշխատաժամանակի մի վիթխարի կորուստ։ Այն ավելի է մեծանում այն պատճառով, որ առաջանում են նաև ամբողջօրյա և ներհերթափոխային հսկայական պարապուրդներ։

Ամբողջօրյա և ներհերթափոխային պարապուրդները ըստ տարիների

| Արդյունաբերության ճյուղեր | 196 թ. | | 1961 թ. | | 1962 թ. 9 ամիս | |
|---|---|---|---|---|---|---|
| | ամբողջօրյա պարապուրդները մարդ-օրերով | ներհերթափոխային պարապուրդ. մարդ-ժամերով | ամբողջօրյա պարապուրդ. մարդ-օրերով | ներհերթափոխային պարապուրդ մարդ-ժամերով | ամբողջօրյա պարապ. մարդ-օրերով | ներհերթափոխ. պարապ. մարդ-ժամերով |
| Ժողտնտխորհ | 71802 | 915598 | 71535 | 906405 | 60702 | 033060 |
| այդ թվում՝ | | | | | | |
| Մեքենաշինություն և մետաղամշակում | 28730 | 142907 | 14534 | 81462 | 13139 | 24069 |
| Թեթև արդյունաբերություն | 22063 | 675625 | 27197 | 636131 | 24367 | 494513 |
| այդ թվում՝ | | | | | | |
| Տեքստիլ արդյունաբերություն | 13742 | 650729 | 17471 | 601760 | 13141 | 397890 |

Ինչպես տեսնում ենք թվական տըվյալներից, ամբողջօրյա և ներհերթափոխային պարապուրդներն զգալի մեծություն են կազմում, բայց դրանք դեռևս ճիշտ չեն արտացոլում աշխատաժամանակի կորուստների ռեալ պատկերը, որովհետև արդյունաբերական ձեռնարկություններում պարապուրդների հաշվառման գործը վատ է կազմակերպված։ Շատ ձեռնարկություններում նույնիսկ հաշվի չեն առնըվում ներհերթափոխային պարապուրդնե-



րը, երբեմն հաշվառման են ենթարկում միայն կես կամ մեկ ժամից ավելի պարապուրդները։ Եթե ամենօրյա ստույգ հաշվառում կատարվի, ապա, նախ՝ պատկերը ճիշտ կլինի, և երկրորդ՝ կհայտնաբերվեն ներհերթափոխային պարապուրդների պատճառները, հնարավոր կլինի պայմաններ ստեղծել դրանց վերացման համար։

Բանվորների չարդարացված հոսունությունը ևս համարվում է աշխատանքային կարգապահության խախտում։ Արդյունաբերական շատ ձեռնարկություններում ամեն տարի բանվորների մի մասն ազատվում, հեռացվում է աշխատանքից և նույնքան, կամ ավելի բանվորներ նորից ընդունվում են։

Աշխատուժի հոսունությունը բացասաբար է անդրադառնում աշխատավորների որակավորման վրա։ Մեկ ձեռնարկությունից մյուսն անցնելու հետևանքով առաջանում է բանվորի աշխատանքի որոշ ընդհատում, որը տանում է դեպի նրա գործարար որակի իջեցում։ Նոր ձեռնարկություն ընդունվողի համար սովորաբար որոշ ժամանակ է անհրաժեշտ իր համար նոր արտադրության հետ ծանոթանալու, նոր պայմաններին ընտելանալու համար։ Այդ պատճառով էլ այդ շրջանում նրա աշխատանքի արտադրողականությունը շատ ցածր է լինում։ Բացի այդ, նոր ընդունվողների մի մասը, համապատասխան որակավորում չունենալով, ուսուցման պրոցես է անցնում, որը նույնպես բացասաբար է անդրադառնում ձեռնարկությունների պլանների կատարման վրա, խլելով հսկայական դրամական ծախսեր։ Աշխատուժի հոսունությունն արգելակում է աշխատանքի արտադրողականության բարձրացումը և մեծացնում խոտան արտադրանքը։

Բանվորների մի մասը ձեռնարկություններից հեռանում է հարգելի պատճառով (սովորելու գնալու, ծերության և հաշմանդամության թոշակի անցնելու, զինված ուժերի շարքերը համալրելու, բնակության տեղը փոփոխելու և այլ պատճառներով), իսկ որոշ մասն էլ՝ որակավորմանը համապատասխան չաշխատելու, աշխատանքային կարգապահության թուլության, դաստիարակչական աշխատանքների բացակայության, կենցաղային ու բնակարանային վատ պայմանների, երբեմն էլ արտադրության ղեկավարների կամայականության հետևանքով։

Պարտիան և կառավարությունը մեր բոլոր պարտիական կազմակերպություններից ու տնտեսական օրգաններից միշտ պահանջել և այժմ էլ պահանջում են՝ վճռական պայքար մղել աշխատանքային կարգապահության ամրապնդման, բոլոր ձեռնարկություններում բանվորների ու մասնագետների կայուն ու որակյալ կադրերի ստեղծման, բանվորների հոսունությանը վերջ տալու համար։ ՍՄԿԿ Կենտկոմի 1962 թվականի նոյեմբերյան պլենումում տված զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը նշում է. «Ժողովրդական տնտեսությանը մեծ վնաս է հասցնում կադրերի հոսունությունը։ ՍՄԿԿ Կենտկոմը և կառավարությունը շատ առաջարկություններ են ստանում այն առթիվ, թե ինչպես պայքարել բանվորական ուժի հոսունության դեմ։ Առաջարկվում է, օրինակ, բնակարանների բաշխումը և արձակուրդի տևողությունը կախման մեջ դնել ձեռնարկությունում և կառույցում աշխատանքի ստաժի անընդհատությունից, մշակել այն աշխատավորների նյութական ու բարոյական խրախուսման միջոցառումներ, ովքեր շատ տարիներ աշխատել են մեկ ձեռնարկությունում։ Հավանաբար հարկավոր է լուրջ փոփոխություններ մտցնել աշխատանքային օրենսդրության մեջ, նկատի ունենալով աշխատավորների հասարակական ու անձնական շահերի ավելի ճիշտ զուգակցումը։ Դրա հետ

մեկտեղ անհրաժեշտ է ուժեղացնել մասսաների մեջ կատարվող դաստիարակչական աշխատանքը, յուրաքանչյուր աշխատավորի պատվաստել բարոյական վեհ սկզբունքներ, ձեռնարկության կոլեկտիվի առջև, ամբողջ սովետական ժողովրդի առջև իր աշխատանքի համար յուրաքանչյուրի պատասխանատվության զգացում»:

Աշխատանքի սոցիալիստական կազմակերպման կարևորագույն լծակը և աշխատանքային կուռ կարգապահություն ստեղծելու միջոցը միանձնյա ղեկավարությունն է, որը նշանակում է աշխատողների կոլեկտիվի ենթարկումը ղեկավարի միասնական կամքին. վերջինս օժտված է անհրաժեշտ իրավունքներով արտադրության՝ նրան վստահված տեղամասի նկատմամբ և լիակատար պատասխանատվություն է կրում վերադաս օրգանների առջև՝ այդ տեղամասի աշխատանքների համար:

Մարքսն ու էնգելսը նշում են, որ խոշոր մեքենայական արդյունաբերության տիրապետության ժամանակ առանձին անձերի միմյանց հետ կապ չունեցող գործունեության փոխարեն հանդես է գալիս մարդկանց կոմբինացված գործունեությունը, որը ենթադրում է կազմակերպում, իսկ կազմակերպումն անհնար է առանց հեղինակության, առանց միանձնյա ղեկավարության: Այդ հեղինակությունը հատկապես անհրաժեշտ է սոցիալիզմի ժամանակ: Վ. Ի. Լենինը գրում է, որ «...յուրաքանչյուր խոշոր մեքենայական ինդուստրիա, այսինքն՝ սոցիալիզմի հենց նյութական, արտադրական աղբյուրն ու հիմքը,— պահանջում է անպայման և խստագույն միասնականությունն այն կամքի, որն ուղղություն է տալիս հարյուրավոր, հազարավոր և տասնյակ հազարավոր մարդկանց միատեղ աշխատանքին» (Երկեր, հ. 27, էջ 322):

Միանձնյա ղեկավարությունը բացառում է դիմազրկությունն ու անպատասխանատվությունը և հնարավորություն է տալիս պահպանելու աշխատանքային խիստ կարգապահություն: Սակայն միանձնյա ղեկավարությունը չի ժխտում հարցերի քննարկման դեմոկրատական սկզբունքը, այլ ենթադրում է թե՛ մեկի և թե մյուսի մտածված ու ճիշտ զուգակցումը: «Քննարկումը համատեղ, իսկ պատասխանատվությունը միանձնյա»,— ուսուցանում է Լենինը: Ամեն մի հարցի վերաբերյալ ճիշտ որոշում կայացնելու համար ամենահարմար և ամենակարևոր միջոցը դեմոկրատական սկզբունքով քննարկումն է:

ՍՍՌՄ-ում ստեղծվել և գործում են արտադրական խորհրդակցությունների սիստեմ, տարբեր հանձնաժողովներ, դրանց միջոցով բանվորներն ու մասնագետները մասնակցում են արտադրության կառավարմանը: ՍՍՌՄ Մինիստրների սովետի 1955 թ. օգոստոսի 9-ի «Ձեռնարկությունների դիրեկտորների իրավունքների ընդլայնման մասին» որոշման մեջ ասված է, որ ձեռնարկությունների դիրեկտորներն իրենց գործունեության ընթացքում միանձնյա ղեկավարության սկզբունքը պահպանելիս պետք է հենվեն ձեռնարկությունների ակտիվի վրա. դրա համար պետք է կանոնավոր կերպով անցկացնել արտադրական խորհրդակցություններ և տնտեսական ակտիվներ, ուր պետք է քննարկվեն ձեռնարկությունների պլանների նախագծերը և աշխատանքի այլ կարևորագույն հարցեր:

Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը ստեղծեց արտադրության ղեկավարման գործում աշխատավորների ավելի լայն մասնակցության հնարավորություն: Բայց խոշոր արտադրության այժմյան վիճակը պահանջում է ավելի ընդլայնել ու խորացնել ձեռնարկությունների կառավարման դեմոկրատա-



կան սկզբունքները: Խոշոր ձեռնարկությունների (որոնցում աշխատում են տասնյակ հազարավոր բանվորներ) ղեկավարները, ինչպես ասում է Ն. Ս. Խրուշչովը, որքան էլ նրանք կրթված ու փորձված լինեն, չեն կարող ընդգրկել բոլոր արտադրատեխնիկական և նյութա-կենցաղային հարցերը, իսկ այդպիսի հարցեր ամեն օր ծագում են մեծ կոլեկտիվներում: Հենց այս էլ նկատի է ունեցել ՍՄԿՊ-ն, իր նոր Ծրագրում տալով գլխավոր ուղղությունը՝ բարձրացնել բանվորների ու ծառայողների կոլեկտիվների դերը ձեռնարկությունների աշխատանքային հարցերի լուծման ասպարեզում:

Ձեռնարկությունների միանձնյա ղեկավարության սկզբունքը միանգամայն ճիշտ է, բայց արտադրության որոշ ղեկավարներ այն խեղաթյուրում և վերածում են վարչարարության, հրամաններ արձակելու: Նրանք արտադրությունը կառավարում են առանց բանվորների, ծառայողների ու մասնագետների ակտիվ մասնակցության: «Մեղանում,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— ձեռնարկությունների ղեկավարման ասպարեզում գործում է միանձնյա ղեկավարության լենինյան սկզբունքը: Եվ դա ճիշտ է: Բայց որոշ ընկերներ միանձնյա ղեկավարության սկզբունքները միակողմանիորեն հասկանում են որպես վարչարարություն, հրամաններ արձակել, արտադրությունը կառավարել առանց բանվորների, մասնագետների և ծառայողների ակտիվ մասնակցության: Այդ ընկերները մոռանում են միանձնյա ղեկավարության սկզբունքը արտադրության անմիջական կառավարմանը մասսաներին ամենալայն կերպով ներգրավելու հետ ճշտորեն զուգորդելու լենինյան ցուցումը»:

Ձեռնարկությունների և կառույցների կառավարման դեմոկրատական սկզբունքների հետագա զարգացման, աշխատավորական մասսաներին արտադրության կառավարմանը լայնորեն մասնակից դարձնելու համար ՍՄԿՊ Կենտկոմի 1962 թ. նոյեմբերյան պլենումը նպատակահարմար գտավ ձեռնարկություններում ու կառույցներում ստեղծել լայն ներկայացուցչական օրգաններ՝ ֆաբրիկա-գործարանային, և խոշոր ձեռնարկություններում՝ ցեխային արտադրական կոմիտեներ, որոնք պետք է ընտրվեն ձեռնարկությունների և կառույցների աշխատողների ընդհանուր ժողովներում: Այդ կոմիտեները մասնակցելու են պլանների քննարկմանը, դրանց կատարման վերահսկողությանը, աշխատանքի նորմավորմանը, կադրերի տեղաբաշխմանը և այլն, բայց ունենալու են խորհրդակցական իրավունք: Արտադրության կառավարման մեջ աշխատավորներին լայնորեն ընդգրկելը դրական մեծ արդյունք կտա, կոլեկտիվներում կստեղծի լավ հարաբերություններ, աշխատողներին կազատի անհատի պաշտամունքի ժամանակաշրջանի սովորություններից և սխալ պատկերացումներից:

Արտադրության հարցերի լայն քննարկումը հնարավորություն է տալիս վեր հանել եղած թերությունները, հարցերը լուծել ճիշտ, զարգացնել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնությունը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը ձեռնարկության բոլոր աշխատանքների համար: Կոմունիստական հասարակարգի կառուցման ժամանակաշրջանում բարձրանում է հասարակայնության դերը արտադրության կառավարման և աշխատանքային կարգապահության բարձրացման գործում:



# Կոմունիստական և բանվորական շարժման ԼԻԴԵՐՆԵՐԸ

## Ֆիդել Կաստրո Ռուս



Կուբայի ժողովրդի ազգային հերոս, կուբայական սոցիալիստական ռևոլյուցիայի առաջնորդ, Կուբայի Ռեսպուբլիկայի սոցիալիստական ռևոլյուցիայի միասնական պարտիայի ազգային ղեկավարության առաջին քարտուղար և ռևոլյուցիոն կառավարության պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրո Ռուսը ծնվել է 1926 թվականի օգոստոսի 13-ին, Օրիենտե նահանգի հյուսիսում՝ Մայարի քաղաքի շրջանում գտնվող Բիրան բնակավայրում:

Մանկական տարիներից, որ անցան ծնողների՝ հարուստ հողատերերի ընտանիքում, Ֆիդել Կաստրոն իր հասակակիցների շրջանում աչքի էր ընկնում արտակարգ հետաքրքրասիրությամբ, հարցասիրությամբ, շրջապատող երևույթները ճանաչելու ձգտումով: Դպրոցական տարիներին նրա դրսևորած բացառիկ ընդունակությունները, ընկերականության ոգին, անբասիր ազնվությունն ու ճշմարտասիրությունը, հարգանք ու հեղինակություն ստեղծեցին նրա համար ընկերների շրջանում:

«Ֆիդել Կաստրոն դեռ շատ ոսկե էջեր կլրացնի իր կյանքի գրքում: Նա օժտված է արգասաբեր հատկություններով, իսկ ուղղություն տվող կճարվի», ասված է կոլեջը վերջացնելուց հետո տրված ավարտական բնութագրում: Այս խոսքերը մարգարեական եղան: Ուղղություն տվողը ժողովուրդը եղավ: Ֆիդել Կաստրոն իր ամբողջ կյանքը կապեց ժողովրդի հետ և իր բոլոր ուժերը, իր բանականությունն ու եռանդը նվիրում է ժողովրդի երջանկության համար մղվող պայքարին:

Տակավին դեռատի տարիներին Ֆիդել Կաստրոյի քաղաքական հայացքների ձևավորման վրա հըսկայական ազդեցություն թողեցին Կուբայի ժողովրդի մեծ զավակ, հերոս ռևոլյուցիոներ Խոսե Մարտիի ռևոլյուցիոն ազատագրական գաղափարները:

1945 թվականին, մտնելով Հավանայի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը, Ֆիդել Կաստրոն անմիջապես ներգրավվեց քաղաքական կյանքում: Այստեղ՝ իր ընկերների շրջանում, նա ծանոթացավ մարքս-լենինյան ուսմունքին: «Կոմունիստական մանիֆեստը», Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունները գրավեցին Ֆիդել Կաստրոյին, նրան ստիպեցին խորհել Կուբայի բազմատանջ ժողովրդի ծանր ճակատագրի մասին, իմպերիալիստական ճնշումից և տեղական բուրժուազիայի ու կալվածատերերի շահագործումից նրան ազատագրելու պայքարի ուղիների մասին: Ֆիդել Կաստրոյի խոսքերով ասած՝ Հավանայի համալսարանը 1949 թվականին ավարտելուց հետո, նա արդեն գտնվում էր մարքսիզմ-լենինիզմի ուժեղ ազդեցության տակ:

Ավարտելով համալսարանը և իրավունքի դոկտորի աստիճան ստանալով, Ֆիդել Կաստրոն բացեց մասնավոր փաստաբանական գրասենյակ: Սակայն նրան ավելի շատ զբաղեցնում էր այդ ժամանակ Կուբայում տեղի ունեցող քաղաքական սուր պայքարը: Նա վճռականորեն պայքարում էր քաղաքական գանգստերիզմի դեմ: Հանդես էր գալիս Պրիո Սոկառասի կառավարության մեջ եղած կաշառակերության, երկրում տիրող ոստիկանական տեռորի դեմ, մասնակցում էր դեմոկրատական ցույցերին:

Երբ 1952 թվականի մարտի 10-ին Կուբայի ռազմամոլները Բատիստայի գլխավորությամբ պետական հեղաշրջում կատարեցին, Ֆիդել Կաստրոն դրան անմիջապես արձագանքեց վայրալի բողոքով, ժողովրդին պայքարի կոչեց ընդդեմ երկրի նոր դիկտատորի:

Ռևոլյուցիոնորեն տրամադրված մի խումբ երիտասարդների հետ միասին նա ձեռնամուխ եղավ դիկտատորական ռեժիմի դեմ զինված ապստամբության պլանի մշակմանը, որը և կենսագործվեց 1953 թվականի հուլիսի 26-ին: Այդ օրը 165 երիտասարդներ Ֆիդել Կաստրոյի գլխավորությամբ հերոսական գրոհ նախաձեռնեցին Սանտյագո-դե-Կուբա քաղաքի «Մոնկադա» զորանոցների կայազորի վրա, որտեղ մի քանի հազար զինվորներ կային: Բայց ուժերն անհավասար էին: Ֆիդել Կաստրոյի ընկերներից շատերն ընկան այդ կըռվում կամ գնդակահարվեցին բատիստականների կողմից: Ֆիդել Կաստրոն, նրա եղբայր Ռաուլը և գրոհի կենդանի մնացած մյուս մասնակիցները հետագայում ձերբակալվեցին:

1953 թվականի աշնանը կայացավ Ֆիդել Կաստրոյի և նրա ընկերների դատը: Ֆիդել Կաստրոն այնտեղ արտասանեց իր հայտնի՝ «Պատմությունն ինձ կարդարացնի» նշանավոր ճառը, որտեղ նա ոչնչացնող քննադատության ենթարկեց Բատիստայի արյունռուշտ դիկտատուրան և շարադրեց Կուբայում ազգային-ազատագրական պայքարի և ռևոլյուցիոն վերափոխությունների ծրագիրը:

Դատարանում Ֆիդել Կաստրոյի դեմ որպես «հանցանշաններից» մեկը ներկայացված էր խուզարկության ժամանակ նրանից վերցված Վ. Ի. Լենինի աշխատությունների մի հատորյակ: Այն հարցին, թե «Դա ո՞ւմ գիրքն է», Ֆիդել Կաստրոն պատասխանեց դատավորներին. «Դա մեր գիրքն է և ով չի կարդում այդպիսի գրքեր, նա տգետ է»:

Ֆիդել Կաստրոն և նրա ընկերները դատապարտվեցին 15 տարվա բանտարկության: Բայց Պինոս կղզում գտնվող բատիստական զնդաններում էլ Ֆիդել Կաստրոն չէր դադարեցնում ժողովրդական ապստամբության նախապատրաստման աշխատանքը, մշտական կապ էր պահպանում բանտից դուրս գտնվող իր բարեկամների հետ:

«Մոնկադայի» վրա կատարած գրոհից, դատարանում Ֆիդել Կաստրոյի քաջարի վարքագծից ու բոցաշունչ ճառից հետո նա ազգային հերոս դարձավ: Երկրում սկսեցին ստեղծվել նրա հետևորդների խմբեր, որոնք միավորվեցին «Հուլիսի 26-ի շարժում» մասսայական ռևոլյուցիոն կազմակերպության մեջ:

1955 թ. մայիսին, դիկտատուրայի կազմակերպած պառլամենտական ընտրությունների կատակերգության նախօրյակին, Բատիստան, հասարակական կարծիքի ուժեղ ճնշման տակ, ստիպված էր քաղաքական բանտարկյալներին ներում շնորհել: Բանտերից դուրս եկան Ֆիդել Կաստրոն և «Մոնկադայի» վրա կատարած գրոհի մյուս մասնակիցները: Այդ նույն թվականի վերջերին, Ֆիդել Կաստրոն իր մի խումբ զինակիցների հետ միասին վտարանդեց Մեքսիկա, որտեղ սկսեց պատրաստել կուբացի ռևոլյուցիոներների մի ջոկատ՝ Կուբայում ափ հանելու և կղզում ժողովրդական ապստամբություն կազմակերպելու համար:

1956 թվականի դեկտեմբերի 2-ին 82 հոգուց բաղկացած մի զինված ջոկատ Ֆիդել Կաստրոյի գլխավորությամբ «Գրանմա» մոտորային զբոսանավից իջավ Օրիենտե նահանգի հարավային ծովափը, որտեղ, անակնկալ կերպով դարանի մեջ ընկնելով, իսկույն ևեթ մարտի բռնվեց Բատիստայի զորքերի հետ: Ռևոլյուցիոներների ջոկատը ջախջախվեց: Սիերա-Մաեստրա լեռներում Ֆիդել Կաստրոյի հետ միասին հետագայում միայն 12 մարդ հավաքվեցին, որոնք պարտիզանական պայքար սկսեցին դիկտատուրայի դեմ, ընթանալով երկրում ավելի ու ավելի լայնորեն ծավալվող ռևոլյուցիոն շարժման ավանգարդում:

Երկու տարի շարունակ, գտնվելով Սիերա-Մաեստրա լեռներում, Ֆիդել Կաստրոն վիթխարի աշխատանք կատարեց. նա ստեղծեց ապստամբական բանակ. նա մշտական ղեկավարություն էր ցույց տալիս «Հուլիսի 26-ի շարժում» քաղաքացիական կազմակերպություններին, դիկտատուրայի դեմ մղվող պայքարում հոգ էր տանում Կուբայի մյուս իսկական ռևոլյուցիոն կազմակերպությունների՝ ժողովրդա-սոցիալիստական պարտիայի և «Մարտի 13-ի ռևոլյուցիոն դիրեկտորատի» հետ սերտ փոխգործողություն հաստատելու մասին. ազատագրված տերիտորիաներում նա ստեղծում էր ժողովրդական իշխանության առաջին օրգանները, իրականացնում էր առաջին ռևոլյուցիոն վերափոխությունները:

Երկիրը իմպերիալիստական տիրապետությունից ազատագրելու, Կուբայի իսկական ազգային անկախություն նվաճելու համար Բատիստայի դիկտատուրայի և ֆեոդալական-կալվածատիրական օլիգարխիայի դեմ Ֆիդել Կաստրոյի սկսած ռևոլյուցիոն զինված պայքարը պսակվեց պատմական հաղթանակով: 1959 թվականի հունվարի 1-ին Բատիստայի դիկտատուրան տապալվեց:

1959 թ. հունվարի սկզբներին ստեղծվեց Կուբայի առաջին ռևոլյուցիոն կառավարությունը, որի պրեմիեր-մինիստրը փետրվարի 16-ից դարձավ Ֆիդել Կաստրոն:

Սկսվեց կուբայական ռևոլյուցիայի նոր էտապը, երկրում ռևոլյուցիոն իշխանության կարգացման ու ամրապնդման էտապը, հաղթանակած հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական և ժողովրդա-

դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճվելու էտապը, որն ընթանում էր ներքին ու արտաքին թշնամիների դեմ մղվող դասակարգային պայքարի պայմաններում:

Որպես ռևոլյուցիայի առաջնորդ և կառավարության ղեկավար, Ֆիդել Կաստրոն այդ ժամանակաշրջանում հիրավի տիտանական աշխատանք կատարեց: Նրա նախաձեռնությամբ ու անմիջական մասնակցությամբ կարճ ժամկետում կատարվեց պետական ապարատի պտումը Բատիստայի դրածոներից և այդ ապարատի ռևոլյուցիոն վերակառուցումը, վերացվեց շահագործող դասակարգերին ծառայող նախկին բանակը և ստեղծվեցին երկրի իսկական ժողովրդական ռևոլյուցիոն զինված ուժեր: 1959 թվականի մայիսի 17-ին ընդունվեց ագրարային ռեֆորմի վերաբերյալ Ֆիդել Կաստրոյի ղեկավարությամբ մշակված պատմական օրենքը, որը հիմք դրեց գյուղատնտեսական արտադրության հետագա սոցիալիստական վերակառուցմանը: Դրանից հետո ազգայնացվեցին արդյունաբերական և առևտրական ձեռնարկությունները, բանկերը, երկաթուղային տրանսպորտը: Ռևոլյուցիայի առաջին երկու տարիներին Կուբայի ժողովուրդը Ֆիդել Կաստրոյի ղեկավարությամբ հիմնավորապես վերջ տվեց օտարերկրյա իմպերիալիստական մոնոպոլիաների տիրապետությանը երկրում:

Ռևոլյուցիոն իշխանության առաջին իսկ օրվանից Ֆիդել Կաստրոն բարձրացրեց կուլտուրական ռևոլյուցիայի դրոշը, մի ռևոլյուցիա, որը հաջողությամբ իրագործվում է Ազատության կղզում:

Ղեկավարելով սոցիալ-տնտեսական խոր վերափոխությունների կենսագործումը, Ֆիդել Կաստրոն միևնույն ժամանակ շատ բարդ պայքար էր մղում այն օպորտունիստական, հակակոմունիստական աջ բուրժուական տարրերի դեմ, որոնք ռևոլյուցիայի առաջին շրջանում սողոսկել էին պետական իշխանության ապարատը, կանապան տեսակի դավադիրների դեմ, որոնք ձգտում էին շեղել ռևոլյուցիայի ընթացքը: Այդ ժամանակաշրջանի իր բազմաթիվ ելույթներում Ֆիդել Կաստրոն գաղափարապես ջախջախեց ներքին ռեակցիան, որը փորձում էր հակակոմունիզմի խրտվիլակի օգնությամբ պառակտել ռևոլյուցիայի շարքերը: Դրանով իսկ նա ապահովեց բոլոր ռևոլյուցիոն ուժերի կայուն միասնության, երկրի հիմնական ռևոլյուցիոն կազմակերպությունների միավորման և հետագայում նոր մարքս-լենինյան պարտիայի՝ սոցիալիստական ռևոլյուցիայի միասնական պարտիայի ստեղծման ուղին:

1961 թվականին տեղի ունեցավ Կուբայի երեք հիմնական ռևոլյուցիոն ուժերի՝ «Հուլիսի 26-ի շարժման», ժողովրդա-սոցիալիստական պարտիայի և «Մարտի 13-ի ռևոլյուցիոն դիրեկտորատի» միավորումը միացյալ ռևոլյուցիոն կազմակերպությունների (ՄՌԿ) մեջ, որի առաջին քարտուղար ընտրվեց Ֆիդել Կաստրոն: ՄՌԿ-ն դարձավ այժմ ստեղծման պրոցեսում գտնվող սոցիալիստական ռևոլյուցիայի միասնական պարտիայի սաղմը:

Ֆիդել Կաստրոն անդուլ պայքարում է կուբայական ռևոլյուցիայի մարքս-լենինյան ավանգարդի շարքերի անաղարտության համար, վճռականորեն հանդես է գալիս ռևոլյուցիոն ուժերի շրջանում աղանդավորականության և օպորտունիզմի դեմ:

Ֆիդել Կաստրոն գլխավորել և գլխավորում է բոլոր իմպերիալիստական ու հակառևոլյուցիոն դավադրությունների դեմ մղվող պայքարը: 1961 թվականի ապրիլյան օրերին անձամբ նրա առաջնորդությամբ ջախջախվեց ինտերվենտների՝ ամերիկյան իմպերիալիզմի վարձկանների, մեկուկես հազարանոց բրիգադան: Ինտերվենցիայի նախօրեին՝ 1961 թ. ապրիլի 16-ին Ֆիդել Կաստրոն հռչակել էր, որ կուբայական ռևոլյուցիան իր բնույթով սոցիալիստական է:

Կարաիբյան ճգնաժամի սպառնալից օրերին՝ 1962 թվականի հոկտեմբերին, երբ ամերիկյան իմպերիալիզմը աշխարհը կանգնեցրել էր ջերմամիջուկային պատերազմի եզրին, Ֆիդել Կաստրոյի ղեկավարած Կուբայի ժողովուրդը վիթխարի արիություն ու հերոսություն ցուցաբերեց: Այդ օրերին Ֆիդել Կաստրոն մշակեց իր հայտնի հինգ կետերը, որոնք դարձան Կարաիբյան ծովի շրջանում խաղաղ կարգավորման ծրագիր:

Ֆիդել Կաստրոյի անունը իրավամբ հիշատակվում է նրանց թվում, ովքեր հսկայական ավանդ են մուծել ժողովուրդների անվտանգության ամրապնդման և ապահովման գործում: Խաղաղության պայքարում աչքի ընկնող ծառայությունների համար Կաստրոն 1961 թվականին արժանացավ «ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար» միջազգային լենինյան մրցանակի:

Ֆիդել Կաստրոն սոցիալիստական լագերի երկրների միասնության, միջազգային կոմունիստական շարժման միասնության կայուն մարտիկն է: Նա անդուլ ամրապնդում է սովետական և կուբայական ժողովուրդների եղբայրական բարեկամությունը: «Ֆիդել—Խրուշչով՝ մենք ձեզ հետ ենք» — հռչակում են Կուբայի աշխատավորներն այս լոզունգը, իրենց բարեկամական խոր զգացմունքներն արտահայտելով ՍՍՌՄ-ի նկատմամբ:

Ֆիդել Կաստրոյի մարքսիստական աշխարհայացքի ձևավորումը տեղի էր ունենում բուն իսկ ռևոլյուցիոն պայքարի ընթացքում: Ռևոլյուցիայի կարգացմանը զուգընթաց, ասել է Ֆիդել Կաստրոն, «մենք գնալով ավելի էինք համոզվում Մարքսի, Էնգելսի գաղափարների ճշմարտացիության և գիտական սոցիալիզմի Լենինի տված հիրավի հանճարեղ բացատրության մեջ... Ես մարքսիստ-լենինյան եմ և մարքսիստ-լենինյան կլինեմ մինչև կյանքիս վերջին օրը»:

# ՋՈՆ ԳՈԼԼԱՆ

Անգլիական բանվոր դասակարգի ականավոր գործիչ, Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղար Ջոն Գոլլանը ծնվել է 1911 թ. Էդինբուրգում (Շոտլանդիա), բանվորի ընտանիքում: Տասներեք տարեկան հասակում Գոլլանը ստիպված էր թողնել դպրոցը և դառնալ ներկարարի աշակերտ: Գոլլանի ծնողները (համոզմունքներով սոցիալիստներ) դեռ վաղ հասակից երեխայի մեջ հետաքրքրություն էին արթնացնում դեպի քաղաքական կյանքը:

1926 թվականին Անգլիայում տեղի ունեցած ընդհանուր գործադուլի ժամանակ տասնհինգամյա Գոլլանը վաճառում է գործադուլավորների գործողության կոմիտեի թերթերը: 1927 թվականին նա դառնում է Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի անդամ, միաժամանակ ակտիվ աշակցում է երիտասարդության կոմունիստական միության գործունեությանը Շոտլանդիայում: 1931 թվականին Ջ. Գոլլանը հակամիլիտարիստական ելույթների համար ձերբակալվում է և վեց ամսով բանտարկվում «խռովություն հրահրելու» մեղադրանքով:

1932 թվականին բանտից ազատվելուց հետո Գոլլանը դառնում է անգլիական կոմերիտմիության կենտրոնական օրգան «Յանգ ուորկեր» թերթի խմբագիրը: Շատ շուտ նա դառնում է երկրի երիտասարդական շարժման առավել ականավոր լիդերներից մեկը: 1935 թվականին ընտրվում է երիտասարդության կոմունիստական միության գլխավոր քարտուղար: Այդ պոստը նա վարում է մինչև 1939 թվականը: 1935 թվականին Գոլլանը մասնակցում է կոմունիստական ինտերնացիոնալի VII կոնգրեսի և երիտասարդության կոմունիստական ինտերնացիոնալի (ԿԻՄ) VI կոնգրեսի աշխատանքին, ընտրվում է ԿԻՄ-ի գործադիր կոմիտեի անդամ: Անգլիական կոմերիտմիությունն այդ տարիներին խոշոր հաջողությունների հասավ բոլոր երիտասարդական կազմակերպություններն ու արհմիությունները ֆաշիստական վտանգի դեմ մղված պայքարում համախմբելու ուղղությամբ, պատերազմը կանխելու, ինչպես նաև 30-ական թվականների ճգնաժամից հետո բացառիկ ծանր դրության մեջ ընկած բանվորների տնտեսական ու սոցիալական կենսապահանջները իրականացնելու բնագավառում:

Կոմերիտմիության նախաձեռնությամբ առաջադրված «երիտասարդական պառլամենտը» և «երիտասարդական խարտիա» լոզունգները աշխատավոր երիտասարդությանը միավորելու հաջող ձև դարձան: Որպեսզի օգնի երիտասարդական շարժմանը ճիշտ կողմնորոշվելու, Ջ. Գոլլանը 1937 թվականին գրեց «Երիտասարդությունը անգլիական արդյունաբերության մեջ» գիրքը: Այդ գրքում նա մանրամասն վերլուծեց երիտասարդության աշխատանքի ու աշխատավարձի պայմանները ձեռնարկություններում, ուշադրություն դարձնելով այն բանի վրա, որ երիտասարդ բանվորները ամենևին հնարավորություն չունեն կրթություն ստանալու: Իր գրքում Գոլլանը աշխատավոր երիտասարդության հիմնական պահանջները ամփոփեց երիտասարդության իրավունքների, այսպես կոչված, խարտիայի ձևով, որով ղեկավարվում էին կոմերիտմիությունն ու մյուս երիտասարդական կազմակերպությունները:



1939 թվականին ընկ. Գոլլանը դառնում է Հյուսիս-արևելյան ծովափնյա շրջանների պարտիական կազմակերպության քարտուղար, իսկ 1941 թվականին՝ կոմունիստական պարտիայի Շոտլանդական կոմիտեի քարտուղար: 1941 թվականին նրան ընտրում են Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի գործադիր կոմիտեի կազմում և գործկոմի քաղաքական կոմիտեում: Այդ ժամանակաշրջանում նա մասնակցում է «Շոտլանդիայի ժողովրդական պլան»-ի մշակմանը, որը հրատարակվեց 1944 թվականին կոմպարտիայի Շոտլանդական կոմիտեի կողմից. հանդես է գալիս բազմաթիվ հոդվածներով ու բրոշյուրներով Շոտլանդիայի բանվորական շարժման պրոբլեմների վերաբերյալ:

1947 թվականին Ջ. Գոլլանը գալիս է Լոնդոն և զբաղեցնում պարտիայի գլխավոր քարտուղար Հարրի Պոլիտի օգնականի պոստը: 1949—1954 թթ. նա «Դեյլի Ուորկեր» թերթի խմբագրի տեղակալն էր, միաժամանակ կատարում էր պարտիայի քաղաքական կոմիտեի մի շարք պատաս-

խանատու հանձնարարություններ: Պարտիայի XXII համագումարում (1952 թ.) Գոլլանը հանդես եկավ հիմնական քաղաքական զեկուցումներից մեկով, որը դրվեց «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ» պարտիական ծրագրի երկրորդ նախագծի հիմքում:

1954 թ. Ջ. Գոլլանը հրատարակեց «Մեծ Բրիտանիայի քաղաքական սիստեմը» աշխատությունը, որի մեջ խոր վերլուծության ենթարկեց անգլիական մոնոպոլիստական կապիտալի պետական մեխանիզմը և բուրժուական քաղաքական պարտիաների, այդ թվում «լոյալ օպոզիցիայի» (լեյբորիստական պարտիայի) ֆունկցիաները: Նա ցույց տվեց, որ բրիտանական ժողովրդի առաջադիմության գրավականը կոմունիստական պարտիայի ծրագրում առաջ քաշված պահանջների կատարումն է: Գոլլանի դիրքը նշանակալի չափով օգնեց ցրելու այն «կոնստիտուցիոն» պատրանքները, որոնք տարածված էին անգլիական սոցիալիստների շրջանում:

1954—1956 թթ. Գոլլանը գլխավորում էր պարտիայի կազմակերպական աշխատանքը՝ լինելով գործկոմի կազմակերպական բաժնի ազգային կազմակերպիչն ու ղեկավարը: 1956 թ. նա ընտրվեց պարտիայի գործկոմի գլխավոր քարտուղար: 1956—1957 թթ. Մեծ Բրիտանիայի կոմպարտիան լուրջ դժվարություններ ապրեց. Հունգարիայում կատարված հակառևոլյուցիոն խռովության կապակցությամբ պարտիայի վրա ռևիզիոնիստական գրոհը որոշ չափով կրճատեց պարտիայի շարքերը: Սակայն ղեկավարության մարքսիստական-լենինյան հաստատուն դիրքի շնորհիվ պարտիան հաղթահարեց ստեղծված դրությունը: Պարտիան լրացրեց իր շարքերի կորուստները և ներկայումս հաջողությամբ լուծում է անդամների քանակն ավելացնելու խնդիրը: Պարտիայի ազդեցությունը բանվոր դասակարգի և հասարակության առաջադիմական խավերի վրա անշեղորեն աճում է:

Ջոն Գոլլանը այն պարտիական հանձնաժողովի նախագահն էր, որը մշակել է «Բրիտանիայի ուղին դեպի սոցիալիզմ» ծրագրի նոր նախագիծը, որ ընդունվեց 1958 թ.: 1957 թ. մինչև 1962 թ. նա խմբագրել է կոմպարտիայի տեսական և դիսկուսիոն օրգան «Մարքսիզմ թուդեյ» ժուռնալը: Նրա բազմաթիվ բրոշյուրներից Անգլիայում և արտասահմանում մեծ հռչակ են վայելում՝ «Պայքարի երեսուն տարիներ» (1950 թ.) — կոմպարտիայի ստեղծման և զարգացման պատմության մասին «Ո՞ր ուղին է տանում դեպի կոմունիզմ» (1948 թ.) — պատասխան լեյբորիստական պարտիայի աջ թևի լիդերի ելույթին, «Հեյգկել թե սոցիալիզմ» (1960 թ.) — նույն թեմայով:

Ջ. Գոլլանը գլխավորել է Մեծ Բրիտանիայի կոմունիստական պարտիայի պատվիրակությունը կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների Մոսկվայի 1957 և 1960 թթ. միջազգային խորհրդակցություններում: Անգլիայի կոմունիստական պարտիայի անունից ողջույնի խոսքով հանդես գալով ՍՄԿԿ XXII համագումարում, նա հիացմունքով խոսեց ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության հաջողությունների մասին:

«Լինել ձեզ հետ միասին և լսել կոմունիստական հասարակարգի հիասքանչ պլանի քննարկումը, — հայտարարեց նա, — դա խորապես հուզող իրադարձություն է մեզ՝ կապիտալիզմի հնագույն երկրից եկածներիս համար: Մարդկության ամբողջ պատմության ընթացքում հնարավոր չի եղել կենսագործել այդպիսի պլան: Աշխատավորների համար առատության հեռանկարը երբեք այնքան պարզ, ցայտուն և մոտիկ չի եղել, որքան այն երվում է այսօր այս դահլիճում: Ձեր համագումարը մեզ համար նշանավորում է նոր դարաշրջանի սկիզբը: Որպիսի՜ հույսերով, որպիսի՜ ոգևորությամբ է դա լցնում բոլոր աշխատավորների սրտերը: Համագումարը աշխարհի բոլոր երկրներում նոր ուժ է հաղորդում կոմունիստներին ու սոցիալիստներին, որոնք ավելի մեծ եռանդով, քան երբևէ, կպայքարեն հենց այդ նպատակի կենսագործման համար»:

---

# ՅԱՆՈՇ ԿԱԴԱՐ

Հունգարիայի սոցիալիստական բանվորական պարտիայի կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար, Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարության նախագահ Յանոշ Կադարը ծնվել է 1912 թ. մայիսի 26-ին, բատրակի ընտանիքում: Դպրոցում սովորելու համար նա ստիպված է լինում տարածել առավոտյան փոստը, աշխատել որպես օժանդակ բանվոր, մեխանիկի աշակերտ: Դպրոցն ավարտելուց հետո Յա. Կադարն աշխատում է շատ ձեռնարկություններում որպես մետաղագործ բանվոր:

Արդեն 17 տարեկան հասակից Յա. Կադարը մասնակցում է բանվորական շարժմանը՝ սկզբում որպես մարտական ռևոլյուցիոն տրադիցիաներով հայտնի հունգարական մետաղագործների երիտասարդական կազմակերպության անդամ, իսկ 1931 թվականից՝ որպես Բանվորական երիտասարդության կոմունիստական միության անդամ: Յա. Կադարն իրեն դրսևորել է որպես հիանալի կազմակերպիչ, բանվոր դասակարգի գործի վճռական և անդրդվելի մարտիկ: 1932 թվականին, լինելով բանվորական երիտասարդության կոմունիստական միության քարտուղար, նա ընդունվում է կոմունիստական



պարտիայի շարքերը: Խորտիական-ֆաշիստական ոստիկանությունը նրա նկատմամբ հսկողություն է սահմանում. սկսած 1931 թվականից ընդհուպ մինչև երկրի ազատագրումը՝ մինչև 1945 թվականը, Յա. Կադարը ոստիկանության ամենախիստ հսկողության տակ էր: Նա բազմիցս ձերբակալվել և բանտարկվել է:

Որպես անլեգալ կոմունիստական պարտիայի կենտկոմի անդամ, Յա. Կադարը մեծ աշխատանք է տանում գերմանական ֆաշիստների և նրանց խորտիական-սալաշիստական հանցակիցների դեմ դիմադրության ազգային շարժումը



կազմակերպելու ուղղությամբ, մասնակցում է անլեգալ հրատարակություններին: 1944 թ. մարտից, երբ ֆաշիստական զորքերը ամբողջովին օկուպացրել էին Հունգարիան, Յա. Կադարի անձնավորությամբ, խորտիական ոստիկանությունից բացի հետաքրքրվում էր նաև գեստապոն: Նա ձերբակալվեց: Բայց, չնայած այն գազանային տանջանքներին, որոնց ենթարկվեց նա գեստապոյի զնդաններում, ֆաշիստները չկարողացան նրան ընկճել: Վերջիվերջո նրան հաջողվեց փախչել:

Ֆաշիզմից Հունգարիայի ազատագրման առաջին օրերից Յա. Կադարը մարտական պոստում է: Նա ակտիվ մասնակցում է Բուդապեշտի ժողովրդական միլիցիայի կազմակերպմանը, լիակատար անվտանգության ու հասարակական կարգի վերականգնմանը ազատագրված մայրաքաղաքում: Որոշ ժամանակ անց նա գլխավորում է Բուդապեշտի պարտիական կազմակերպությունը՝ կոմպարտիայի ամենախոշոր կազմակերպությունը, իսկ այնուհետև նշանակվում ներքին գործերի մինիստր: Հունգարիայի կոմունիստական պարտիայի III համագումարը Յա. Կադարին ընտրեց Հունգարիայի ԿՊ Կենտկոմի գլխավոր քարտուղարի տեղակալ:

Ռակոշիի անձի պաշտամունքի ժամանակաշրջանում Յա. Կադարը կեղծ մեղադրանքների հիման վրա կալանավորվեց և դատապարտվեց բանտարկության: Ռեաբիլիտացիայից հետո նա նորից պարտիական աշխատանքի է անցնում սկզբում որպես Բուդապեշտի, արդյունաբերական գլխավոր շրջաններից մեկի՝ XIII շրջանի պարտիական կոմիտեի առաջին քարտուղար, այնուհետև՝ որպես պարտիայի Պեշտի մարզկոմի քարտուղար: 1956 թ. հուլիսին նա ընտրվում է Հունգարիայի աշխատավորների պարտիայի կենտկոմի քաղբյուրոյի անդամ և կենտկոմի քարտուղար:

1956 թ. նոյեմբերի առաջին օրերին Յա. Կադարը հանդես եկավ պարտիայի և ժողովրդի գործին դավաճանած Իմրե Նագի կառավարության հետ կապերը խզելու օգտին և դարձավ Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարության ստեղծման նախաձեռնողը: Այդ ժամանակից սկսած Յա. Կադարը գլխավորում է Հունգարական սոցիալիստական բանվորական պարտիան: Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարության կազմակերպումից սկսած Յա. Կադարը հանդիսանում է նրա մշտական անդամը՝ սկզբում որպես Մինիստրների խորհրդի նախագահ, այնուհետև որպես պետական մինիստր: 1961 թ. սեպտեմբերից Յա. Կադարը կրկին Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարության նախագահն է:

Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարությունը՝ Յա. Կադարի գլխավորությամբ, բացառիկ դժվարին պայմաններում հաջողությամբ կատարեց հակառևոլյուցիոն խռովության հետևանքները հաղթահարելու կարևորագույն խնդիրը: Հետագայում, հանդես գալով նախընտրական միտինգում, Յա. Կադարը այն ժամանակաշրջանի մասին ասել է. «Հազիվ թե երբևէ գոյություն է ունեցել հունգարական այնպիսի կառավարություն, որն իր գործունեությունն սկսեր ավելի ծանր իրադրության մեջ... Խորտիական նիվաղներն ու ֆրեական աշխարհի տականքներից դուրս եկած մարդասպանները մոլեգնում էին փողոցներում, կործանելով և հրկիզելով ամեն ինչ, սպանելով հայրենիքի հավատարիմ զավակներին... Բուրժուական հակառևոլյուցիան, պատերավոր արտահայտած, արդեն տուն էր մտել. պատերազմը կանգնած էր շեմին: Բուրժուական հակառևոլյուցիան արդեն ժողովրդական ռեսպուբլիկայի հոգեհանգիստն էր կատարում... Մենք, սակայն, չվախեցանք...»:

Հունգարական սոցիալիստական բանվորական պարտիան և նրա Կենտրոնական կոմիտեն, որին գլխավորում էր Յա. Կադարը, սկզբունքային հետևողականությամբ ջախջախեցին հակառևոլյուցիայի ուժերը և մերկացրին ռևիզիոնիստներին:

Պարտիան ասպարեզից հեռացրեց Ռակոշիի կլիկը, որը, չարաշահելով իշխանությունը, ստեղծել էր մարքսիզմ-լենինիզմին խորթ անհատի պաշտամունք, դրանով իսկ մեծ վնաս պատճառելով հունգարական ժողովրդին: Լիովին վերականգնըվեցին պարտիական կյանքի լենինյան նորմերը:

ՀՍԲՊ-ի և Ռևոլյուցիոն բանվորա-գյուղացիական կառավարության ճիշտ քաղաքականության շնորհիվ Հունգարիայում ամրապնդվեց բանվորների և գյուղացիների դաշինքը, բուռն զարգացավ կոոպերատիվ շարժումը: Սոցիալիստական ռևոլյուցիան հասավ նոր էտապի, երբ արդյունաբերության հետ միասին սոցիալիստական արտադրական հարաբերությունները իշխող դարձան նաև գյուղատնտեսության մեջ.

1961 թ. նոյեմբերին ընկեր Կադարը գլխավորում էր ՀՍԲՊ-ի պատվիրակությունը ՍՄԿՊ XXII համագումարում: Համագումարում ունեցած իր ելույթում նա ընդգծեց, որ յուրաքանչյուր կոմունիստ, հունգարական բոլոր ազնիվ աշխատավորները, որոնց համար թանկ են խաղաղության և սոցիալիզմի շահերը, լիովին հավանություն են տալիս Սովետական Միության կոմունիստական պարտիայի գլխավոր գծին: «Մենք համոզված ենք,—ասաց Յա. Կադարը,—որ միջազգային ամբողջ կոմունիստական շարժմանը նոր վիթխարի ուժ է տալիս այն փաստը, որ XXII համագումարը հաստատում և անշեղորեն շարունակում է ՍՄԿՊ անգնահատելի նշանակություն ունեցող XX համագումարի գիծը... Հունգարական կոմունիստների և մեր ժողովրդի անունից ես շնորհակալություն եմ հայտնում Սովետական Միության կոմունիստական պարտիայի ղեկավարությանը՝ ընկեր Խրուշչովի գլխավորությամբ, որն այսպիսի անդրդվելի արիությամբ, սկզբունքայնությամբ վերջին տարիներս պայքար է մղել հանուն մեծ Լենինի գաղափարական-քաղաքական ժառանգության լիակատար հաղթանակի, ընդդեմ անհատի պաշտամունքի և նրա բոլոր վնասակար հետևանքների»:

Որպես սոցիալիստական Հունգարիայի կառավարության ղեկավար Յա. Կադարը անշեղորեն կիրառում է խաղաղության և խաղաղ գոյակցության քաղաքականություն: Հանդես գալով ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XV սեսիայում, որտեղ նա գլխավորում էր հունգարական պատվիրակությունը, Յա. Կադարը ասաց. «Ինչպես կարող էր պատահել, որ որոշ երկրների ղեկավարներ այդքան շուտ մոռացան զոհերի, պատմության դասերի մասին, արևմտագերմանական միլիտարիզմի մնացորդները լիկվիդացնելու վերաբերյալ հանդիսավոր հավաստիացումների և այդ նպատակով կնքված պայմանագրերի մասին, էլ արդեն չխոսելով մյուս ժողովուրդների անսահման տառապանքների ու զոհերի մասին. մի՞թե այդքան շատ ժամանակ է անցել այն պահից, երբ արյունահեղ պատերազմի ժամանակ հարյուր հազարավոր ֆրանսիական, անգլիական և ամերիկյան զինվորներ զոհվեցին գերմանական իմպերիալիզմի դեմ մղվող մարտերում. ո՛չ, դա այնքան էլ վաղուց չէր: Այրիները, որբերը, պատերազմի հաշմանդամները դեռ կենդանի են, և ժողովուրդները, մասնավորապես հունգարական ժողովուրդը, ոչինչ չեն մոռացել: Ընդհակառակը, նրանք պահանջում են վճռականապես սանձահարել արևմտագերմանական իմպերիալիզմի վերածնունդը, վերացնել երկրորդ համաշխարհային պատերազմի մնացորդները, հաշտության պայմանագիր կնքել գերմանական երկու պետությունների հետ... Հունգարական ժողովրդական ռեսպուբլիկայի կառավարությունը... լիովին պաշտպանում է Սովետական Միության առաջարկությունը ընդհանուր և լիակատար զինաթափման մասին, որ ներկայացված է ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեայի XIV սեսիայում»:

Պարտիայի և ամբողջ ժողովրդի կյանքում մեծ իրադարձություն էր Հունգարական սոցիալիստական բանվորական պարտիայի VIII համագումարը: Պարտիայի և ժողովրդի միասնությունը երբեք այդպես հաստատուն չի եղել, ինչպես այժմ: Հաշվետվություն տալով պարտիայի ու ժողովրդի առաջ, Կենտրոնական կոմիտեն հայտարարեց, որ նա ճշտությամբ հետևել է այն քաղաքական գծին, որ նախանշել էր պարտիայի VII համագումարը: Այդ ժամանակի ընթացքում հունգարական ժողովուրդը հասել է պատմական հաջողությունների՝ ավարտվել է գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցումը, էլ ավելի են զարգացել էկոնոմիկան և կուլտուրան, բարձրացել է աշխատավորների կենսամակարդակը:

Կատարելով իր վրա դրված պատմական դերը, Հունգարական սոցիալիստական բանվորական պարտիան հունգարական բանվոր դասակարգին, ամբողջ ժողովրդին կառաջնորդի դեպի սոցիալիստական ռևոլյուցիայի լիակատար հաղթանակը, դեպի կոմունիստական հասարակարգի կառուցումը: Այդ խնդրի կատարման գործին ուղղություն է տալիս Հունգարիայի սոցիալիստական բանվորական պարտիայի կենտրոնական կոմիտեն, ժողովրդի, հունգարական բանվոր դասակարգի փորձված ղեկավար ընկեր Յանոշ Կադարի գլխավորությամբ:



# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## Ազատության ճանապարհով

1. ՓՈԹՈՐԿԱԼԻՑ ՏԱՐԻՆԵՐ
2. ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ
3. ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԴԻՐՔԵՐԸ
4. ԳԱՂՈՒԹԱՏԵՐԵՐԻ ԴԱՎԱԴՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԻԱՑՅԱԼ ՊԱՅՔԱՐԸ
5. ԵՐԻՏԱՍԱՐԴ ԱՖՐԻԿԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՆ ԿԱՐԻՔ Է ԶԳՈՒՄ

*ՀԵՌՈՒ չէ այն օրը, երբ գիտությունն ամենաստույգ կերպով կհաշվի, թե մարդկությանն ինչ է նստել գաղութատիրությունը: Եվ այն ժամանակ կեղեքված ժողովուրդները կներկայացնեն իրենց արդարադատ հաշիվը՝ Աֆրիկայի և Ասիայի երկրների բազմաթիվ սերունդների միլիոնավոր զոհերի արյան հաշիվը: Չէ՞ որ գաղտնիք չէ, որ գաղութային կայսրությունններն առաջացել են հարյուր միլիոնավոր մարդկանց ոսկորների վրա: Շատ ժողովուրդներ բնաջնջվել են ամբողջովին, իսկ կենդանի մնացածներին վիճակվել է ստրուկների խղճուկ կյանք: Նրանց հաշվին և նրանց ստրկական աշխատանքով են ստեղծվել գաղութային «մեծ» տերությունների հարստությունն ու հզորությունը:*

*Բայց ահա եկել է հաշվեհարդարի ժամը: Ստրկացված ժողովուրդները զենք են վերցնում և իրենք են վճռում իրենց բախտը: Գաղութատիրությունը դեպի կործանում է գնում ամենուրեք: Մեկը մյուսի հետևից ընկնում են Աֆրիկայի մայր ցամաքում գտնվող նրա ամրոցները: Մեր դարի 60-ական թվականները պատմության մեջ կմտնեն որպես Աֆրիկայի բազմամիլիոն ժողովրդի ազատագրման տասնամյակ: Մեր օրերում Աֆրիկան իրավամբ կոչվում է ալեկոծվող երկրամաս: Մեր աչքի առջև Աֆրիկայի ժողովուրդները քաղաքական անկախություն են նվաճում: Տարեցտարի աճում է ազատ երկրների թիվը այդ մայր ցամաքում:*

*Դրանում համոզվելու համար բավական է վերհիշել վերջին 10—15 տարվա իրադարձությունները և Աֆրիկայի 1950 թվականի քարտեզը համեմատել 1963 թվականի քարտեզի հետ: Պատմական այդ կարճ ժամանակամիջոցում Աֆրիկան անճանաչելի կերպով փոխել է իր քաղաքական դեմքը: Եթե 1950 թվականին ամբողջ Աֆրիկայում գտնվող 50 երկրների մեջ կային միայն 4 անկախ պետություններ (Եգիպտոս, Եթովպիա, Լիբերիա և Հարավ-Աֆրիկյան Միություն), ապա այժմ այնտեղ անկախություն են նվաճել արդեն 32 պետություններ (չհաշված Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկան): Միայն 1960 թվականին, որը պատմության մեջ մտավ որպես Աֆրիկայի ազատագրման տարի, հռչակվեց 17 նախկին գաղութների անկախությունը: Այդ թվականի ամենախոշոր իրադարձություններից մեկն այն էր, որ անկախություն նվաճեց անգլիական Նիգերիա գաղութը՝ աշխարհում վեր-*

ջին ամենամեծ գաղութը։ Նիգերիացիները 40 միլիոն են, այդ կազմում է Աֆրիկայի բնակչության 15 տոկոսը։

Արևադարձային Աֆրիկայում գաղութային սիստեմի քայքայումը սկսվեց դեռ 1957 թվականին, երբ Գանան ստացավ դոմինիոնի ստատուս։ Առաջին ճեղքը բացելով գաղութատիրության սիստեմում և դրանով իսկ օրինակ ցույց տալով Աֆրիկայի մյուս ժողովուրդներին, Գանան իր առջև խնդիր դրեց ընդլայնել այդ ճեղքը, օգնել մայր ցամաքի մյուս բոլոր ժողովուրդներին անկախության համար մղած նրանց պայքարում։ Գանայի պրեմիեր մինիստր, իսկ այժմ պրեզիդենտ Քվամե Նքրումայի նախաձեռնությամբ 1958 թվականին կայացան Աֆրիկայի անկախ երկրների և ապա Աֆրիկայի ժողովուրդների առաջին կոնֆերանսները, որոնց նշանակությունը Աֆրիկայի ժողովուրդների ազատագրական պայքարի համար անչափ մեծ է։

Մի երկու տասնամյակ առաջ հազիվ թե հնարավոր լիներ կանխատեսել, թե Աֆրիկայի մայր ցամաքը կարճ ժամանակից հետո այսքան սուր հետաքրքրություն կհարուցի ամբողջ աշխարհում և կնշվի գաղութատիրության ու իմպերիալիզմի դեմ պայքարող Աֆրիկայի ժողովուրդների հետ համերաշխության օրը։

Համաաֆրիկյան առաջին կոնֆերանսը մի արտակարգ իրադարձություն էր։ Չէ՞ որ մայր ցամաքի մեծ մասն այն ժամանակ դեռևս գտնվում էր գաղութատերերի կրնկի տակ։ Մատների վրա կարելի էր հաշվել անկախ պետությունները։ Նրանց թիվը ընդամենը ինն էր՝ Գանա, Գվինեա, Լիբերիա, Լիբիա, Մարոկկո, ՄԱՌ, Սուդան, Թունիս և Եթովպիա։

Կոնֆերանսը հզոր խթան հանդիսացավ Աֆրիկայի տարկացված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հետագա զարգացման համար։ Կոնֆերանսին հաջորդած տարիները կարելի է անվանել «փոթորկի և գրոհի» տարիներ, որոնք նշանավորվեցին մայր ցամաքի մեծ մասի ազատագրումով գաղութային տիրապետությունից։ Պատմությունը դեռևս չէր տեսել իրադարձությունների այդպիսի բուռն ընթացք, քաղաքական փոփոխությունների այդպիսի սրընթացություն այնպիսի հսկայական մայր ցամաքի վրա, որն իր մեծությամբ երեք անգամ գերազանցում է Եվրոպային։

1960 թվականի վերջերին դադարեց ֆրանսիական գաղութային կայսրության անփառունակ գոյությունը, անկախություն նվաճեց բելգիական նախկին գաղութ Կոնգոն, որի տերիտորիան 80 անգամ մեծ է Բելգիայից։ 1961 թվականին սկսվեց «բրիտանական» Արևելյան Աֆրիկայի հսկայական գաղութային ղանգվածի քայքայումը։ Անկախություն ձեռք բերեց նախկինում խընամակալության տակ գտնվող Տանգանիկան. հաջորդ՝ 1962 թվականին այդ նույն շրջանում գաղութային լծից ազատագրվեց Ուգանդան։ Գաղութատիրությանը հզոր հարված հասցրեց Ալժիրի ժողովրդի հաղթանակը ֆրանսիական բանակի դեմ մղած յոթնամյա հերոսական պայքարում։ Այսպիսով, չորս տարվա ընթացքում (1958—1962 թթ.) Աֆրիկայի մայր ցամաքի 23 երկրներ վերջ տվին գաղութային լծին և թևակոխեցին ինքնուրույն զարգացման ուղին։

Աֆրիկայի ներկայիս քարտեզը նախկին գաղութների ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի և ազգային-գաղութային պատերազմների հաջողությունների վառ վկայությունն է։ Գաղտնիք չէ, որ Աֆրիկայի երկրների ու տերիտորիայի 70 տոկոսն արդեն անկախություն և ազատություն է նվաճել։ Մայր ցամաքի անկախ պետություններն այժմ զբաղեցնում են 25 միլիոն քառակուսի կիլոմետր տարածություն՝ Աֆրիկայի ամբողջ տերիտորիայի չորս հինգերորդական մասը։ Նրանց բնակչությունը կազմում է ավելի քան 220 միլիոն մարդ՝ Աֆրիկայի ամբողջ բնակչության մոտավորապես ինը տասներորդը։

Այդ վիթխարի պատմական մի տեղաշարժ է, որը ցույց է տալիս, թե գաղութակալության նեխված սիստեմը որքան խորթ է մեր դարաշրջանի ոգուն, մարդկային հասարակության արմատական վերափոխությունների այն դարաշրջանին, որի սկիզբը դրել է Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիան։

## 2

ԱԶԱՏՈՒԹՅՈՒՆ և անկախություն նվաճած ժողովուրդներն Աֆրիկայում ձգտում են ստեղծել ու զարգացնել իրենց ազգային էկոնոմիկան, իրենց ինքնատիպ կուլտուրան։ Արտահայտելով արդիականության կենսական պահանջները, իրենց ժողովուրդների ակնկալություններն ու հույսերը, Աֆրիկայի առաջադեմ ուժերն ընթանում են ինքնուրույն զարգացման ուղիով։

Այս կապակցությամբ առաջին պլանն է մղվում տեղական ազգային կադրեր պատրաստելու պրոբլեմը երկրի պետական ապարատի ու էկոնոմիկայի կառավարման համար։ Ազգային կադրերի պատրաստման հարցը առավել մեծ նշանակություն է ձեռք բերում այն առումով, որ մի շարք երկրների առաջադեմ հասարակայնությունը, ինչպես, օրինակ, Գանայում, Գվինեայում, Մալիում և այլուր հաստատակամորեն որոնում են զարգացման նոր, ոչ-կապիտալիստական ուղիներ։

Բայց այդ խնդիրը բավական բարդ է այն պատճառով, որ Աֆրիկայի երիտասարդ պետությունները շատ ծանր ժառանգություն են ստացել գաղութատիրությունից։ Չէ՞ որ գաղութատերերը տասնամյակներ շարունակ կողոպտել են այդ երկրների տնտեսական ու նյութական հարստությունները, ոչնչացրել աֆրիկյան ժողովուրդների լավագույն մարդկանց ու հին կուլտուրայի հուշարձանները, սպանել են մարդկային ռեսուրսները, բնիկներին դարձնելով ստրուկների մի խավար մասսա։

Աֆրիկայի չափահաս բնակչության մեջ անգրագետները կազմում են միջին հաշվով 90 տոկոս։ Մասնագետների հաշվարկումների համաձայն ներկայումս Աֆրիկայի երեխաների միայն 18 տոկոսը հնարավորություն ունի տարրական և միջնակարգ դպրոց հաճախելու։ Դեռևս Աֆրիկայի շատ երկրներում դասավանդումը կատարվում է Լոնդոնում, Փարիզում և Բրյուսելում կազմված ծրագրերով ու դասագրքերով։

1960—1961 թվականներին հրավիրվեցին հատուկ կոնֆերանսներ Աֆրիկայի ժողովրդական կրթության մի շարք պրոբլեմներ լուծելու համար։ Աֆրիկայի 35 երկրների պատգամավորները, ինչպես նաև սովետական պատվիրակությունը, խոսում էին դպրոցական ծրագրերի փոփոխման և լուսավորության գործի «աֆրիկանացման» անհրաժեշտության մասին։ Պարզելով մայր ցամաքի երկրների կարիքները, պատգամավորները մշակեցին և ընդունեցին Աֆրիկայում լուսավորության գործի զարգացման հնգամյա (1961—1965 թթ.) և քսանամյա (1961—1980 թթ.) պլաններ, որոնք բացում են ժողովրդական կրթության ծավալման մեծ հեռանկարներ։ Բավա-

# ԱՖՐԻԿԱՆ ԱՅՍՕՐ

ՊԱՅՄԱՆԱԿԱՆ ՆՇԱՆՆԵՐ

Անկախ պետություններ։

6 III 1957 Անկախության հռչակման տարեթիվը։

Գաղութներ և կախյալ տերիտորիաներ։

Հարավ-Աֆրիկյան ռեսպուբլիկա։ Այդ ռեսպուբլիկայում մեծամասնություն կազմող աֆրիկացիները զրկված են քաղաքացիական տարրական իրավունքներից։

կան է ասել, որ քսանամյակի վերջերին գրեթե բոլոր ուսանողները (90 տոկոսը) իրենց կրթությունը կստանան Աֆրիկայի համալսարաններում: Այժմ դրանցում սովորում է ուսանողների թվի կեսից պակասը:

Աֆրիկայի ժողովուրդները տոգորված են իրենց երկրների էկոնոմիկան և կուլտուրան զարգացնելու մեծ ձգտումներով: Մայր ցամաքի առաջավոր հասարակայնությունն իր հայացքն ուղղել է դեպի Սովետական Միությունը և սոցիալիզմի մյուս երկրները, որոնք ռեկորդային կարճ ժամանակամիջոցում վերջ տալով անգրագիտությանը, աննախընթաց մակարդակի վրա դրեցին կրթության գործը:

Աֆրիկացիները բարձր են գնահատել ՍՍՌՄ-ի այնպիսի միջոցառումներ, ինչպիսիք են պոլիտեխնիկական խոշոր ինստիտուտի կառուցումը Գվինեայում, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսուցման խոշոր կենտրոնի ստեղծումը Մալիում, տեխնիկական դպրոցի կառուցումը Բահր-Դարում (Եթովպիա), որտեղ կսովորեն 1000 հոգի, հարյուրավոր աֆրիկացիների սովետական բուհերն ընդունելը, ինչպես նաև շինարարության, լուսավորության, բժշկության գծով սովետական բարձրորակ աշխատողների գործուղումը Աֆրիկա: Վերջին ժամանակներս սովետական կառավարությունը որոշել է 235 հազար ռուբլի մուծել կրթության բնագավառում Աֆրիկայի երկրներին ֆինանսական օգնություն ցույց տալու համար 1:

Աֆրիկայի ազատագրված երկրներից շատերը զգալի հաջողություն են ձեռք բերել էկոնոմիկայի բնագավառում: Ուշագրավ է, որ ժողովրդական տնտեսության պետական սեկտորը Գանայում, Գվինեայում և այլ երկրներում հիմնական տեղ է գրավում: Այդ երկրներում առաջին քայլերն են արվում էկոնոմիկայի հիմնական ճյուղերի ազգայնացման ուղղությամբ: ՄԱՌ-ում ազգայնացման վերաբերյալ դեկրետի ընդունումից հետո (1961 թվականի հուլիս) գրեթե ամբողջ խոշոր արդյունաբերությունն անցավ պետության ձեռքը:

Գվինեայում, Նիգերիայում, Գանայում պետական սեկտորի հիմքը կազմեցին ազգայնացված կամ պետության ետ գնած օտարերկրյա ձեռնարկությունները: Դրա հետ մեկտեղ, այդ երկրներում մեծ դեր են խաղում նաև կոոպերատիվները: 1963 թվականի սկզբներին Գվինեական ռեսպուբլիկայում արդեն կային 260 կոոպերատիվներ, որոնք կոչված են արգելելու գյուղական բուրժուազիայի աճին: Դեռ ավելին, ռեսպուբլիկայի եռամյա պլանով նախատեսվում է վերացնել գյուղական բուրժուազիային, իսկ բոլոր գյուղացիներին միավորել կոոպերատիվներում, որոնք իրենք պետք է կազմակերպեն գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ու վաճառահանումը:

1962 թվականի վերջերին Գանայում կային 85 կոոպերատիվներ, որոնցից 70-ն զբաղված էին կաուչուկի արտադրությամբ: Երկրի գյուղատնտեսության զարգացման ծրագրի (1962—1967 թթ.) համաձայն կոոպերատիվների թիվը կհասցվի 1000-ի, որոնց մշակած հողատարածությունը կկազմի 6 միլիոն ակր: Մալիի ռեսպուբլիկայում, ինչպես նաև Տանգանիկայում ստեղծվում են արտադրական միավորումներ, կոլեկտիվ դաշտեր, որոնք դառնալու են կոոպերատիվների անդամների եկամուտների հիմնական աղբյուրները:

Բայց դրանք միայն առաջին քայլերն են, Աֆրիկայի սովերեն պետությունների ժողովրդական տնտեսությունն զգում է նոր գործարանների, ֆաբրիկաների և այլ ձեռնարկությունների սուր կարիքը: Այսպես, Մալիի ռեսպուբլիկայի առաջին հնգամյա պլանով (1961—1966 թթ.) նախատեսվում է կառուցել յուղի գործարաններ և ալրաղացներ, բամբակեղենի գործվածքների և կոշկեղենի ֆաբրիկաներ: Մալիի մամուլը նշում է, որ երկրի ինդուստրացումը իրականացվելու և վերահսկվելու է պետության կողմից:

Պետք է ասել, որ գաղութային լուծը թոթափած ոչ բոլոր երկրներն են գնում միևնույն ուղիով: Այնպիսի երկրներ, ինչպիսիք են՝ Սենեգալը, Փղոսկրի Ափը, Դագոմեան, Չադ ռեսպուբլիկան, Կամերունը, Կենտրոնական-Աֆրիկյան Ռեսպուբլիկան, Մալգաշական ռեսպուբլիկան և այլ երկրներ հետևում են զարգացման կապիտալիստական ուղուն և առայժմ գտնվում են իմպերիալիստական վերահսկողության տակ, դրան նպաստում են տեղի ռեակցիոն շրջանները և օտարերկրյա կապիտալից կախում ունեցող բուրժուազիան:

Այնուամենայնիվ, այդ երկրների ժողովուրդները ձգտում են ինքնուրույն զարգացման և իսկական ազգային անկախության:

Չնայած գաղութատիրության դեմ տարած հոյակապ հաղթանակներին և արդեն ձեռք բերած մեծ հաջողություններին, Աֆրիկան դեռևս չի ավարտել ազգային, հակաիմպերիալիստական և հակագաղութային ռևոլյուցիայի ժամանակաշրջանը: Մի շարք երկրներում (Գվինեա, Գանա, Մալիի ռեսպուբլիկա, Սուդան, Լիբիա, Սոմալի և այլն) ազգային բուրժուազիայի հետ միասին պետության ղեկավարմանը մասնակցում են դեմոկրատական ուժերը: Սակայն դրանով դեռ չի ավարտվում Աֆրիկայի ժողովուրդների պայքարը:

1 Աֆրիկայի երկրներին ֆինանսական օգնություն ցույց տալու արտակարգ ծրագիրն ընդունվել էր Յունեսկոյի XI սեսիայում:



## 3

ԵՎՐՈՊԱՑԻ առաջադեմ նկարիչներից մեկը հետևյալ կերպ է պատկերել այսօրվա Աֆրիկան՝ մի դյուցազն ուժերի մեծ լարումով փշրել է օտարերկրյա ստրկության շղթաները, բայց նրա բազուկների վրա դեռևս մնացել են գաղութային կապանքների չարաղետ օղակները:

Եվ, հիրավի, օտարերկրյա կապիտալի կապանքները դեռևս տարածված են Աֆրիկայի շուրջը: Անգլիական, ֆրանսիական, ամերիկյան, արևմտա-գերմանական, բելգիական, իտալական մոնոպոլիաները դեռևս իրենց ճիրաններում ամուր պահում են Աֆրիկայի երիտասարդ շատ երկրների էկոնոմիկան:

Իմպերիալիստներն այժմ փոխում են իրենց տակտիկան ու ստրատեգիան Աֆրիկայի նոր պետությունները իրենց ազդեցության ոլորտում պահելու համար: Այսպես, նրանք օգտագործեցին 1961 թվականին ստեղծված Աֆրիկա-Մալգաշական Միությունը (ԱՄՄ), որի մեջ մտնում են հիմնականում ֆրանսիական նախկին 13 գաղութներ: Բավական է ասել, որ Աֆրիկայի 16 երկրներ (այդ թվում ԱՄՄ-ը) այժմ գտնվում են «ընդհանուր շուկայի», այսինքն՝ եվրոպական տնտեսական միավորման ներգործության տակ:

Աֆրիկայում մեծ ակտիվություն է ցուցաբերում նաև Իտալիան: Այսպես, նավթի-մեթանի իտալական միավորումը իր գործունեությունը ծավալել է Աֆրիկայի 13 երկրներում (Լիբիա, Մարոկկո, Թունիս, ՄԱՌ, Սուդան, Սոմալի և այլն): Միայն 1959 թվականին 12 խոշորագույն իտալական մոնոպոլիաներ գրեթե 20 տոկոսով ավելացրին իրենց շահույթներն Աֆրիկայում: Եթե «Ֆիատ» ավտոմոբիլային ընկերության շահույթները 1959 թվականին Աֆրիկայում կազմում էին 19,7 միլիարդ լիրա, ապա 1961 թվականին կազմեցին 26,4 միլիարդ լիրա: 1962 թվականին Միլանում հիմնվեց Աֆրո-ասիական բանկ՝ 120 միլիոն դոլար նախնական կապիտալով: Այսպիսով, իր իմպերիալիստական էությունը հավատարիմ, իտալական պետությունն այժմ հանդես է գալիս կապիտալ արտահանողի դերում:

Չմոռանանք նաև այն «սիրո» մասին, որ տածում է Բոննը Աֆրիկայի նկատմամբ: Արևմտագերմանական մոնոպոլիաները նոր չեն սկսել իրենց էքսպանսիան Աֆրիկայի մայր ցամաքում: Դեռևս 1956 թվականին ԳՖՌ-ի կառավարող շրջաններն ստեղծել են իրենց գաղութատիրական քաղաքականության շտաբը՝ «Գերմանա-աֆրիկական ընկերությունը», որին գլխավորում է բունդեստագի նախագահ Գերստենմայերը: Բոնի կառավարության մինիստրի հետ մեկտեղ այդ ընկերության մեջ են մտել նաև Կրուպպի և Մանեսմանի միլիտարիստական կոնցեռնների ներկայացուցիչները:

Գերմանա-աֆրիկական ընկերությունն ակտիվ մասնակցում է Աֆրիկայի մայր ցամաքի նկատմամբ Բոննի տնտեսական ու գաղափարական հարձակման պլաններին: ԱՄՆ-ի մոնոպոլիաների ակտիվ մասնակցությամբ այդ ընկերությունը կոորդինացնում է մոնոպոլիստական մյուս կազմակերպությունների գործունեությունը, նպատակ ունենալով Աֆրիկայի երկրները ներքաշել «ընդհանուր շուկայի» մեջ:

Աֆրիկայի նկատմամբ վերջին տարիներս բացարիկ հետաքրքրություն է ցուցաբերում ԱՄՆ-ը: Ջ. Քենեդին իր կառավարությունը կազմելիս պետական քարտուղարի՝ Աֆրիկայի գործերով օգնականի պոստում նշանակեց իր մերձավորագույն զինակիցներից մեկին՝ Մ. Ուլյամսին: Միայն 1962 թվականի ընթացքում միստեր Ուլյամսը չորս երկարատև ճանապարհորդություններ կատարեց Աֆրիկայում:

ԱՄՆ-ը Աֆրիկան դիտում է որպես հումքի աղբյուր ու ամերիկյան ապրանքների վաճառահանման շուկա, գտնելով, թե այդ մայր ցամաքը կոչված է շատ կարևոր դեր խաղալու Ամերիկայի ապագա էկոնոմիկայում: Ամերիկացի քաղաքագետներն Աֆրիկան անվանում են «մի մայր ցամաք, որն աստված ռեզերվում է պահել»: Ներկայումս Աֆրիկայի երկրներում գործում են ամերիկյան ավելի քան 200 խոշոր մոնոպոլիստական ընկերություններ, որոնք հսկայական շահույթներ են կորզում:

Իմպերիալիստական տերությունները չեն ցանկանում հաշտվել այն մտքի հետ, որ երբևէ կարող են կորցնել անսպառ հարստությունները: Չէ՞ որ Աֆրիկայում է արդյունահանվում կապիտալիստական աշխարհի ալմաստների 98, կոբալտի՝ 73, ոսկու՝ 69, քրոմի՝ 45, մարգանեցի՝ 43, սուրմայի՝ 59, պղնձի՝ 30 տոկոսը: Ընդամենը արդյունահանվող հումքի միայն 8 տոկոսն է գործադրվում մայր ցամաքում, մնացածն արտահանվում է:

Վերջին քսան տարիների ընթացքում անգլիացիները միայն Գանայից արտահանել են 30 միլիոն կարատ ալմաստ: Մինչև վերջերս Կոնգոյում գտնվող հանքերից ստացվող ռադիումի մեկ գրամը բելգիացիները վաճառում էին 120 հազար դոլարով: Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Աֆրիկայում ԱՄՆ-ի կապիտալ ներդրումներն աճեցին ավելի քան 20 անգամ և անցան 3 միլիարդ դոլարից: Ամերիկացի էքսպերտների տվյալներով Աֆրիկայում հայտնաբերված են գրեթե 20 տեսակի ստրատեգիական հումքի հանքեր:

Ահա թե ինչու կապիտալիստական տարբեր երկրների մոնոպոլիաների միջև սուր պայքար է

մղվում Աֆրիկայի համար։ Այդ պայքարում առանձնապես աչքի են ընկնում այն հակասությունները, որ կան ԱՄՆ-ի, ԳՖՌ-ի և նախկին գաղութային երկրների՝ Անգլիայի, Ֆրանսիայի, Բելգիայի ու Պորտուգալիայի միջև, որոնցից յուրաքանչյուրը ձգտում է պահպանել իր տնտեսական դիրքերը։

4

ԱՖՐԻԿԱՅԻ շուկան նվաճելու հարցում կապիտալիստական երկրների հակասությունները չեն խանգարում նրանց՝ համատեղ զինված պայքար մղելու ազգային-ազատագրական շարժման դեմ, որն ըստ էության վտանգում է ամբողջ իմպերիալիզմի շահերը։ Հենց այս պատճառով էլ բոլոր երկրների մոնոպոլիստներն ընդհանուր լեզու են գտնում, արտակարգ միջոցների դիմելով Աֆրիկայի ժողովուրդների ազատությունը ճնշելու նպատակով։ Ահա հենց այստեղ գաղութատերերը ոչ մի բանի առջև կանգ չեն առնում, դիմելով զենքի, դավադրությունների, շանտաժի, դիվերսիաների ու տեռորի (Պատրիս Լումումբայի, Բուրունդիի պրեմիեր մինիստր Լուիս Ռվագասորեի, Տոգոյի պրեզիդենտ Սիլվանուս Օլիմպիոյի սպանությունները, Քվամե Նքրումայի նկատմամբ կատարած մահափորձերը և այլն)։

Գաղտնիք չէ, որ Անգոլայում պորտուգալացի գաղութարարների նետած ռումբերը պատրաստված են Ամերիկայում։ ԱՄՆ-ի կողմից Ֆրանսիային հանձնված ինքնաթիռները օգտագործվում էին Ալժիրի ժողովրդի դեմ մղված պատերազմում։ Արևմտյան Գերմանիայից ժամանած սպաները գլխավորում են պորտուգալացի ավազակների գործողություններն Անգոլայում։ Արևմտագերմանական զենքը Համբուրգում և Բրեմենում մեծ քանակությամբ գաղտնի բեռնվում է շոգենավերը և ուղարկվում Մոզամբիկ, Կատանգա, Հյուսիսային Ռոդեզիա, Անգոլա և այլ երկրներ։

Աֆրիկայի ազատագրված երկրների դեմ մղվող պայքարում իմպերիալիստները նոր մեթոդներ են կիրառում։ Նրանք ստեղծել են, այսպես կոչված՝ «Սպիտակ Աֆրիկա», որի կենտրոնը միլիտարիստական Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկան է։ Դրա նպատակն է եվրոպացիների տիրապետության տակ գտնվող աֆրիկյան երկրներում ստեղծել գաղութատիրության հենարան և այն հակադրել «Սև Աֆրիկային»։

Իմպերիալիստները ճարպկորեն օգտագործեցին Աֆրիկա-Մալգաշական Միությունը։ Այդ Միության և ՆԱՏՕ-ի միջև կնքված է «համատեղ պաշտպանության պակտ», որի կետերից մեկի համաձայն նախատեսված է կոլեկտիվ ինտերվենցիա իրականացնել միության այս կամ այն երկրում, եթե այնտեղ «քայքայիչ գործունեություն» կատարվի։ Դժվար չէ հասկանալ, որ «քայքայիչ գործունեություն» ասելով գաղութատերերը նկատի ունեն ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։ Իմպերիալիստական տերությունները հույս ունեն աֆրիկացիների շարժումը խեղդել հենց աֆրիկացիների ձեռքով, արգելակել երիտասարդ պետությունների իսկական ազատագրմանը։

Աֆրիկայի ժողովուրդների համար առանձնահատուկ վտանգ է ներկայացնում օտարերկրյա ռազմական բազաների առկայությունը նրանց տերիտորիայում։ ՆԱՏՕ-ի ռազմական բազաների հիմնական մասը տեղադրված է Հյուսիսային Աֆրիկայում, որտեղ ներդրված է ամերիկյան կապիտալի մեծ բաժինը և որը բացառիկ ռազմա-ստրատեգիական նշանակություն ունի։

Մարոկկոյում կան 6 ռազմա-օդային բազաներ։ Հենց այդտեղ էլ ՆԱՏՕ-ի անդամ երկրներն ունեն երկու ռազմա-ծովային բազաներ (Կասաբլանկայում և Ագադիրում)։ Լիբիայում ԱՄՆ-ը ունի 4 ռազմա-օդային բազա, որոնցից մեկը ամենախոշորն է Աֆրիկայում։ Թունիսում գտնվում է Բիզերտա, իսկ Ալժիրում՝ Ալժիր ծովային բազան։ Հյուսիսային շրջաններից բացի ռազմա-օդային ու ռազմա-ծովային բազաներ կան նաև Եթովպիայում, Քենիայում, Ուգանդայում, Լիբերիայում, ինչպես նաև՝ Կոնգոյում, Հարավ-Աֆրիկյան Ռեսպուբլիկայում, Տանգանիկայում։

Իմպերիալիստների ռազմա-քաղաքական գործունեությունն արդեն բացել է աֆրիկացիների աչքերը։ Աֆրիկայի հայրենասերները մերկացնում են գաղութատերերի ստոր քաղաքականությունը։

Աֆրիկայի ժողովուրդների ձայնը միանում է ամբողջ հակաիմպերիալիստական շարժմանը։ Ներկա էտապում գաղութատիրական պայքարի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ աֆրիկացիները հանդես են գալիս միասնաբար, ազատագրված ժողովուրդներն ամեն կերպ պաշտպանում են ազատության ու անկախության համար պայքարողներին։

Միասնության, համագործակցության և համատեղ պայքարի գաղափարը համակել է գրեթե ամբողջ մայր ցամաքը։ Դա արտահայտված է նույնիսկ Սև Աֆրիկայի ուսանողների ֆեդերացիայի էմբլեմայի վրա։ Աֆրիկայի մայր ցամաքի քարտեզի ֆոնի վրա նկարված են բազմաթիվ ձեռքեր, որոնք պահում են մեծ ճեղքեր ունեցող մի հսկայական սափոր։ Աֆրիկայի շատ երկրների համար ջուրն ամենաթանկագին գանձն է, ուստի և սափորը կյանքի սիմվոլ է այնտեղ։ Աֆրիկյան լեգենդներում պատմվում է, որ օտարերկրյա կեղեքիչները, ձգտելով ժողովուրդներին զրկել կյանքի աղբյուրից, ջարդել են սափորը։ Իրենց կյանքն ու ազատությունը պահպանելու համար բոլոր աֆրիկացիները պետք է միավորվեն և սեփական ձեռքերով ծածկեն սափորի ճեղքերը, որպեսզի պահպանեն կյանքի աղբյուրը։

Հենց կյանքն էլ թելադրել է աֆրիկացիներին միավորվել ու համատեղ հանդես գալ. այդ բխում է նաև ազատագրական պայքարի բուն պրոցեսից։

5

ՔԱՂԱՔԱԿԱՆ անկախություն նվաճած Աֆրիկայի բոլոր երիտասարդ պետությունների գլխավոր խնդիրն այժմ տնտեսական անկախության նվաճումն է, որն, ըստ էության, ազգային ու քաղաքական սուվերենության համար մղվող պայքարի շարունակությունն է։ Այդ բանը լավ են հասկանում Աֆրիկայի առաջավոր մարդիկ։ Այնպիսի պետական գործիչներ, ինչպիսիք են՝ Սեկու Տուրեն, Մոդիբո Քեյտան, Քվամե Նքրուման. նրանք բազմիցս նշել են, որ իսկական անկախությունն անհնար է առանց տնտեսական անկախության նվաճման։

Եվ, հիրավի, այժմ Աֆրիկան ամենից առաջ զգում է իր ազգային ապրանքները փոխադարձաբար ձեռնտու պայմաններով վաճառահանելու մշտական ու մեծացող շուկաների կարիքը։ Աֆրիկայի նոր ստեղծված պետությունները տեխնիկական սարքավորման ու կադրերի սուր կարիք ունեն։ Այդ երկրներին անհրաժեշտ է բարեկամական օգնություն ցույց տալ տնտեսական անկախության համար մղած նրանց պայքարում։ Իսկ գլխավորը նրանց համար այժմ այնպիսի միջազգային քաղաքական ու տնտեսական հարաբերությունների հաստատումն է, որոնք հիմնված լինեն իրավահավասարության և ներքին գործերին չմիջամտելու վրա։

Սակայն իմպերիալիստական պետություններն ընդունակ չեն այդ բանին, քանի որ իմպերիալիզմի էությունը բացառում է գաղութային ժողովուրդներին անշահախնդիր օգնություն ցույց տալու հնարավորությունը, քանի որ այդ ամբողջ սիստեմը հիմնված է գերշահույթի մրցավազքի վրա։ Այդ բանը կարող են անել միայն սոցիալիստական լագերի երկրները, որոնք տնտեսական, գիտա-տեխնիկական և բարոյական մեծ օգնություն են ցույց տալիս Աֆրիկայի ժողովուրդներին։

Աֆրիկայի շատ երկրներ արդեն բարեկամական մեծ օգնություն են ստանում Չեխոսլովակիայից, Լեհաստանից, Հունգարիայից և սոցիալիստական մյուս երկրներից։ Մալիի «Էսսոր» թերթը վերջերս հաղորդում էր, որ Կուբան Մալիի Ռեսպուբլիկային անվարձահատույց կերպով տրամադրել է շաքարի գործարանի լրիվ սարքավորում, ինչպես նաև մասնագետներ է ուղարկել շաքարեղեգնի մշակումը կազմակերպելու համար։

Անչափ մեծ է ՍՍՌՄ-ի օգնությունը Աֆրիկայի ժողովուրդներին։ Այսպես, նախնական տվյալներով Սովետական Միության օգնությամբ ՄԱՌ-ում կառուցված ձեռնարկությունների արտադրանքը կազմում է երկրի մետալուրգիական արդյունաբերության ավելի քան 30 տոկոսը, մեքենաշինության մոտ 40 տոկոսը և լեռնահանքային ու նավթային արդյունաբերության 50 տոկոսը։ ՍՍՌՄ-ը տեխնիկա-տնտեսական օգնություն է ցույց տալիս Գանայում 40 արդյունաբերական օբյեկտներ կառուցելու գործում։ Գվինեան սովետական կազմակերպությունների անմիջական օգնությամբ կառուցում է մոտ 50 շատ կարևոր ժողովրդա-տնտեսական օբյեկտներ։ Սովետա-մալիական համաձայնագրի հիման վրա նախագծային-հետախուզական աշխատանքներ են կատարվում Մալի-Գվինեա երկաթուղագծի կառուցման ասպարեզում։

Սովետական Միության և Աֆրիկայի երկրների ժողովուրդների միջև բարեկամական կապերի զարգացման նոր էտապ է Նիգերի, Դագոմեայի և Կամերունի հետ կուլտուրական համագործակցության վերաբերյալ 1963 թվականի մարտին ստորագրված համաձայնագիրը։

Աֆրիկայի երկրների հետ ՍՍՌՄ կուլտուրական կապերը լայնորեն ընդարձակվել են հատկապես վերջին տարիներին։ Սովետական Միությունը կուլտուրական փոխանակություն է կատարում Աֆրիկայի 10 պետությունների (այդ թվում Գանայի, ՄԱՌ-ի, Գվինեայի, Ալժիրի, Մարոկկոյի, Տոգոյի ու մի շարք այլ երկրների) հետ։

1963 թվականին Սովետական Միությունը կուլտուրական, ինչպես նաև գիտա-տեխնիկական կապեր կունենա Աֆրիկայի 25 երկրների հետ (դրանց թվում Բուրունդին, Փղոսկրի Ափը, Վերին Վոլտան և այլն)։ Ակտիվ կապեր են հաստատվում նաև արվեստի ու սպորտի բնագավառում։

Սովետական կառավարությունը և Սովետական Միության կոմունիստական պարտիան իրենց միջազգային քաղաքականության անկյունաքարերից մեկն են համարում եղբայրական դաշինքը գաղութային և կիսագաղութային լուծը թոթափած ժողովուրդների հետ։ Այդ դաշինքը հիմնված է համաշխարհային ազգային-ազատագրական շարժման կենսական շահերի ընդհանրության վրա։

Մեր պարտիայի նոր Ծրագրում ասվում է, որ ՍՄԿՊ-ն իր ինտերնացիոնալ պարտքն է համարում օգնել բոլոր ժողովուրդներին, այդ թվում նաև մարտնչող Աֆրիկայի ժողովուրդներին, որոնք ընթանում են ազգային անկախություն նվաճելու և գաղութատիրության խայտառակ սիստեմը ոչնչացնելու ուղիով։

---

եք հեղինակություն, ունեցել չափից ավելի դասաժամեր և, գուցե, Ձեզ համար էլ աննկատելի, Ձեր հոգեբանության մեջ տեղի են ունեցել մի շարք փոփոխություններ: Հավանաբար Ձեզ թվացել է, թե Դուք անփոխարինելի եք, թե ոչ ոք, նույնիսկ դպրոցի դիրեկտորը իրավունք չունի Ձեզ անգամ թեթևակի դիտողություն անելու... Այլապես ինչի՞ն վերագրել, որ դեռևս Վ. Ուռուշանյանից առաջ՝ Անանիկյանի դիրեկտոր եղած ժամանակ, նրանից երեք նկատողություն եք ստացել՝ դասերն անփույթ վարելու, դասերից ուշանալու, հերթապահության չներկայանալու համար:

Դրանցից բացի 1961 թվականի ապրիլի 25-ին № 104 հրամանով ժողկրթբաժնի վարիչը Ձեզ հայտարարել էր խիստ նկատողություն՝ վերջին նախազգուշացումով՝ ինչպես նախկին դիրեկտորներ Անանիկյանի, Ուռուշանյանի, այնպես էլ Մկրտչյանի հետ աննկրունք վիճաբանությունների մեջ մտնելու, ժողկրթբաժնի մեթոդիստին վիրավորելու և այլ արարքների համար:

Անսկզբունք վիճաբանություններ... Այդ հարցում Ձեզ սկսեցին մեղադրել առավելապես այն ժամանակ, երբ Ձեր դպրոցում մաթեմատիկա դասավանդել սկսեց Մոսկվայի մանկավարժական ինստիտուտի ֆիզիկո-մաթեմատիկական ֆակուլտետի շրջանավարտ Ա. Դանիելյանը: Նրան, իհարկե, ավելի շատ դասաժամեր չտվին, քան Ձեզ: Բայց բանն այն է, որ կար հատուկ որոշում՝ բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներին բարձր դասարաններում ժամեր հատկացնելու մասին: Եվ, քանի որ Դանիելյանը ուներ բարձրագույն կրթություն, ապա...

Ապա այդ Ձեզ դուր չեկավ: Նրա մուտքը դըպրոց Դուք համարեցիք ուղղակի հարված Ձեր հեղինակությանը և սկսեցիք տենդել: Ձեր ինքնասիրությունը վիրավորված էր:

Այստեղ ես ակամա հիշեցի Նար-Դոսի «Ես և նա» պատմվածքը: Դուք, իհարկե, կարդացած կլինեք այն. պատանի Անտոնիոն սիրում է Ջուլիետա անունով մի գեղեցիկ աղջկա: Բայց աղջիկը մի անգամ սաստիկ վիրավորում է տղային, նրա երեսին նետելով այն, որ ինքը «վերևում» է, իսկ Անտոնիոն՝ «ներքևում»... Անտոնիոյի ինքնասիրությունն անսահման վիրավորվում է, և նա երդվում է վրեժխնդիր լինել աղջկան ու բոլոր նրանց, ովքեր իրենց «վերևում» են համարում: Եվ ի՞նչ է անում, ինչո՞վ է լուծում այդ վրեժը, ինչպես է հագուրդ տալիս իր վիրավորված ինքնասիրությանը՝ սովորում է, կատարելագործվում, ձգտում է իր աշխատասիրությամբ և ընդունակություններով միշտ առաջ գնալ, բարձրանալ: Ակնիվ ձգտումի ու հաղթանակի մեջ է գտնում նա իր վրեժի լուծումը:

Սակայն Դուք այդպես չվարվեցիք: Դուք Ձեր հեղինակության երևակայական թշնամիներին որոշեցիք քարկոծել, հետամուտ լինել, գտնել նրանց թերությունները, որսալ նրանց սխալները և նույնիսկ վրիպումները՝ ոչ թե օգնելու, դրանք վերացնելու նպատակով, այլ, որպեսզի հայտարարեք ամենուրեք, որ նրանք էլ թերություններ, սխալներ ունեն, որ նրանք անավնիվ մարդիկ են, անհամապատասխան իրենց դիրքին:

Գուցե հարցը այդքան չբարդանար, և ո՞վ գիտե, գուցե Ձեր նամակների թղթապանակն այդքան «չհաստանար», եթե նրանք, ում մասին գրում էիք, չսկսեին Ձեր դեմ պայքարել Ձեր իսկ կենքով: Դպրոցի աշխատանքների վերաբերյալ մանր ու մեծ սխալներն ընդունելու, ճիշտ եզրակացության հանգելու, արդեն հայտնի թերությունները կոմունիստին վայել ուղղամտությամբ վերացնելու փոխարեն նրանք ևս հակահարձակման անցան. հետամտեցին Ձեզ, նյութեր քաղելով Ձեր ոչ միշտ ճիշտ վարքագծի վերաբերյալ:

Ի պատասխան դրան, Դուք սկսեցիք ավելի շատ գրել, բողոք-նամակներին նորանոր կետեր ավելացնել, արագորեն փոխելով հասցեները: Ում որ դիմում էիք և հարկ եղած պատասխանը չէիք ստանում, նրա անունն էլ ավելացնում էիք գրվելիք հաջորդ նամակում՝ որպես «հանցագործներին» հովանավորողի և վախկոտի:

Ինչի՞ մասին էիք գրում Դուք, որո՞նք էին այն թերություններն ու բացերը, որ գոյություն ունեին դպրոցում, և որոնց կողքով այլևս անտարբեր չէր կարողանում անցնել Ձեր «մարտնչող» ոգին:

Հենց սկզբից էլ ուզում եմ ասել, որ Ձեր առաջ քաշած հարցերը, ահազանգերն ու մեղադրանքները հիմնականում ճիշտ էին: Հարկ չհամարելով մեջ բերել Ձեր նամակում մատնանշված մի շարք մեծ ու փոքր փաստերը, մեղադրանքները, ասենք, որ դրանք քննության առնվեցին պարտշըրջկոմի բյուրոյում՝ 1961 թվականի հոկտեմբերի 18-ին: Շրջկոմի բյուրոն խիստ դատապարտեց դպրոցի դիրեկտոր, կոմունիստ Ֆ. Մկրտչյանի վարքագիծը, մատնանշեց նրա սխալները և նրան **հայտարարեց նկատողություն:** Անհամերաշխ վերաբերմունք ցույց տալու, մանկավարժական կոլեկտիվին անընդհատ լարված վիճակում պահելու, բամբասանքների և այլնի համար շրջկոմի բյուրոն **կգուշացրեց նաև Ձեզ** և ուսմասվար Լ. Մինասյանին:

Թվում էր, թե գոնե այսքանից հետո կրքերը պետք է հանդարտվեն, և ինչպես Դուք, այնպես էլ դպրոցի ողջ կոլեկտիվը Ձեր եռանդն ու ուշադրությունը պետք է ուղղեք դպրոցի առջև դրված մեծ խնդիրների իրագործմանը:

Բայց այդպես չեղավ:

Դուք շարունակեցիք գրել՝ նորից ու նորից հիշատակելով վերոհիշյալ չարաբաստիկ կետերը, դրանց ավելացնելով նորանոր կետեր: Եվ հենց այստեղ ուզում եմ հարցնել Ձեզ. մի՞թե պարզ չէր, թե ինչու Ձեր հիմնականում ճիշտ բողոքների



քննությունը երկար ժամանակ ձգձգվում էր, թե ինչու քննվելու դեպքում անգամ, ցանկացած արդյունքը չէր ստացվում: Այնինչ դա այնքա՜ն հասկանալի էր... հարցն այն է, որ, ինչպես ժողովուրդն է ասում՝ դուք «թացը խառնում էիք չորի հետ», որ Ձեր բողոքները հաճախ սոսկ սուբյեկտիվ, նեղանձնական դիրքերից էին բխում, որ ինքներդ էլ արատներ ունեիք: Ահա թե ինչու ստուգող բոլոր հանձնաժողովներն անելանելի վիճակի մեջ էին ընկնում, կանգնում փակուղու առաջ:

Բայց Դուք այդ հաշվի չառաք և շարունակեցիք գրել: Ձեզանից ետ չմնաց դպրոցի դիրեկտոր Ֆ. Մկրտչյանը, նա նույնպես շարունակեց աշխատանքի իր **արատավոր ոճը՝** կոպիտ վերաբերմունքը աշակերտների և ուսուցիչների նկատմամբ, կամայականությունն ու մեծամտությունը: Եվ, որովհետև դպրոցի պարտիական ու հասարակական կազմակերպություններն իրենց դերում չէին, ապա ուսուցչական կոլեկտիվում շարունակվեցին բախումներն ու փոխադարձ վիրավորանքները:

Ժողովներ, իհարկե, ունենում էիք, թեև դրանց, չգիտեմ ինչու, ուզում ես ուսուցիչների հավաքույթ անունը տալ: Ինչ հարց էլ քննեիք՝ նոր ուսումնական տարվա նախապատրաստման ընթացքը, թե աշակերտների օգնությունը գյուղատնտեսական աշխատանքներին, միևնույն է. մի քանի խոսքից հետո ժողովի թեման դառնում էր Լ. Աբրահամյանի կամ Ֆ. Մկրտչյանի վարքագիծը: Ու կրկին շարունակվում էին արդեն սովորական դարձած փոխադարձ վիրավորանքները: Ընդ որում, ինչպես ասում են, բառերի համար ձեռքներդ գըրպաններդ չէիք տանում և ոչ էլ հետևում, որ փակ լինի ուսուցչանոցի դուռը:

Բանը հասնում է այնտեղ, որ ուսմասվար Զ. Կարախանյանը փողոցում, ի տես արթիկցիների, ապտակում է դպրոցի դիրեկտորին:

Այս պատկերն, անշուշտ, Ձեզ բավականություն պատճառած կլինի: Սակայն Դուք էլ գիտեք, որ դա միակ պատկերը չէր... Ես նույնիսկ բառ չեմ գտնում որակելու Ձեր դպրոցի ուսուցչուհի Հայաստան Օհանյանի արարքը: Հայկական ՍՍՌ լուսավորության մինիստրության կոլեգիան իր որոշման մեջ մեծ «նրբանկատությամբ» ու մեղմությամբ գրում է. «Մոռանալով մանկավարժի կոչումը, Հ. Օհանյանը ծծմբաթթու է շպրտում ուսուցչուհի Լ. Ղազարյանի վրա՝ դեմքը այլանդակելու նպատակով»: Ի՞նչ մանկավարժի մասին է խոսքը, երբ գործ ունենք ամենասովորական քրեական հանցագործության հետ:

Ես «բախտ» եմ ունեցել ծանոթանալու այդ ուսուցչուհու հետ: Ձեզ հետ կրուցելուց հետո գնացի դպրոց և իր առանձնասենյակում հանդիպեցի դըպրոցի դիրեկտոր ընկ. Ֆ. Մկրտչյանին: Հազիվ էինք մի քանի խոսք փոխանակել, երբ դուռը բացվեց, ու ներս մտավ երիտասարդ մի կին:

— Ուզում եմ խոսել հետդ, ընկեր Մկրտչյան,— ասաց նա:

— Տեսնո՞ւմ եք, զբաղված եմ, ընկեր Օհանյան,—ընդգծված քաղաքավարությամբ առարկեց դիրեկտորը:

— Ի՞նչ անեմ, ուզում եմ խոսել,—պնդեց Օհանյանը:

— Մի՞թե չեք կարող մի քանի րոպե հետո գալ, ընկերը Երևանից է եկել և...

— Է՛, թող Երևանից եկած լինի, ինձ չի խանգարի,— ասաց ուսուցչուհին և սկսեց հայհոյանքների ու լուտանքների տարափ տեղալ դիրեկտորի հասցեին, նայելով ոչ թե դիրեկտորին, այլ ինձ, զգացնել տալով, որ հատկապես եկել է Երևանից եկած ընկերոջ մոտ դիրեկտորին «մերկացնելու»: Եվ ինչո՞ւ... Այդ ամենը նրա համար, որ դպրոցի դիրեկտորը միջնակարգ կրթություն ունեցող ուսուցչուհի Օհանյանին ոչ թե լրիվ մեկ դրույք դասաժամ է տվել, այլ՝ երկու ժամ պակաս:

Դպրոցի դիրեկտորն անհամեմատ համբերատար էր ցուցադրում իրեն, որովհետև ես այլևս չկարողացա դիմանալ ու հարցրի.

— Ընկեր Օհանյան, իսկ եթե ընկ. Մկրտչյանը Ձեզ ապահովի մեկ լրիվ դրույքով, ի՞նչ կարծիք կունենաք նրա մասին:

Նա պատասխանեց ճիշտ Ձեզ նման:

— Ե՞ս: Կմնամ նույն կարծիքին, բայց այլևս ձայն չեմ հանի:

— Տեսա՞ք,—ուրախանալով, որ Օհանյանը մերկացրեց իրեն,— հաղթականորեն բացականչեց Մկրտչյանը:

Նրա այդ ակամա բացականչությունը շատ բան է ասում և, առաջին հերթին այն, որ ինքը՝ դըպրոցի դիրեկտորը, բարոյական սանդուղքի նույն աստիճանի վրա է կանգնած՝ Ձեզ հետ միասին: Նա ոչ թե աշխատում էր կանխել Ձեր սայթաքումները, այլ բոլորովին հակառակը, ինքն էր հրում, տրամադրում Ձեզ ավելի ու ավելի սխալվելու, ավելի շատ իջնելու: Այդ բացականչությունը ցույց տվեց նաև, որ դիրեկտորը ո՛չ միայն շահագրգռված չէր ուսուցչական համերաշխ, առողջ կոլեկտիվ ստեղծելու հարցով, այլ հակառակը՝ ձգտում էր ուսուցիչներին իրար դեմ հանել, լարված պահել մթնոլորտը, որպեսզի իրեն վերապահի հաշտարար դատավորի դերը, որպեսզի ցանկացած ժամանակ անմեղորեն բացականչի.

— Տեսա՞ք:

Որտեղի՞ց է Ձեզ մոտ այդ հոգեբանության նույնությունը:

Ուրեմն հնարավոր է, որ Ձեզ նման մտածող հատ ու կենտ մարդիկ լինեն նաև ժողովրդական տնտեսության այլ բնագավառներում, այլ ասպարեզներում: Բայց, ինչ էլ լինի, դրանով նրանք այնքան մեծ վնաս հասցնել չեն կարող մարդկանց, որքան Դուք՝ մանկավարժներդ: Չէ՞ որ

Դուք անմիջապես գործ ունեք երեխաների, մեր մատաղ սերնդի, մեր ապագայի հետ:

Նրանք Ձեզ մոտ են գալիս մաքուր, անաղարտ հոգիներով, նրանք սիրում ու հավատում են Ձեզ, նրանց համար Դուք ամենագիտուն, ամենակարող, ամենաազնիվ, ամենախելացի մարդիկ եք: Երեխաները միշտ էլ ձգտում են նմանվել իրենց ուսուցիչներին, ընդօրինակել նույնիսկ նրանց խոսելաձևը, շարժումները, կեցվածքը...

Ասացեք, ի՞նչ լավ բան կարող էին սովորել Ձեզանից, ընկ. Օհանյանից, ընկ. Մկրտչյանից, ընկ. Կարախանյանից և Ձեզ նման այլ ուսուցիչներից ձեր աշակերտները: Կարծում եք, թե միայն երկու անհայտով խնդիր լուծել սովորեցնելը բավակա՞ն է...

Ինչպե՞ս կարող էին հարգել Ձեզ աշակերտները, երբ հաճախ ականատես էին լինում իրենց ուսուցիչների փողոցային վեճերին, ուսուցչանոցից լսում էին ձեր գոռգոռոցը, տեսնում թե ինչպես է ուսուցչուհիներից մեկը փորձում խեղանդամ դարձնել իր աշխատանքի ընկերուհուն: Քաջություն ունեցեք խոստովանելու՝ նրանք պարտավոր չեն հարգել ձեզ:

Ուրեմն ինչո՞ւ էիք սարմացել, երբ X դասարանի աշակերտուհիներից մեկն իր ապատ շարադրության մեջ նկարագրել էր Ձեզ որպես կռվարար, կոպիտ, բամբասող ու կրպարտիչ, ստեղծել էր ուսուցչի բացասական մի կերպար: Աշակերտուհու այդ քայլը, Ձեզ համար անօրինակ էր, սարսափելի: Թերևս անթույլատրելի էր դա աշակերտի համար:

Բայց բոլոր դեպքերում դա թե՛ Ձեզ, թե՛ դիրեկտորին և թե՛ ուսուցիչներին պետք է ստիպեր ետ նայել անցած ճանապարհին և երկա՛ր-երկա՛ր մտածել հետագա անելիքների, վարվելակերպի, կոլեկտիվի հեղինակության մասին: Դա Ձեզ պետք է ստիպեր դեն նետել նեղ, անձնական բոլոր հիվանդագին զգացումները, կոմունիստին վայել համարձակությամբ ընդունել ու դատապարտել ձեր բազմաթիվ սխալները, վերափոխվել և ողջ ուշադրությունը բևեռել աշակերտների ուսման առաջադիմության, դաստիարակության հարցերին, դպրոցի առջև պարտիայի և կառավարության դրած խնդիրների կենսագործմանը:

Մի՞թե Ձեզ չէր մտահոգում այն փաստը, որ 1961—62 ուսումնական տարում նույն դասարաններում մնացել էին 114 աշակերտ: Ինչպե՞ս էիք Դուք ժամանակ գտնում հաշվելու, թե քանի քառակուսի մետր ապակի է օգտագործվել դպրոցում և անտարբերությամբ էիք անցնում այն փաստի կողքով, որ այս տարվա առաջին քառորդում գնահատված II—VIII դասարանների 541 աշակերտներից անբավարար գնահատական էին ստացել 169-ը կամ գնահատված աշակերտների 31 տոկոսը: Ինչո՞ւ չէիք հաշվում, թե քանի երեխա է դուրս մնացել պարտադիր ուսուցումից: Որտե՞ղ էր Ձեր կոմունիստի, ուսուցչի և մարդու խիղճը:

Եվ հենց այստեղ էլ ես ուզում եմ խոսել խղճի մասին: Սոցիալիստական աշխատանքի հերոս, անվանի հողագործուհի Նադեժդա Գրիգորևնա Զագլադան իր նամակներում, գրելով խղճի մասին, երբեք էլ նկատի չունի միայն հողագործության բնագավառում բարձր բերք ստանալու հարցերը: Նրա ասած խիղճն անմիջականորեն կապված է կոմունիզմ կառուցողի հոգևոր կերպարի հետ: «Չէ՞ որ վերջապես պետք է զգալ, որ այժմ առանց աշխատանքի, առանց խղճի չես կարող ապրել, չես կարող վերցնել այնպիսի մի տեմպ, ինչպիսին պարտիան է պլանավորել», գրում է նա իր **«Բարձր գնահատել հողագործի պատիվը», «Պատիվդ բարձր պահիր ջահել հասակից»** նամակներում:

Երբ մարդ գիտակցում է հասարակությանն իր օգտակար լինելը, երբ այլ մարդկանց շահերը դարձնում է իր անձնական շահը, խղճի, պատվի, բարոյական պատասխանատվության գործը, ապա այդպիսի մարդու խիղճը միշտ մաքուր է ու հանգիստ:

Ես Ձեզ և Ֆ. Մկրտչյանին խորհուրդ կտայի կարդալ նաև Նադեժդա Գրիգորևնա Զագլադայի որդու՝ նույն գյուղի դպրոցի կենսաբանության դասատու Վասիլի Գավրիլովիչ Զագլադայի հոդվածը, որը տպագրվել է 1962 թվականի սեպտեմբերի 27-ին «Ուչիտելսկայա գազետա» թերթում՝ **«Մենք պատասխանատու ենք յուրաքանչյուր մարդու համար»** վերնագրով:

Այնտեղ Վասիլի Գավրիլովիչն ուսուցչի աշխատանքը որոշ իմաստով նմանեցնում է հողագործի աշխատանքին: Եթե հողագործը քրտնաջան, ազնիվ աշխատանքով, համառությամբ և համբերատարությամբ մշակում է հողը և լավ բերք ստանում, ապա ուսուցիչն ավելի պատասխանատու «հողագործ» է: Նա լույսի և հոգևոր հարստությունների սերմեր է ցանում մանուկների սրտում, խնամքով, զգուշությամբ, ուշադրությամբ ու հոգատարությամբ աճեցնում է այդ սերմերը, որովհետև այդ մանուկների հոգեկան ողջ հարստությունը հետագայում հասարակությանն է ծառայելու, որովհետև մանուկներն են, որ շարունակելու են իրենց հայրերի ու պապերի գործը, երջանիկ կյանք են ստեղծելու աշխարհի վրա:

Ուրեմն, ուսուցիչն ինքը նախ պետք է հոգով բարձր ու առողջ լինի, որպեսզի կարողանա լավի, գեղեցկի, մարդկայինի առողջ հատիկներ ցանել երեխայի հոգում: Ուսուցիչն ինքը շատ մաքուր ու ազնիվ պետք է լինի, որպեսզի չթողնի, որ օգտակար սերմերի հետ երեխայի հոգին ընկնեն, ծլեն ու բազմանան մոլախոտերը: «Ինչ որ ցանես, այն էլ կհնձես»,— ասում է ժողովրդական առածը:

Հասկանալի է, որ դպրոցում տիրող խայտառակ դրությունը չէր կարող չմտահոգել վերադաս օրգաններին: Եվ, պատահական չէ, որ դպրոցի ուսումնա-դաստիարակչական աշխատանքների վիճակը քննվել է թե՛ շրջսովետի գործկոմի և թե՛ ՀԿՊ Արթիկի շրջկոմի բյուրոյի նիստերում: 1962 թվականի նոյեմբերի 26-ին Ձեր դպրոցի հարցը քննվեց նաև Հայկական ՍՍՌ լուսավորության մինիստրության կոլեգիայում:

Կոլեգիան որոշեց վերջ տալ Ձեր դպրոցում տիրող խիստ վատառողջ մթնոլորտին և նշելով, որ դպրոցի դիրեկտոր ընկ. Ֆ. Մկրտչյանը ո՛չ միայն չի կարողացել ստեղծել մանկավարժական միասնական, առողջ կոլեկտիվ, այլև առանձին առիթներով ինքն է նպաստել կոլեկտիվի պառակտմանը, նրան ազատեց դպրոցի դիրեկտորի պարտականությունից: Հակամանկավարժական կոպիտ արարք թույլ տալու համար աշխատանքից հեռացվեց դպրոցի ուսմասվար Ջ. Կարախանյանը, իսկ Ձեր և ուսուցչուհի Հ. Օհանյանի վերաբերյալ ի գիտություն ընդունվեց ժողկրթբաժնի վարիչի հայտարարությունը այն մասին, թե Դուք այլ դպրոցներ եք տեղափոխվելու: Կոլեգիան մի շարք միջոցներ նշեց Արթիկի № 2 միջնակարգ դպրոցն անմխիթար վիճակից դուրս բերելու նպատակով:

Ձեր դպրոցի նախկին դիրեկտոր Ֆ. Մկրտչյանը տեղափոխվեց այլ՝ Սովետաշենի մանկատան կոլեկտիվը, որտեղ մեկ-երկու ամիս աշխատելուց հետո Հայկական ՍՍՌ լուսավորության մինիստրը ստիպված եղավ հեռացնել նրան մանկատան դիրեկտորի պարտականություններից: Այսքանից հետո սակայն, մինիստրությունը համբերատարությամբ վճռել է մի վերջին անգամ ևս ստուգել մարդ-Մկրտչյանին և նրան թույլ է տվել կրկին գործ ունենալ մանուկների հետ: Դա, ինչպես ասում են, մինիստրության իրավասության և խղճի գործն է:

Այսքանը Մկրտչյանի մասին:

Ինչ վերաբերում է Ձեզ, ապա դուք, գուցե, շարունակեք մնալ նախկին դպրոցում (որն իհարկե ճիշտ չի լինի), գուցե և ուրիշ դպրոց տեղափոխվեք, մեծ չէ տարբերությունը: Դարձյալ շարունակելու եք դասավանդել: Նույնը կարելի է ասել Օհանյանի ու ձեր դպրոցի այն ուսուցիչների մասին, որոնք այս կամ այն չափով մեղավոր են ստեղծված վիճակի համար:

Եվ քանի որ, ցավոք սրտի, Ձեր հոգեբանությամբ մարդիկ կան նաև ռեսպուբլիկայի ուրիշ դպրոցներում, դրա համար էլ մենք որոշեցինք ի վերջո գրել մամուլում այս տխուր պատմության մասին:

Կարծում ենք, որ այն թե՛ Ձեզ, և թե_ բոլորին առիթ կտա մտածելու, ճիշտ եզրակացության հանգելու:

Իսկ Դուք ասում էիք. «Թող ինձ ձեռք չտան...»:

Ո՛չ, պետք է անհաշտ լինել ամեն տեսակ թերությունների ու բացերի նկատմամբ: Բայց միշտ և ամենուրեք պետք է հանդես գալ ճիշտ, ազնիվ, դիրքերից: Ձեր դպրոցի աշխատանքներում տեղ գտած սխալներն ու թերությունները սկզբունքային, կոմունիստական քննադատության ենթարկելու հետ միասին պետք է համերաշխ աշխատեք բոլորի հետ, ջանաք վերացնել թերությունները, ուղղել սխալները և ոչ թե միայն նշել, ոչ թե միայն հայտարարել, միայն գրել...

Լավ, օգտակար, արդյունավետ աշխատանք կարող է լինել այնտեղ, ուր մթնոլորտը խաղաղ է ու գործարար:

Վասիլի Գավրիլովիչ Զագլադան, Ձեր կոլեգան, իր հոդվածում կարծես թե հենց Ձեր դպրոցի մասին էր գրել. «Որքա՜ն վիրավորական է լինում, երբ լսում ես, որ ինչ-որ կոլեկտիվում տիրում է քաղքենիական գզվռտոց, երբ գանգատները հղվում են աշխարհով մեկ և ստուգող մարդկանց խմբեր են բերում: Այնինչ պետք է ուղղակի ասել.

— Բավական է ձեր ժամանակը վատնեք դատարկ հակաճառություններով: Ինչքա՜ն աշխատանք կա ձեր շուրջը, իսկ դուք խրվել եք վիճաբանությունների մեջ և ձեր քթից այն կողմ ուրիշ բան չեք տեսնում:

Ինչքա՛ն ուժ և ժամանակ եք կորցնում այդ քաղքենիական խճճված կծիկները բանալու համար: Իսկ լուրերը տարածվում են գյուղով մեկ, երեխաները վախով են նայում վիրավորված ուսուցչուհու արտասվալից աչքերին, հանձնաժողովները գալիս են հանձնաժողովների հետևից և ինչպես մոլախոտը՝ առողջ դաշտում, աճում է անբարյացակամության ու խորթության զգացումը»:

Դե՛, ի՞նչ կասեք, ապրե՞լ եք այդ զգացումը, ընկեր Աբրահամյան:

Ձեզ մեծ պատիվ է վիճակվել՝ դաստիարակել կոմունիզմի քաղաքացիներին, նրանց իրենց դարին արժանի մարդիկ դարձնել: Եվ Դուք պարտավոր եք ու կոչված եք կատարել Ձեր պարտքը ամենայն պատասխանատվությամբ ու խղճով:

ԱՐՏ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՐՈՆԻԿԱ

## ՍԵՄԻՆԱՐ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Ցեխային պարտիական կազմակերպություններին օգնելու և նրանց աշխատանքի լավագույն փորձն ընդհանրացնելու նպատակով, ՀԿՊ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի շրջանային կոմիտեն անցկացրեց ցեխային պարտկազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունք։ Իրենց կազմակերպությունների գործունեության մասին սեմինարի մասնակիցներին պատմեցին էլեկտրատեխնիկական գործարանի էլեկտրացեխի պարտիական կազմակերպության քարտուղար Մ. Գալֆայանը և տաքսամոտորային պարկի երրորդ շարասյան ցեխային պարտկազմակերպության քարտուղար Խ. Ասատրյանը։ Զեկուցումների շուրջ բացվեց մտքերի լայն փոխանակություն։

## ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՀԵՏ ՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔԸ

ՀԿՊ Ղուկասյանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի բյուրոն քննարկեց այն հարցը, թե Ղուկասյանի կաթնաանասնապահական սովխոզի սկզբնական պարտիական կազմակերպությունն ինչպիսի աշխատանք է կատարում պարտիայի անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հետ։ Պարզվեց, որ սովխոզի պարտկազմակերպությունը և նրա բյուրոն հետևողական և մտածված աշխատանք չեն կատարում երիտասարդ կոմունիստների հետ, նրանց լայնորեն չեն ներգրավում պարտիական-հասարակական գործերում։ Դրանով պետք է բացատրել, որ նրանցից ոմանք ակտիվ չեն մասնակցում պարտիական կազմակերպության գործունեությանը, լավ չեն կատարում, անգամ ձախողում են իրենց տրված հանձնարարությունները։

ՍՄԿՊ անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հետ տարվող գաղափարական աշխատանքն ուժեղացնելու, նրանց սովխոզի արտադրական և հասարակական կյանքում ակտիվ ներգրավելու նպատակով արտադրական պարտիական կոմիտեն գործնական հանձնարարություններ տվեց սկզբնական պարտկազմակերպությանը։

## ՏԵՍԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍ

Պարտիական, արհմիութենական և տնտեսական ղեկավար աշխատողների տնտեսական գիտելիքները հարստացնելու նպատակով կազմակերպված է և հաջողությամբ գործում է ՀԿՊ Լենինականի քաղկոմին առընթեր մշտական գործող տեսական սեմինարը։ Վերջերս սեմինարի մասնակիցների համար անցկացվեց տեսական կոնֆերանս, ուր հանգամանորեն քննարկվեց «Արդյունաբերության արտադրանքի գինը և ինքնարժեքը» թեման։ Ինքնուրույն ռեֆերատներով հանդես եկան տեքստիլ կոմբինատի պլանային բաժնի վարիչի տեղակալ Լ. Գալուստովան, հղկող հաստոցների գործարանի դիրեկտորի տեղակալ Ս. Հովհաննիսյանը, դարբնոցա-մամլիչային գործարանի պարտբյուրոյի քարտուղար Գ. Մարտիրոսյանը, «Ստրոմմաշ» գործարանի դիրեկտոր Մ. Գաբոյանը. Նրանք տեսական դրույթները հիմնավորում էին իրենց արտադրության կյանքից առնված կոնկրետ փաստերի տնտեսագիտական վերլուծությամբ։

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՆՑԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ.,
ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ.,
ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ.,
ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05229 | Պատվեր 1596 | Տիրաժ 9730 | Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 25/V 1963 թ.։

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության [illegible] տպարան, Երևան։




# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊՈԼԻԷԹԻԼԵՆԱՅԻՆ ԽՈՂՈՎԱԿՆԵՐ

Վիլնյուսի պլաստմասսայի առարկաների գործարանը յուրացրել է պոլիէթիլենային խողովակների արտադրությունը։ Դրանք մի քանի անգամ թեթև են չուգունե խողովակներից, չեն ժանգոտվում, լավ են դիմանում թթուների, ալկալիների ներգործությանը և սառնամանիքներին, իրենց առաձգականությունը պահպանում են մինչև — 40°։ Այդ խողովակների մեջ ջուրը սառչում է երեքից-չորս անգամ ավելի դանդաղ, քան մետաղյա խողովակներում, իսկ եթե սառչում էլ է, ապա խողովակները՝ բնական առաձգականության շնորհիվ չեն քայքայվում, այլ միայն որոշ չափով մեծանում են։ Սառույցը հալվելուց հետո խողովակները վերականգնում են իրենց նախկին վիճակը։ Եթե 1 կմ չուգունե ջրատար խողովակները կշռում են 12 տոննա, ապա այդ նույն չափի պոլիէթիլենային խողովակները կշռում են ընդամենը 680 կգ։

## ԿՈՒԼՏԻՎԱՏՈՐ-ՇԱՐՔԱՑԱՆ

Կուլտիվատոր-շարքացանը միայն երկու ագրեգատների սոսկ զուգակցում չէ. կոնստրուկցիայում շատ նորություններ են մտցված։

Ցանելու ժամանակ մեքենան սերմերը բաշխում է հավասարաչափ և որոշակի խորությամբ, իսկ վերևից ծածկում է փխրուն հողաշերտով։ Այս եղանակով կատարված ցանքը 12—15 տոկոսով ավելի բարձր բերք է տալիս։ Մեքենան միաժամանակ պարարտանյութեր է շաղ տալիս և հողով ծածկում, ինչպես նաև մշակում է հողը։

Այսպիսով այդ մեքենան փոխարինում է չորս մեքենայի՝ երկու շարքացանի ու երկու կուլտիվատորի։

## ՄԵՏԱՂԱԳՈՐԾՎԱԾՔՆԵՐ

Մետաղը գործվածքի հետ միացնելու գաղափարը նոր չէ։ Դեռևս հնագույն ժամանակներում ոսկյա և արծաթյա թելերից պատրաստում էին գործվածքներ։ Մեր օրերի գործվածքը արույրով պատած թեթև փայլուն կապրոն է, ցինկից, ալյումինից, անագից պատրաստած բրդյա, բամբակյա խիտ գործվածքները և վիսկոզը։

Այս գործվածքները գեղեցիկ են, փայլուն և փափուկ։ Հեշտությամբ լվացվում և արդուկվում են։ Շատ ամուր են։ Կառուցվածքի և մշակման տեսակետից միանգամայն բարդ տեխնոլոգիան փոխարինված է մետաղի հասարակ սղոցմամբ։

Մետաղ մզող հարմարանքը արտաքինից նման է ատրճանակի։ Նրա «փողաբերանից» մի փոքր հեռու հատվում են երկու մետաղալար, որոնք միացված են հոսանքին և ստեղծում են էլեկտրական աղեղ։ Սեղմված օդը 6 մթնոլորտ ճնշման տակ բռնում է հալված մետաղը և փչում գործվածքի վրա։

Կենցաղում կիրառելուց բացի, մետաղագործվածքներն օգտագործվում են նաև արդյունաբերության մեջ։ Այդ գործվածքներից պատրաստած հագուստով մարդիկ վերանորոգում են ցելսիուսի +600° ջերմություն ունեցող վառարաններ ու կաթսաներ, որովհետև մետաղագործվածքը անդրադարձնում է ջերմային ճառագայթները։ Այդ գործվածքից պատրաստած հագուստով էլեկտրամոնտյորը հանգիստ կարող է աշխատել լարվածության տակ, անհրաժեշտ է միայն աշխատելիս հագուստը հողակցել։

## ՄԵՔԵՆԱ «ՄԱՆԿԱՎԱՐԺԸ»

Շուտով ուսանողներն իրենց քննությունները կհանձնեն էլեկտրական մեքենաներին։ Առաջին կիբեռնետիկական «քննող» մեքենան պատրաստվում է Լենինգրադում։ Այդպիսի մեկ մեքենա կարող է ուսանողների գիտելիքներն ստուգել շատ առարկաների գծով։

«Մանկավարժը» նշում է պատասխանի ճշտությունը և գրանցում այս պատասխանը պատրաստելու վրա ծախսված ժամանակը։ «Զրույցի» վերջում մեքենան քարտի վրա նշանակում է գնահատականը։

# ԱՐՏԱՀԱՅՏՎՈՒՄ ԵՆ ՄԱՆԿԱՎԱՐԺՆԵՐԸ

## ՈՒՍՈՒՑԻՉՆԵՐԻ ԽՈՍՔԸ

Սևան քաղաքի Խ. Աբովյանի անվան միջնակարգ դպրոցի արտադրական խորհրդակցության նիստում, որին մասնակցում էին դպրոցի բոլոր ուսուցիչները, կոլեկտիվ կերպով քննարկվեց ընկ. Ս. Խուդոյանի հոդվածը։ Մտքերի փոխանակությանը մասնակցեցին շատ ընկերներ, որոնք հավանություն տալով հոդվածագրի հարցադրումներին՝ իրենց նկատառումներն ու կոնկրետ առաջարկություններն արին դպրոցում ուսումնադաստիարակչական աշխատանքները բարելավելու, ուսուցիչների ստեղծագործական ակտիվությունը և նախաձեռնությունը զարգացնելու վերաբերյալ։

Նշվեց, որ դեռևս լավ չի կազմակերպվում դասի պրոցեսը։ Ելույթ ունեցողներն ասացին, որ դասի մեծ մասն ուսուցիչը հարկադրված է հատկացնել ոչ թե նոր նյութի պարզաբանմանը և աշակերտների միջոցով դասի ամփոփմանը, այլ աշակերտներին դաս հարցնելուն։ Այդ արվում է քառորդային գնահատականներ նշանակելու նպատակով. մեղադրվում է այն ուսուցիչը, որն աշակերտներին քառորդի ընթացքում քիչ գնահատականներ է նշանակել։

Կան առարկաներ, որոնց շաբաթական մեկ ժամ է տրված, իսկ դասարանում կան 35—40 աշակերտ։ Օրինակ, ուսումնական տարվա երկրորդ քառորդը ութ շաբաթից էլ պակաս է, ուրեմն որպեսզի ուսուցիչն աշակերտներից յուրաքանչյուրին երկու անգամ հարցնի, հարկավոր է ամեն մի դասաժամին հարցնել 8—9 աշակերտ։ Այդ դեպքում նոր նյութի հաղորդմանը բոլորովին ժամանակ չի մնում։ Այդ դրությունից դուրս գալու համար մեր ուսուցիչները նպատակահարմար էին գտնում V—VIII դասարանների քառորդային ամփոփումները դարձնել կիսամյակային, ինչպես արվում է IX—XI դասարաններում։

Երկտարեցիության և ուսման ցածր որակի պատճառներից մեկը ելույթ ունեցողները համարում էին դասարաններում աշակերտների խտությունը, որը հնարավորություն չի տալիս ուսուցչին բոլոր աշակերտներին իր տեսադաշտում պահելու. այդ վատ է անդրադառնում աշակերտի առաջադիմության վրա, պարարտ հող ստեղծելով երկտարեցիության համար։ Նրանք գտնում էին, որ դասարանները կոմպլեկտավորելիս սովորողների թիվը չպետք է անցնի 25-ից, դա, առաջին հերթին, վերաբերում է տարրական դասարաններին։

Ուսման որակը բարձրացնելու շահերից է ելնում լուսավորության մինիստրության հրամանը՝ I—IV դասարաններում պարապող ուսուցիչներին իրենց դասարանների հետ բարձրանալու մասին։ Արտադրական խորհրդակցության մասնակիցները միաժամանակ նշում էին, որ որոշ տեղերում այն ընկալել ու կիրառում են դոգմատիկ կերպով, առանց հաշվի առնելու յուրաքանչյուր դպրոցի կոնկրետ պայմանները։ Կան դպրոցի ղեկավարներ, որոնք ավելորդ գլխացավանքից խուսափելու համար, բոլոր տարրական դասարանների դասաբաշխումը կատարում են այնպես, ինչպես մինիստրության հրամանում է նշված։ Օրինակ, ինչո՞ւ մեր դպրոցի III—IV դասարանները չեն պարապում առարկայական ձևով, որտեղ կան զուգահեռ մի քանի դասարաններ։ Թե՛ մեր դպրոցի և թե մյուս դպրոցների քառորդային ու տարեկան ամփոփումները ցույց են տվել, որ տարրական դասարանների առաջադիմության տոկոսը բարձր է, բայց հենց որ IV դասարանից փոխադրվում են V դասարան, առաջադիմությունը խիստ ընկնում է։ Ի՞նչն է պատճառը. մի՞թե ուսուցիչների մեջ չպետք է փնտրել առաջադիմության անկման պատճառը։ I—IV դասարաններում դասավանդում են միջնակարգ կրթությամբ, իսկ V դասարանից սկսած հիմնականում բարձրագույն կրթության տեր ուսուցիչներ։ Դրա պատճառը մեր կարծիքով այն է, որ I—IV դասարաններում պարապող դասվարը բոլոր առարկաները չի կարողացել ավանդել պահանջված խորությամբ, աշակերտներն էլ փոխադրվել են։

Մեր դպրոցի արտադրական խորհրդակցությունում երկարամյա աշխատանքի փորձ ունեցող ուսուցիչներ Լ. Ելիզբարյանը, Ա. Նիկողոսյանը և մյուսներն իրենց ելույթներում քննադատեցին լուսավորության մինիստրությանը այն բանի համար, որ I—IV դասարաններում դասվարական սիստեմը սխալ է և բացասաբար է անդրադառնում ուսման որակի վրա։

Տարիների փորձը ցույց է տվել, որ երբ III—IV դասարաններում պարապում էին առարկայական ձևով, V դասարաններում առաջադիմությունը բարձր էր լինում։ Ընկ. Ս. Խուդոյանի առաջ քաշած այս հարցը միանգամայն տեղին է ու ճիշտ։ Ժամանակն է՝ III դասարանից սկսած պարապմունքներն առարկայական ձևով կազմակերպելու, մանավանդ մեծ դպրոցներում, ուր կան զուգահեռ դասարաններ. այս միջոցառումը կօգնի ուսման որակի բարձրացմանը։

Ընկ. Ս. Խուդոյանն առաջ է քաշում ծրագրերի հարցը. մենք էլ ենք գտնում, որ ուսուցչին պետք է հնարավորություն տալ շրջանի ու դպրոցի պայմաններից ելնելով, առանձին առարկաների ծրագրի թեմաներին հատկացվող ժամերի մեջ փոփոխություններ մտցնել (բնագիտության, աշխարհագրության). այդ հարցն էին շոշափում ուսուցիչներ Հ. Մուշեղյանը ու Ա. Նիկողոսյանը. Նրանք միաժամանակ նշեցին, որ որոշ առարկաների ծրագրեր ծանրաբեռնված են, անհրաժեշտ է դրանք բեռնաթափել։ Օրինակ, V դասարանի պատմության ծավալուն դասագիրքն անցնելու համար հատկացված է 72 ժամ. այդ ծանրաբեռնվածությունը բացասաբար է ազդում մյուս առարկաների յուրացման վրա։ Կամ չգիտենք թե ինչու VI դասարանի թվաբանության ծրագրից հանեցին համեմատական բաժանում թեման։ Այս ենթաթեման շատ էր օգնում հարաբերություններ ու համեմատություններ թեմայի յուրացմանը, իսկ խնդրագրքերում շատ խնդիրներ կան համեմատական բաժանման վերաբերյալ. երբ ուսուցիչը փորձում է առանց տեսականն անցնելու այդ տիպի խնդիրներ լուծել տալ աշակերտներին, չի ստացվում։ Մենք գտնում ենք, որ ծրագրերը կազմելիս դրանք պետք է դնել լայն քննարկման։ Մեր կարծիքով, ճիշտ չէ Ս. Խուդոյանի առաջ քաշած այն հարցը, թե հարգելի պատճառով չանցած ծրագրային նյութը կարելի է հաջորդ ուսումնական տարվան թողնել. ի՞նչ ժամերի հաշվին պետք է այդ արվի, իսկ եթե հաջորդ ուսումնական տարում նույնպես տվյալ դասարանի հետ այդպիսի դեպք պատահի՞։ Մենք նպատակահարմար ենք գտնում, որ երբ ծրագրի առանձին թեմաներ լավ չեն յուրացվել կամ չեն հասցրել անցնել, ուսուցչին հնարավորություն տրվի արտաժամյա պարապմունքների միջոցով անցնել այդ թեմաները։ Հայոց լեզվի ուսուցիչներ Կ. Գալստյանը և Ջ. Թորոսյանը խոսեցին գնահատման նորմաների մասին։ Սահմանված նորմաները, իրոք, կաշկանդում են ուսուցչին։ Գրավոր աշխատանքն ստուգելիս դիցուկ թե ուսուցիչը նկատում է, որ թույլ սովորող աշակերտը որոշ չափով առաջադիմել է. նրան խրախուսելու համար ցանկանում է բավարար գնահատական նշանակել, բայց վախենալով «ստուգողներից», նշանակում է անբավարար, մեռցնելով աշակերտի մեջ ուսման նկատմամբ բողբոջող սիրո ծիլերը, հիասթափեցնում նրան։ Նրանք փաստեր բերեցին, թե ինչպես նախորդ տարիներում հասունության ատեստատի քննությունների ժամանակ եղել են աշակերտներ, որոնք հաջողությամբ հանձնել են բոլոր առարկաների քննությունները, բայց հայոց լեզվի ուղղագրության գրավոր աշխատանքից, նորմաներն աննշան խախտելու համար, ստացել են անբավարար գնահատական։

Քառորդային ու տարեկան գնահատականները նշանակելիս ուսուցիչները կաշկանդված են։ Այսպես, աշակերտը բոլոր առարկաները սովորել է լավ, բայց լեզվի գրավորը չի հասցրել և երեք քառորդներում ստացել է անբավարար գնահատական. այդ առարկայի վրա շատ աշխատելով 4-րդ քառորդում ստանում է բավարար գնահատական, սակայն միևնույն է, եթե նա 5 էլ ստանա, նրան տրվում է ամառային առաջադրանք, որովհետև երեք քառորդներում անբավարար գնահատական է ունեցել և միայն օգոստոսին ուսուցիչը կարող է նրան փոխադրել հաջորդ դասարան. այս կատարյալ ֆորմալիզմ է։ Ելույթ ունեցողները չմոռացան խոսել նաև վերահսկողության մասին։ Երբ վերահսկողությունը լավ է կազմակերպված, նրա նպատակն է աշխատանքին օգնել, այն խիստ անհրաժեշտ է։ Սակայն երբեմն «վերահսկողները» միայն նյութ են հավաքում կոնֆերենցիաների համար, ո՞ւմ է պետք այդպիսի հսկողությունը։ Երբեմն վերահսկողները մտնում են դպրոց և բոլոր դասարաններում տալիս են ստուգողական գրավոր աշխատանք անցած թեմաներից. աշակերտներն ստանում են անբավարար գնահատականներ, որովհետև մոռացել են, առանց կրկնելու չեն կարող 2 ամսվա անցած թեմաները վերհիշել. հենց այդ էլ բավական էր, որպեսզի ուսուցչին սկսեն մշակել։

Մ. ՍԱՐԳՍՅԱՆ

Սևան քաղաքի Խ. Աբովյանի անվան արտադրական ուսուցմամբ միջնակարգ դպրոցի արտադրական խորհրդակցության նախագահ

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԽՐՈՆԻԿԱ

## ՍԵՄԻՆԱՐ ՊԱՐԱՊՄՈՒՆՔ

Ցեխային պարտիական կազմակերպություններին օգնելու և նրանց աշխատանքի լավագույն փորձն ընդհանրացնելու նպատակով, ՀԿՊ Երևանի կազմակերպության Օրջոնիկիձեի շրջանային կոմիտեն անցկացրեց ցեխային պարտկազմակերպությունների քարտուղարների սեմինար պարապմունք: Իրենց կազմակերպությունների գործունեության մասին սեմինարի մասնակիցներին պատմեցին էլեկտրատեխնիկական գործարանի էլեկտրացեխի պարտիական կազմակերպության քարտուղար Մ. Գալֆայանը և տաքսամոտորային պարկի երրորդ շարասյան ցեխային պարտկազմակերպության քարտուղար Խ. Ասատրյանը: Զեկուցումների շուրջ բացվեց մտքերի լայն փոխանակություն:

## ՈՒԺԵՂԱՑՆԵԼ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՀԵՏ ՏԱՐՎՈՂ ԱՇԽԱՏԱՆՔԸ

ՀԿՊ Ղուկասյանի գյուղական արտադրական պարտիական կոմիտեի բյուրոն քննարկեց այն հարցը, թե Ղուկասյանի կաթնաանասնապահական սովխոզի սկզբնական պարտիական կազմակերպությունն ինչպիսի աշխատանք է կատարում պարտիայի անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հետ: Պարզվեց, որ սովխոզի պարտկազմակերպությունը և նրա բյուրոն հետևողական և մտածված աշխատանք չեն կատարում երիտասարդ կոմունիստների հետ, նրանց լայնորեն չեն ներգրավում պարտիական-հասարակական գործերում: Դրանով պետք է բացատրել, որ նրանցից ոմանք ակտիվ չեն մասնակցում պարտիական կազմակերպության գործունեությանը, լավ չեն կատարում անդամ ձախողում են իրենց տրված հանձնարարությունները:

ՍՄԿՊ անդամության թեկնածուների և երիտասարդ կոմունիստների հետ տարվող գաղափարական աշխատանքն ուժեղացնելու, նրանց սովխոզի արտադրական և հասարակական կյանքում ակտիվ ներգրավելու նպատակով արտադրական պարտիական կոմիտեն գործնական հանձնարարություններ տվեց սկզբնական պարտկազմակերպությանը:

## ՏԵՍԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍ

Պարտիական, արհմիութենական և տնտեսական ղեկավար աշխատողների տնտեսական գիտելիքները հարստացնելու նպատակով կազմակերպված է և հաջողությամբ գործում է ՀԿՊ Լենինականի քաղկոմին առընթեր մշտական գործող տեսական սեմինարը: Վերջերս սեմինարի մասնակիցների համար անցկացվեց տեսական կոնֆերանս, որը հանգամանորեն քննարկվեց «Արդյունաբերության արտադրանքի գինը և ինքնարժեքը» թեման: Ինքնուրույն ռեֆերատներով հանդես եկան տեքստիլ կոմբինատի պլանային բաժնի վարիչի տեղակալ Լ. Գալուստովան, հղկող հաստոցների գործարանի դիրեկտորի տեղակալ Ս. Հովհաննիսյանը, դարբնոցա-մամլիչային գործարանի պարտբյուրոյի քարտուղար Գ. Մարտիրոսյանը, «Ստրոմմաշ» գործարանի դիրեկտոր Մ. Գարոյանը. նրանք տեսական դրույթները հիմնավորում էին իրենց արտադրության կյանքից առնված կոնկրետ փաստերի տնտեսագիտական վերլուծությամբ:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԳՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ա. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐԳՍՅԱՆ Վ. Հ.

Թողարկիչ՝ Ա. ՑԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2-02-24
Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении тел. 2-02-24

ՎՖ 05229 Պատվեր 1596 Տիրաժ 9730 Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 25/V 1963 թ.:

Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության ... տպարան, Երևան:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊՈԼԻԷԹԻԼԵՆԱՅԻՆ ԽՈՂՈՎԱԿՆԵՐ

Վիլնյուսի պլաստմասսայի առարկաների գործարանը յուրացրել է պոլիէթիլենային խողովակների արտադրությունը: Դրանք մի քանի անգամ թեթև են չուգունե խողովակներից, չեն ժանգոտվում, լավ են դիմանում թթուների, ալկալիների ներգործությանը և սառնամանիքներին, իրենց առաձգականությունը պահպանում են մինչև — 40°: Այդ խողովակների մեջ ջուրը սառչում է երեքից-չորս անգամ ավելի դանդաղ, քան մետաղյա խողովակներում, իսկ եթե սառչում էլ է, ապա խողովակները՝ բնական առաձգականության շնորհիվ չեն քայքայվում, այլ միայն որոշ չափով մեծանում են: Սառույցը հալվելուց հետո խողովակները վերականգնում են իրենց նախկին վիճակը: Եթե 1 կմ չուգունե ջրատար խողովակները կշռում են 12 տոննա, ապա այդ նույն չափի պոլիէթիլենային խողովակները կշռում են ընդամենը 680 կգ:

## ԿՈՒԼՏԻՎԱՏՈՐ-ՇԱՐՔԱՑԱՆ

Կուլտիվատոր-շարքացանը միայն երկու ագրեգատների սոսկ զուգակցում չէ. կոնստրուկցիայում շատ նորություններ են մտցված:

Ցանելու ժամանակ մեքենան սերմերը բաշխում է հավասարաչափ և որոշակի խորությամբ, իսկ վերևից ծածկում է փխրուն հողաշերտով: Այս եղանակով կատարված ցանքը 12—15 տոկոսով ավելի բարձր բերք է տալիս: Մեքենան միաժամանակ պարարտանյութեր է շաղ տալիս և հողով ծածկում, ինչպես նաև մշակում է հողը:

Այսպիսով այդ մեքենան փոխարինում է չորս մեքենայի՝ երկու շարքացանի ու երկու կուլտիվատորի:

## ՄԵՏԱՂԱԳՈՐԾՎԱԾՔՆԵՐ

Մետաղը գործվածքի հետ միացնելու գաղափարը նոր չէ: Դեռևս հնագույն ժամանակներում ոսկյա և արծաթյա թելերից պատրաստում էին գործվածքներ: Մեր օրերի գործվածքը արույրով պատած թեթև փայլուն կապրոնն է, ցինկից, ալյումինից, անագից պատրաստած բրրդյա, բամբակյա խիտ գործվածքները և վիսկոզը:

Այս գործվածքները գեղեցիկ են, փայլուն և փափուկ: Հեշտությամբ լվացվում և արդուկվում են: Շատ ամուր են: Կառուցվածքի և մշակման տեսակետից միանգամայն բարդ տեխնոլոգիան փոխարինված է մետաղի հասարակ աղոցմամբ:

Մետաղ մղող հարմարանքը արտաքինից նման է ատրճանակի: Նրա «փողաբերանից» մի փոքր հեռու հատվում են երկու մետաղալար, որոնք միացված են հոսանքին և ստեղծում են էլեկտրական աղեղ: Սեղմված օդը 6 մթնոլորտ ճնշման տակ բռնում է հալված մետաղը և փչում գործվածքի վրա:

Կենցաղում կիրառելուց բացի, մետաղագործվածքներն օգտագործվում են նաև արդյունաբերության մեջ: Այդ գործվածքներից պատրաստած հագուստով մարդիկ վերանորոգում են ցելսիուսի +600° ջերմություն ունեցող վառարաններ ու կաթսաներ, որովհետև մետաղագործվածքը անդրադարձնում է ջերմային ճառագայթները: Այդ գործվածքից պատրաստած հագուստով էլեկտրամոնտյորը հանգիստ կարող է աշխատել լարվածության տակ, անհրաժեշտ է միայն աշխատելիս հագուստը հողակցել:

## ՄԵՔԵՆԱ «ՄԱՆԿԱՎԱՐԺԸ»

Շուտով ուսանողներն իրենց քննությունները կհանձնեն էլեկտրական մեքենաներին: Առաջին կիբեռնետիկական «քննող» մեքենան պատրաստվում է Լենինգրադում: Այդպիսի մեկ մեքենա կարող է ուսանողների գիտելիքներն ստուգել շատ առարկաների գծով:

«Մանկավարժը» նշում է պատասխանի ճշտությունը և գրանցում այս պատասխանը պատրաստելու վրա ծախսված ժամանակը: «Զրույցի» վերջում մեքենան քարտի վրա նշանակում է գնահատականը:

ԳԻՆԸ 25Կ.

ИНДЕКС 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՆՈՐ ՆԵՐԿԵՐ

*Լուգանսկի մարզի Ռուբեժնոյե քաղաքի քիմիական կոմբինատը պատրաստել է գործվածքների նոր ներկեր։ Նոր ներկերը, ի տարբերություն սովորականի, ոչ թե ուղղակի քսվում են թելին, այլ նրա հետ քիմիական ռեակցիայի մեջ են մտնում։ Այդ եղանակով ներկված գործվածքները գույն չեն տալիս և չեն խունանում։*

## ՆՈՐ ԴԵՂ՝ ԾԵՐՈՒԹՅԱՆ ԴԵՄ

*Հունգարիայում պատրաստվող «գերովիտ» նոր դեղի օգտագործման փորձերը ցույց են տվել դրա որոշակի արդյունավետությունը։ Ծերության հիվանդությամբ տառապող մարդկանց մոտ այդ դեղն օգտագործելուց վեց օր հետո, առաջանում է ախորժակ, բարձրանում է տոնուսը և բարելավվում քունը։ «Գերովիտի» բաղադրության մեջ մտնում են* A, D, E, K, B, $B_2$, $B_6$, $B_{12}$ *և* C *վիտամինները, ինչպես նաև նիկոտինային թթու։ Դեղը պարունակում է նաև արյան ճընշումն իջեցնող նյութեր։*

## ԵՐԿՈՒ ԼՈՒՅՍԵՐԻ ՄԻՋԵՎ

*Լոնդոնի Լյուտոն օդանավակայանի թռիչքա-վայրէջքային ուղիները սարքավորված են օպտիկական ազդանշանիչներով, որոնց օգնությամբ օդաչուն հեշտությամբ է կողմնորոշվում վայրէջք կատարելիս։ Ազդանշանիչներից յուրաքանչյուրն ունի 4 հատ 200 վատտի լամպեր, որոնք առաջացնում են լույսի նեղ փունջ։ Փնջի վերին կեսը* սպիտակ *է, ներքևինը՝* կարմիր: *Եթե օդաչուն տեսնում է միայն սպիտակ լույսը, նշանակում է ինքնաթիռը բավարար չափով չի իջել, եթե տեսնում է միայն կարմիրը, նշանակում է շատ է ցած իջել։ Ինքնաթիռը ճիշտ վայրէջքի է գնում միայն այն դեպքում, երբ օդաչուն միաժամանակ տեսնում է թե՛ սպիտակ և թե՛ կարմիր լույսերը։ Այդ ոչ բարդ հարմարանքը արագընթաց ինքնաթիռներին օգնում է վայրէջք կատարելիս խուսափել վթարից։*

## ԵՐԳՈՂ ԱՎԱԶԻ ԳԱՂՏՆԻՔԸ

*Երգող ավազի հանելուկային երաժշտությունը վաղուց է գրավել մարդկանց ուշադրությունը։ Գիտնականները մանրազնին ուսումնասիրեցին ծովափից հավաքած ավազը։ Քիմիական տարբեր նյութերով մշակման ենթարկելով ավազի մակերեսը և էլեկտրոնային ապարատի օգնությամբ ուսումնասիրելով առաջացող ձայները, նրանք ստացել են տարբեր երանգի «ձայներ»։ Պարզվում է, որ ձայնի բնույթը ավազահատիկի ձևից կախում չունի, բայց դրանց քիմիական մշակումը խիստ փոխում է «երաժշտության» ձայներանգը։*

*Ինչպե՞ս են առաջանում այդ ձայները։ Ծովափի ավազը, քիմիական տարբեր բաղադրություն ունեցող ջրի հետ շփվելով, իր մակերեսի վրա հավաքում է ջրում լուծված աղերը։ Քամիների ներգործության կամ խոնավության գոլորշացման հետևանքով ավազն սկսում է շարժվել։ Ավազի հատիկների միջև եղած տարածություններից օդը դուրս է մղվում և, ելնելով ավազահատիկների մակերեսի նստվածքների քիմիական հատկություններից, օդի տատանումը տարբեր ձև է ունենում։ Տատանման ձևը որքան մոտ է լինում սինուսոիդին, ձայներն այնքան ավելի երաժշտական են դառնում։*